# Մ. ՎԱԳՆԵՐԻ

# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆ

# Ի ՀԱՅԱՍՏԱՆ

ՔԱՂԵԱԼ ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ՓԻԼԻՊՊՈՍ ՃԱՄՃԵԱՆ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ





ՎԻԷՆՆԱ

ՊԱՇՏՊԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

ՌՅ. 1851.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ՎԵՐՋԻՆ տարիներու մէջ քանի որ եւրոպական գիտունք սկսան հեռաւոր երկիրներ պտըտիլ, իւրաքանչիւր նահանգներու աշխարհագրական, մշակական, բնապատմական ու երկրաբանական հանգամանքը զննել անձամբ ու տեղն ի տեղը, եւ ամէն մէկ ազգին լեզուն, հնութիւններն ու սովորութիւնները սուր աչքով եւ գիտութեանց ներկայ աստիճանին համեմատ դիտել, բազմաթիւ քննիչ հիւրերու սա-պընջական եղաւ մեր Հայաստանն ալ, որն որ սա խուզարկու ճամբորդներուն ունեցած դիտաւորութեան շատ կողմանէ առատ նիւթ կը մատակարարէր։

«Ասիայի քիչ երկիրները, կ'ըսէ Պր. Վակներ իր յառաջաբանութեան մէջ, հետազօտիչ, բնագէտին, հնախօս եւ ազգագիր[1] ճամբորդներու առջեւ կրնան այնչափ հարուստ հունք ու բովք բանալ, որչափ Եւրոպայի սահմանին մօտիկ եղող եւ դիւրաւ հասանելի Հայաստանը։ Ով որ Ռիդդերին յառաջակոչման Ասիայի սա մասին վրայ հրատարակած սքանչելի ստորագրութիւնը կարդացեր է, կ'իմանայ թէ մինչեւ հիմակ աշխարհագրութեանց մէջ ան կողմերուն վրայ ինչ թերի եւ պակասաւոր ծանօթութիւն կայ եղեր։ Այնչափ երեւելի գետերու ընթացքին եւ անոնց աղբերականց ճիշդ նկարագիրը, հսկայ ու երկնաբերձ լեռներու ճշգրիտ դիրքը, հրաբխային յատկութիւններն ու քարի տեսակները, բազմաթիւ աղուոր լճերու մեծութիւնն ու բոլորակը, նմանապէս ուրիշ շատ տեղուանք մութ մշուշի մը մէջ էին, եւ ըստ մասին դեռ են։ Հոս չէ թէ միայն աշխարհագիրն ու բնախոյզը դեռ քիչ մշակեալ դաշտ մը կը գտնէ, այլ նաեւ բնութեան պատկերակերպ ձեւերը սիրող երկրանկարները[2] բազմավարձ զբաղման եւ առատ զուարճութեան մը կը հանդիպին։ Կարին քաղքէն միայն մէկ քանի մղոն դէպ ի հարաւ երթալով՝ Թորդումայ գետոյն հովիտը ջրվէժ մը կը տեսնեն որ Եւրոպայի մէջ իր վսեմ գեղեցկութեան նմանը

1 Գղ. Ethnographe.
2 Գղ. Paysagiste.

չունի, եւ զորն որ գուցէ միայն Նիակարայի քարավազը կրնայ գերազանցել։ Այսու ամենայնիւ մինչեւ հիմայ ըդունած ճանապարհորդութեանց մէջ տասը վրան եւ ոչ փոքր յիշատակութիւն մը կայ։ Ո՛րչափ դիմագրաւ ճամբորդներ Ափրիկէի մէջ անգործադրական աշխատութեանց ձեռք կը զարնեն, որոնցմով իրենց կորուստը կը գտնեն. հոս այսչափ մօտաւոր տեղ անվեհեր եւ քաջաբիրտ պտըտող մը համեմատութեամբ խիստ քիչ վտանգով ու աշխատանքով կրնար երեւելի աշխարհագրական խնդիրներ լուծել յօգուտ գիտութեանց եւ իր անունը յաւէրժ դրոշմել։

“Հայաստան թագուն կը պահէ ճարտարապետութեան հին գանձեր, որոնք անցեալ ժամանակաց ամենէն հզօր ու գեղեցիկ յիշատակարաններուն կարգն են։ Դեռ քիչ առեն է որ Անի քաղքին հոյակապ աւերակները ճամբորդ հնախօսներուն քննութեամբ մեզի քիչ մը ծանօթ եղան։ Սակայն մինչեւ հիմայ չկայ անանկ ճիշդ ստորագրութիւն մը, որ Հայ թագաւորաց ու նախնի մեծապայծառ մայրաքաղքին մնացորդները բոլոր մանր ու հետաքրքրական մասերովը մեզի ցուցընէ. դեռ հիմակ ալ հնախոյզ մը առանց աղէկ պահուած ու փառաւոր աւերակները հիմնովին քննելու որ ըլլայ, կրնայ երեւելի արդիւնք վաստըկիլ։ Այսպէս նաեւ աւերաշատ Հայաստանի ուրիշ զանազան կողմերը [1] Տիւպուային ընտիր գրուածքներէն ետքն ալ՝ գիտուն քննողի մը տաժանմունքը յորդ եւ լի կը վարձատրեն։ Տոհմագիր եւ լեզուաբանին մարդիկ Հայաստանի լեռնաբնակ ազգաց՝ Քիւրտերու, Նեստորականներու եւ Եզիտիներու մէջ նմանապէս դիտողութեան եւ ուսման կերպ կերպ նիւթ կը գտնեն, ինչպէս որ բնախոյզն ալ Հայաստանի լերանց կազմութիւնը, կենդանիներն ու տնկերն իր զննութեանց նպատակ կ'ընտրէ”։

Ահաւասիկ ասոնք են առաջին պատճառները, որոնցմով գիտունք կը շարժին՝ զՀայաստան իրենց մասնաւոր քննութեան եւ ստորագրութեան արժանի համարելու. իսկ իրենց երկրորդ պատճառը, զորն որ նոյնպէս գրքերնուն մէջ առհասարակ կը հրատարակեն, այս է որ թէ՛ Ասիայի եւ թէ՛ Եւրոպայի մէջ այլեւայլ բազմաթիւ Հայազգի գաղթականութիւններէն զատ՝ ընդհանուր ազգը Արաստանէն մինչեւ

1 Ինչպէս են Արմաւիր, Արտաշատ, հին Անի կամ Կմախք, Վան, Արծկէ, Բագարան, Աշտիշատ, Թիլն աւան, Գառնի, Դուին եւ այլն. եւ այլն. եւ այլն։

Եգիպտոս, եւ Պարսկաստանէն մինչեւ փոքր Ասիայի արեւմտեան եզերքն ու անկէց ալ անդին սփիւռ, գրեթէ իրարու անընդհատ ու երեք միլիոնէն աւելի բազմութեամբ տարածուած կը տեսնեն, եւ կը սկսին քննել անոնց հանճարն ու յաջողակութիւնը, լեզուն եւ կատարած գործառնութիւնները, յառաջացման համար ըրած ջանքն ու Մխիթարայ վանքերէն օրէ օր ելած հարկաւոր ուսումնական գրքերը։ Աս երեւոյթներով պայծառ համոզում մը կը ստանան թէ ասոնք ամենաանհնչ խաղաղութեամբ, բանաւոր, գովելի եւ անկեղծ միաբանութեամբ, բարի կրթութեամբ եւ հիմնական ու շիտակ ուսմամբ յառաջանալու որ ըլլան, կրնան օրինաւորապէս շատ ծաղկիլ ու պայծառանալ, եւ իրենք աս վիճակին մէջ մնալէն ետքը՝ կրնան նաեւ շատ գիտութեանց նկատմամբ այլեւայլ փափաքելի պտուղներ տալ նոյն իսկ Եւրոպացւոց, եւ մանաւանդ ուրիշ այնչափ ասիական ազգերուն ալ, որոնք բոլորովին տգիտութեան խոր խաւարի մէջ մնացած են, կարող կ'ըլլան խոհեմական ազդեցութեամբ մը շատ մեծ հոգեւոր, քաղաքական եւ մտաւորական օգուտ մատուցանել, որն որ ընդհանուր մարդկութեան ալ երեւելի բարերարութիւն կ'ըլլայ։ Շատ բարեսէր եւ հմուտ արեւմտեանք հաստատ կը կարծեն թէ մեր ազգը վերոյիշեալ բարիքները յառաջ բերելու մասնաւոր կոչում մ'ունենայ։

Այս ամենայն մտածմունքը խել մը ատենէ ի վեր աշխարհագէտ Եւրոպացւոց զբաղման նիւթ եղած է, եւ ատոր համար են այնչափ հետզհետէ տեսնուած գրքերն ու ճամբորդութիւնները, որոնց մէջ թէպէտ մեր ազգին վրայ տեղ տեղ զանազան թիւր կարծիքներ, անհիմն գաղափարներ, նախապաշարումներ, կամայ եւ ակամայ ծուռ խորհրդածութիւններ ալ կը գտնուին, այսու ամենայնիւ իրենց այնչափ գիտնական քննութիւնները զո՛ եւ իցէ ողջամիտը կը համոզեն, թէ ուր որ անոնք աստոյգ արդիւնք ունեցած են նէ, ճանչնայ եւ յարգէ, եւ իրենց կամաւոր կամ անկամ սխալմունքը ներէ եւ ուղղէ։

Կրնայ ըսուիլ թէ այս աշխատասիրութեան մէջ ամենէն առաջինը Գաղղիական ազգն եղաւ, որուն ուշադրութիւնը մանաւանդ Գաղղիացի Յիսուսեան կրօնաւորներուն Հայոց ու Հայաստանի վրայ տուած աղէկ եւ նպաստաւոր լրերովը գրգռեցաւ։ Ան ատեններէն մինչեւ հիմայ նոյն ազգէն շատերը գէթ ի Հայաստան ճամբորդութիւն ըրին, եւ ընդարձակ գրուածքներով ալ հրատարակեցին իրենց քննու-

թիւնները· առանցմէ գլխաւորաբար չորս կամ հինգ հատը զանազան նկատմամբ գիտնոց առջեւ մեծ ու գրեթէ դասական[1] յարգ ունին։ Աշխարհաշրջիկ Անգղիացիք աս բանիս մէջ չէ թէ միայն ուրիշներէն ետ չմնացին, հապա նաեւ յաղթական ալ ելան իրենց ուղեւորութեան գրքերուն շատութեամբը, որուն՝ առանձնական ճամբորդներէն զատ՝ Լոնտոնի աշխարհագրական ընկերութիւնն ալ ձեռնտու եւ գրգիռ եղաւ. բայց աս Անգղիացի ճամբորդ եւ ուղեգիր հեղինակներուն մէջ կան նաեւ մէկքանի բաղդակրօն (փրոթէսթանդ) քարոզիչներ, որոնց անուղիղ գիտումներն ու հնարքներն արդէն յայտնի են։ Գերմանացիք մանաւանդ վերջի ատեններս սկսան ուսմանց աս ամբողջարար ճիւղին ալ մասնաւոր մտադրութիւն մ'ընել, եւ առաւելապէս երբ որ Ռիդդեր մեծանուն եւ առաջին աշխարհագիրն իր բաղդահատոր մատենագրութեան մէջ միայն Հայաստանի վրայ գրեթէ 100 ութածալ տպագրութեան թերթ հրատարակեց, որն որ քիչ ժամանակի մէջ սպառելուն՝ նոր յաւելուածներով երկրորդ անգամ տպագրեցաւ, որուն վրայ մօտերս նաեւ 13—14 տախտակով Հայաստանի ատլաս մ'ալ աւելցուց։ Եւ թէպէտ Իտալացիք եւ մանաւանդ Ռուսք ալ աս նիւթին վրայ բաւական գրուածքներ ունին, սակայն մենք պարզապէս վերի երեք ազգաց մէջ Հայաստանի վրայ գրող Եւրոպացի ճամբորդներուն աշխատասիրութեանց միայն երեւելիներն ալ համրելու ըլլանք, բաւական ընդարձակ մատենադարան մը կը կազմուի։

Գաղղիացի հեղինակներուն ամենէն աւելի յարգի համարուածներն ու յիշուածներն են Տ' Անվիլ, Սէն-Մարդէն, Ժօպէր, Դուռնըֆօր, Դաւեռնիէ, Շարտէն, Տիւպուա տը Մոնբէռէօ, Դեքսիէ, Տիւփրէ, Փելիքս Ֆոնդոն, Պրոսէ, Տը լա Քռուա, Օդեր, Շինիչ եւ հետաքրքրալուր նամականի ըսուած գործքին Արեւելեան յիշատակագիր մասն ու ամենէն վերջին Եւգինէոս Պօրէ[2]։

Անգղիացւոց աս մասին մէջ ունեցած երեւելի ուղեգիրներն են Մորիր, Քիններ, Քէր-Փորդր, Էնսուըրթ, Ուիլպրէըմ, Պրանդ, Ֆրէզր, Շիլ, Հէմիլդն, Լորս Փոլինկդն,

1 Գղ. Classique.

2 Ասոնց գաղղիերէն ուղղագրութիւնն ալ նոյն կարգաւ հոս կը դնենք՝ D' Anville, Jaubert, Saint-Martin, Tournefort, Tavernier, Chardin, Dubois de Montperreux, Texier, Dupré, Félix Fonton, Brosset, De la Croix, Otter, Lettres édifiantes et curieuses: Mémoires du Levant, Eugène Boré.

Ռիչ, Ուզլի, Սիւթըր, Ֆորպս, Սաութկէյթ, Իլի Սմիթ Էնտ Տուայթ[1] եւ այլն։

Իսկ Գերմանացւոց մէջ անոնց երեւելին է Ռիթթըր իբրեւ հաւաքիչ եւ խմբագրիչ. ճամբորդներն են գլխաւորաբար Շուլց (որ գաղղիերէն գրեց եւ Վանի Քիւրտերէն սպաննեցաւ), Բառոտ (ուրիշ մէկքանի հոգւով), Պեհակըլ, Քլափրոթ, Քոխ, Մոլթքէ, Միւլպախ, Մ. Վակներ[2] եւ այլն։

Աս վերջին ճամբորդը, այսինքն՝ Պր. Մաւրիկիոս կամ Մորից Վակներ, որուն քաղուածոյ թարգմանութիւնը հոս կու տանք, 1843ին գլխաւորաբար Ռուսի Հայաստանը պտըտեցաւ ու 1844ին նաեւ Պարսկաստանի ու Տաճկաստանի Հայաստանին մէջ շրջագայութիւն մ'ըրաւ։ Ինք վերայիշեալ պատճառներէն զատ՝ իր աս ուղեւորութեան բուն անձնական շարժառիթներ ալ ունէր, զորոնք հետեւեալ խօսքերով կը ծանուցանէ։ "Երբոր, կ'ըսէ, 1843ին դէպ ի Ռուսի Հայաստան ճամբայ ելայ, ինծի բուն նպատակ դրի զՄասիս։.... Ինկըլանտէ մինչեւ հիմայ բոլոր աշխարհագիրներու մտադրութիւնը շարժեց Արարատի նշանաւոր գիրքը, որն որ գրեթէ հաւասարապէս հեռու է Ճենաստանէն (Չինումաչինէն) ու Իբերիական թերակղզիէն (Սպանիայէն), Սիբերիայի վերին հիւսիսային սառնեղէն լեռներէն ու հարաւային Հնդկաստանի Գանգէսի մօրակէր ալիքներէն։ Շատ տարիներէ ի վեր բաղձանօքս փափաք մ'ունէի աս խորհրդաւոր լերան այցելութիւն մ'ընելու։ Ասիկայ հին աշխարհքին գրեթէ կեդրոնը կը բարձրանայ, եւ ծնունդ է ան կրակին, որուն ահեղ հնացորդները մինչեւ մշտնջենաւոր սառնոյց գագաթը կը հասնին։ Սուրբ գրոց վկայութիւնն ու Հայոց ազգային աւանդութիւնը կը ցուցընեն զԱրարատ իբրեւ առաջին ապաստանութեան մարդկան, զորն որ թէպէտ ջրհեղեղեան ալիքները պատելով կոծեցին, բայց իր երկնահաս գլուխը չկըրցան կոխել։ Բոլոր արարածոց նահապետները նոյն հսկայ եւ շէշտայանդ կատարէն՝ որ ջրերուն մէջէն իբրեւ կղզի դուրս ելած էր, հազիւ վար իջան, որոնց սերունդը բոլոր երկիրս բնակչօք լեցուց։.... 1840ին երբոր Արկուրի գեղին կործանելուն լուրն առի, որն որ Արարատի զառիվայր-

1 Որոնք անգղիերէն այսպէս կը գրուին՝ Morier, Kinneir, Ker-Porter, Ainsworth, Wilbraham, Brant, Fraser, Shiel, Hamilton, Lord Pollington, Rich, Ouseley, Suter, Forbes, Southgate, Eli Smith and Dwight.

2 Գերմաներէն՝ Ritter, Schulz, Parrot, Behaghel, Klepproth, Koch, Moltke, Mühlbach, M. Wagner.

ներուն վրայ մի միայն մեծ գեղն էր, աւելի եւս հաստատուեցայ որ արեւելք ընելու ճամբորդութիւնս նախ եւ յառաջ Հայաստան դարձընեմ։ . . . . Այս երկրին մէջ երկու անգամ պտըտելովս առիթ ունեցայ Արարատն ու շատ լեռներ ու գետ չքննուած զանազան տեղեր, ինչպէս նաեւ այլեւայլ ազգերն աղէկ քննելու։ Անոնց ամենուն սովորութիւններէն զատ՝ նաեւ Հնախօսական բնապատմական ու երկրաբանական վիճակին վրայ ընդհանուր տեսութիւն մը իբրեւ յաւելուած հրատարակեցի»։ . . . .

Ինչպէս ամէն մարդ իր ծանօթութիւններէն կ'իմանայ Պր. Վակներ գլխաւորապէս Ռուսի Հայաստանը պտըտած է, եւ իր ախորժ ու զուարթ ոճովը, որ Գերմանացւոց մէջ ալ մեծ յարգ ունի, մանաւանդ նոյն կողմերուն երկրաբանական ու հրաբխային, բուսաբանական ու կենդանաբանական հանգամանքն ու գեղեցիկ կերպերը, ժողովրդեան քաղաքական ու բարոյական վիճակը քաջ ստորագրած է։ Այլեւայլ ճամբորդութիւններ ըրած ու գրած ըլլալով՝ աչքն ու գրիչը սուր դիտողութիւններու վարժ են. սա պատճառաւ իր գիտութիւններն ամէն տեղ հաճութեամբ կը կարդացուին։ Եւ թէպէտ ստոյգ է՝ որ սա կողմերը մեր ազգայիններէն մէկը պտըտելու որ ըլլայ, իր ընտանութեամբը կրնայ աւելի եւս նոյն տեղերուն բնակչաց որպիսութեան թափանցել, եւ զանազան ներքին, հարկաւոր ու հաճոյական լուր տալ, բայց սակայն Եւրոպացի գիտուններուն տուած զրոյցներն ալ նոյնչափ յարգի ու հարկաւոր եւ մէկ կողմանէ ալ աւելի հարկաւոր են, վասն զի հաւաստի լուրն ամէն ճամբորդ կրնայ տալ, եւ երկրորդ՝ սա գիտնական տեղեկութիւնները բոլոր ազգին երթալով մեծապէս հարկաւոր կ'ըլլան, ինչու որ երկրի մը յառաջացման համար անհրաժեշտ պէտք է գիտնալ իր հողին որպիսութիւնը, տնտեսութիւնն ու երկրագործութիւնը, քարերուն տեսակը, իր հանքաբանական ու տնկական հանգամանքը, որոնց ամէնքը մէկտեղ ճարտարապետութեան, վաճառականութեան, մշակութեան եւ ուրիշ շատ արուեստներու հետ անձուկ կապ ունին։ Այս մտածմունքներով կ'ուզենք որ առաջիկայ գրքոյկը մէկ փոքրիկ օրինակ մ'ըլլայ մեր ապագայ գիտնական ճամբորդներուն, որ բոլոր ան կողմերուն վրայ իրենց տալու սեպհական տոհմային լուրերուն հետ սանկ մեծակշիռ ուսումնական տեղեկութիւններն ալ մէկտեղ ընդելուզանեն։

Մեր թարգմանութեան կերպին գալով՝ ինչպէս յառաջագոյն ըսածներէս ալ կը տեսնուի, ասիկայ քաղելով առած ենք, այսինքն նախ անանկ մասերը դուրս թող տուած ենք, որոնք ազգերնուս մէջ շատ յայտնի են եւ զորոնք հոս կրկնելը ձանձրութիւն կրնար բերել. երկրորդ՝ որոնք որ հեղինակին տարականութենէ կամ անծանօթութենէ հետեւեալ սխալ ըմբռնումներ էին եւ կամ անոր միայն անձնական տարակուսելի կարծիքը. երրորդ որոնք որ ատերութեան կամ ազգի մը դէմ խիստ հոգւով գրուած էին, զորոնք կարելի եղած տեղ չափաւորեցինք, իսկ ուր որ կարելի չէր, իրենց պատուովը հեղինակին քով թողուցինք, եւ չորրորդ այն խորին մասերը՝ որոնք միայն երկրաբանութեան ու բուսաբանութեան մէջ շատ յառաջացեալներուն օգտակար էին: Մեր աս գործքը թարգմանելու ատեն՝ նպատակնիս կարդացողներուն բարի, օգտակար եւ դիւրիմաց լեզու տալ ըլլալով՝ լաւագոյն համարեցանք այն մասերը թող տալ, որոնք կրնային արգելք ըլլալ աս վախճանին, քան թէ անոնցմով գիրքը կատարեալ ընել ուզելով՝ բոլոր գործքն ալ անօգուտ եւ ձանձրանալի ըլլալու վտանգի մէջ ձգել: Աս համոզմանէ շարժեալ՝ շատ տեղ նաեւ խնդիրը ծանօթութիւններով լուսաւորելու ջանացինք, ու այլեւայլ գաղափարներուն կարեւոր ճշդութիւնը պահելու համար գրեթէ երկու հարիւրի չափ նոր բառ հոգալու ստիպուելով՝ ան ալ պատշաճ կերպով կատարելու եւ հարկ եղած տեղ մեկնելու փոյթ տարինք: Պր. Վակներ գլխաւորաբար չորս տեղ՝ այսինքն Արարատ, Էջմիածին, Երեւան եւ Պայազիտի կողմանքը տպագրած էր, անոր համար մենք ալ նաեւ նոյն տեղերուն պատկերներն աւելցուցինք՝ պատուական Յ. Եւգինէոս Պորէին Հայաստան ըսուած գրքին մէջ դրուածներէն օրինակելով:

Եթէ աս մեր փոքր եւ անձնափոքր ջանքն իր սեփին մէջ ուրիշ մեծամեծներու եւ հեռաւոր նորագոյններուն դուռն եւ սկզբնաւորութիւն մը կ'ըլլայ, եւ իր չափին համեմատ դիտուած բարոյական ու մտաւորական օգուտները յառաջ կը բերէ նէ, ան ատեն մենք ալ կ'ուրախանանք՝ մեր նպատակնիս առած ըլլալով այն գանձանակին, զորն որ Աստուծոյ տեսչութիւնը պատրաստած է ընդհանուր ազգաց լուսաւորութեան եւ գիտութեան, եւ որուն ուղիղ գործածութիւնն ու վերջին վախճանն է զինքը ճանչնալու եւ իրեն հասնելու ճշմարիտ գիտութիւնը:




# Մ. ՎԱԳՆԵՐԻ

## ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆ

# Ի ՀԱՅԱՍՏԱՆ

---

## ՄԱՍՆ Ա.

# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆ
# Ի ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՌԱՋԻՆ ԳԼՈՒԽ

*Թիֆլիզ. Պր. Աբովեան ու իր աշկերտները։ — Կոզի. լերանց երկու շղթան ու Թաշունները։ Ինչա. ծառերն ու որոց կենդանիները։ — Պիպիս, երկրին դիրքն ու որպիսութիւնը. Ամայի գալրոց ու փտտած նաւ։*

ԳՒԱՐՈՒՆԸ Վրաստանի մէջ աւելի ուշ կը սկսի քան թէ Եւրոպայի ան քաղաքները, որոնք նոյն լայնութեան աստիճանին տակն են։ Ցուրտն ու անձրեւները զիս մինչեւ Մայիսին երկրորդ շաբաթը Թիֆլիզ բանեցին Թող չտալին, անոր համար բաւական ատեն ունեցայ հոս տեղը Հայաստանի վրայ տեղեկութիւններ առնելու։ Ամենէն աւելի Կովկասեան բանակին հրամանատար Նայդհարդ զօրավարը՝ պատրաստականութիւն ցուցուց իմ ճամբորդութեանս հարկաւոր եղած բաները հոգալու. ու նաեւ Պր. Փրեդերիկոս Գոցցէպուէ երեւելի համանուն բանաստեղծին տղաքներէն մէկը թէ խորհրդով եւ թէ գործքով ինծի շատ օգնեց։ Անոր հետ ունեցած ճանչուորութիւնս ինծի դանձ արժեց. վասն զի ընդհանուր կուսակալին դիւանէն Հայաստանի վրայ անգին ձեռագիրներ հանեց, որոնք շատ հետաքրքրութեամբ կարդացի ու շատ բան ալ սորվեցայ։ Բայց աւոնցմէ վար չիմնար նաեւ Պր. Աբովեանին հետ ըրած ճանչուորութիւնս, որն որ ազգաւ Հայ է, ու կրթութիւնը Լիֆլանտի Գերմանացիներուն մէջ ընդունած է։

Աս մարդուս պատմութիւնը շատ հետաքրքրական է։ Պր. Աբովեան Էջմիածնի վանքին տիրացուներէն մէկն էր, ու քահանայական վիճակի որոշուած էր։ 1829ին Տորբատեան համալսարանին վար-

ժամերս Պր. Բարրոդ իր Հայաստան ըրած ճամբորդութեանը մէջ Էջմիածնի վանքն ալ տեսնելու երթալով՝ Աբովեան պատանեակը միայն գտնուեցաւ վանքին մէջ, որ ռուսերէն կը խօսէր: Բարրոդ՝ կաթուղիկոսին աղաչեց որ աս երիտասարդ սարկաւագը իրեն ճամբորդութեանն ընկեր ըլլայ: Կաթուղիկոսը Տորբաթեան համալսարանին վարժապետին աղաչանացը զիջաւ: Աս երկու ուղեկիցները եղբօր պէս իրարու հետ կապուեցան. ամէն դժուարութեանց ու վտանգներու մէջ իրարմէ չէին բաժնուեր. ու աս կերպով ստացած բարեկամութիւնը մինչեւ Բարրոդին մահը տեւեց: Պր. Աբովեան Բարրոդին գիտութիւնը տեսնելով՝ ինքն ալ գիտութեան եռանդ մը ստացաւ. ու անոր շատ կ'աղաչէր որ զինքը Տորբաթ խրկելու միջոց մը գտնէ, որպէս զի հոնտեղւաց համալսարանին մէջ ուսում ու գիտութիւն սորվի եւ կրթուի: Ինչ եւ իցէ՝ Բարրոդին ձեռք բռնելովը բաղձանքին հասաւ. Ռուսի կառավարութիւնը օգնութիւն ընելով՝ Պր. Աբովեանը Տորբաթի համալսարանը մտաւ, ուր վեց տարի ուսում սորվելէն ետքը իր հայրենիքը դարձաւ ու իր հայրենակիցները զարգացընելու մեծ եռանդ ունէր: Ուզեց մէկ դպրոց մը հաստատել, որուն վախճանն ան պիտ'որ ըլլար, որ ռամիկ ժողովրդեան դպրոցներուն վարպետներ հանէ, ու աս միջոցը ապահով կերպ մը կը կարծէր իր ազգին յառաջադիմութեանն ու կրթութեանը: Բայց տեսնելով որ աւելի յառաջ պիտ'որ չերթայ, Պր. Աբովեան Էջմիածնի մէջ քահանայացու տղոց վարպետ դրուիլ ուզեց: Աս ալ շատ ընդդիմութիւն կրեց, որովհետեւ վանքին կղերը Պր. Աբովեանին՝ բողոքական Գերմանացւոց մէջ ընդունած կրթութեանն ու գիտութեանը վրայ կասկած ունէին. Անոր համար Պր. Աբովեան ելաւ Թիֆլիզ գնաց, հոն դպրոց մը հաստատեց, ու հոնտեղւաց յառաջնուան

դպրոցն ալ անոր հետ միացուց։ Այս դպրոցը շատ անգամ գացի ու հայ տղոց յառաջադիմութեանը վրայ շատ զարմացայ։ Տասը, տասնուչորս տարուան տղաք աղէկ կը կարդան ու կը գրեն հայերէն, վրացերէն, թաթարերէն, ռուսերէն, գերմաներէն ու գաղղիերէն։ Ստուգիւ շատ զարմացայ. գերմաներէն աղէկ շեշտելով կը խօսէին ու վարպետին իմ առջեւս գրել տուած բաներէն տեսայ որ գերմաներէն լեզուին կազմութեան աղէկ տեղեակ էին. իմ առջեւս Գէթէին ու Շիլլէրին գործքերը կարդացին։ Ամէն անգամ աս դպրոցը գալուս ու աս կայտառ տղաքը տեսնելուս՝ մեծ ուրախութիւն կը զգայի, մանաւանդ իրենց դաստիարակական ու ընտանեկան վարմունքը, քաղաքավարութիւնն ու վարժութիւնը զիս շատ կ'ուրախացընէր։ Իրենց վարպետին վրայ շատ սէր ունին, որովհետեւ թէ կրթութեան ու գիտութեան մէջ յառաջացընելու եւ թէ իրենց հանդարտութիւնը հոգալու շատ փոյթ կը տանի։

Մայիսին տաք օրերը հասնելուն պէս՝ Պր. Արամեանին հետ մէկտեղ Թիֆլիզէն ելայ։ Իր բոլոր աշկերտները ձիերով քաղաքէն դուրս մեզի յուղարկաւոր եկած էին։ Այս աշխոյժ երիտասարդներուն տեսքը նորէն ինծի ուրախութիւն բերաւ, որոնք անանկ վարժութեամբ ձիերնին կը դարձընէին կը խաղցընէին, որ մարդ չէր կրնար կարծել։ Կար գետին քով վերջին պարտէզներուն հասանք նէ՝ աս մեր յուղարկաւորներէն հրաժարեցանք. Պր. Արամեան իր աշկերտներուն գերմաներէն լեզուաւ խօսակցութիւն մ'ընելով՝ յորդորեց որ ուսման փոյթ տանին, որ դառնալու ատեն ինքն ալ ուրախանայ։ Մէկիկ մէկիկ ամենուն ձեռքը թոթուելէն ետքը՝ բարեմաղթութեան ձայները բարձրացան, որոնք մեր ետեւէն երկայն ատեն դեռ կը լսուէին։

Նոյն գիշերը Կոդի պառկեցանք ու երկրորդ՝ օրը սկսանք մեր ճամբան յառաջ տանիլ երկու լերանց շղթայի մէջէն, որուն հիւսիսային մասը Կովկասեան լերանց շարքին կը վերաբերի. իսկ հարաւային շղթան, առջինին հետ գրեթէ հաւասար հեռաւոր կ'երթայ. իր ամենէն բարձր ու գրեթէ մէկայններէն զատուած լեռն է Լալուար, որուն բովագործութիւնը (մետաղը հանելը) Յոյնի մը յանձնուած էր: Լերանց կողերը կամ դարվար տեղերը բաւական աղէկ ու աղուոր անտառներով զարդարուած են եւ աստիճանաձեւ կարգաւ մը ծովին երեսէն մինչեւ 7000 ոտնաչափ բարձրութեան կը հասնին: Վրաստանի հարաւային սահմանը քանի որ կը մօտիկնայինք, կարծես թէ բնութիւնը երթալով կը կենդանանար. հոս շատ տեսակ թռչուններ տեսնուեցան, որոնք Թիֆլիզի մօտերը չէին տեսնուեր. ատոնց մէջ երեւելի է գոյնզգոյն աղուոր մեղուաքաղ թռչունը[1], որն որ գունդագունդ ասդին անդին կը տեսնուէր, ինչպէս Եւրոպայի մէջ ծիծառները: Անցած դաշտերնիս բուրազգի տունկերով ու ծաղիկներով դեղին զարդարուած էր, մանաւանդ հրանունկով (ռէ-յէ-ն ըէչէյէ-ռ-ւ), որոնց վրայ անթիւ ճճիներ կը գեւային: Շատ երկակենցաղ անասուններ՝ գլխաւորաբար ցամաքային կրայի տեսակներ արեւուն մէջ կը կենային:

Երկրորդ գիշեր պառկեցանք Խնչայի Օթեւանը: Հոս ելայ երեք ժամ հեռու հարաւային կողմերը անտառախիտ տեղուանքը տեսնելու դացի: Անտառներուն ծառերը գլխաւորաբար տերեւաբեր ծառեր են. թեղօշ[2], ոփի[3], ցախի[4], գլխաւոր ծառերն էին: Աս տեղուանքը նաեւ մանր բոյսեր շատ առատ ու տեսակ տեսակ կը գտնուէին. բայց միջատ ու

[1] լտ. Merops Apiaster: [2] գղ. Chêne. տճ. Մէշէ ազաճը: [3] լտ. Fagus. գղ. Hêtre. տճ. Գոյըն ազաճը: [4] լտ. Fraxinus. գղ. Frêne. տճ. Տիշպուտագ ազաճը.

ծծի տարւոյն այս եղանակին մէջ խիստ քիչ կար։ Արարատանի ու Հայաստանի սահմաններուն վրայ եղած երկիրներուն անտառը աւելի սիրուն է քան թէ ահեղ. լեռները գեղեցիկ ձեւ ու առանձին աղուորութիւն մը ունին, ու իրենց կատարը մշտնջենաւոր ձեան սահմանը չին հասնիր, շատերուն գլուխները անտառներով ծածկուած են, որոնց ծառերը շատ հըսկայաձեւ չեն։ Անտառները որսի կենդանիներով լեցուն են. քիչ կը պատահի որ մարդ անտառի կողմն երթայ ու գեղեցիկ եղջերու մը չտեսնէ։ Ահա այս զննութիւններով երրորդ օրը Պիպլիս հասանք։

Պիպլիս դաշտի մը վրայ շինուած է, զորն որ չորս կողմէն բարձր լեռներ կը պատեն։ Ասոր տեղէն կը սկսին Հայաստանի երկրին հրաբուխները, բայց այս կողմերու հրաբուխներուն ամէնէն բարձր գլուխները բուն Ալբեան լերանց գօտւոյն բարձրութեանը չեն հասնիր։ Լեռներուն բրգաձեւ կամ կոնաձեւ կերպարանքէն անոնց հրաբուխի բնութիւնը հեռուէն ալ կ'իմացուի. ժայռերը մթագոյն խայտակուռէ[1] բաղադրուած են, որն որ լեռներուն ստորոտները ամէն կողմ կը տեսնուի։ Ասոր տեղերը կոնաձեւ լեռան մը գլուխը Հայոց վանք մը կայ, որն որ Ս. Սարգիս կը կոչուի։ Դաշտին մէջէն կ'անցնի Զօշտաքրուած վտակ մը, որն որ պայծառ, պաղ ու անոյշ ջուր մը ունի։ Ռուս-զօրապետները կարծելով որ այս ջուրը թունաւոր է, զօրաց՝ անոր խմելը պատժոյ սպառնալիքով արգելած են։ Ցանկայն ես այս զով ու վճիտ ջրէն խմեցի ու բան մը չզգացի. ինչպէս նաեւ զինուորներն ալ ծածուկ կը խմեն ու վնաս մը չեն կրեր եղեր։ Պիպլիս տեսնելու երեւելի բան մը չունի, հսկայաձեւ նոր շէնքէ մը զատ, որն որ տեղ[illegible] գրան քարերը շինուած է, ու մէկէն ճամբորդին. աչքը կը զարնէ։ Երբ որ այս զանազան գոյներով

[1] գղ. Porphyre, տճ. Սօմաքի մէրմէր։

Թիֆլիզէն վարպետներ պիտ'որ բերել տանք, ըսին. շրջակայ տեղուանք եղած Հայերն ու Թաթարները պարգեւներով ու սատկով պիտ'որ յորդորենք որ իրենց տղաքը հոս խաւրեն, ու անկից եւրոպական իմաստութիւնը ամէն կողմ տարածեն։ Շատ պզանչելի էր ասոնց դիտաւորութիւնը, բայց ի՞նչ օգուտ որ հոն տեղը մնացին. վասն զի կայսրը դպրոցը բանալէն ու իր հաճութիւնը ցուցընելէն ետքը, որմնադիրներուն ու գործողներուն ձեռքը պարապ մնաց, ալ դէպ ի Պիպլիս եկող ռուպլիներուն ճամբան գոցուեցաւ, ու ճարտարապետան ելաւ գնաց։ — Անանկ կը խաբէն մեր կայսրը. բաւ ինծի ուրիշ խաղալի պաշտօնակալ մը։ Երբոր իմացուեցաւ, որ կայսրը Գեղամայ ծովն ալ տեսնելու պիտ'որ երթէ, ամենայն փութով մեծ հողմանաւ (առագաստաւոր նաւ) մը շինելու սկսան, որուն նման գուցէ Սեւ ծովուն վրայ ալ չգտնուի։ Չըլլայ թէ, կ'ըսէին կայսրը բարկանայ, որ ասանկ նեղըքին ծովակի մը քով ընակած ժողովուրդը նաւարկութեան բարիքներէն զուրկ կը մնայ։ Կայսրը ան կողմերը այց ելած ատենը՝ աս նաւը Գեղամայ ծովակին վրայ շինուելու նաւաստորմիղին սկիզբն է, ըսին. բայց կայսրը Հայաստանէն հեռանալէն ետքը մէկը չեղաւ, որ նաւը կանոնաւոր նաւագնացութեան գործածելու մտածէ, ու հաւանական է որ մինչեւ հիմա ան ջրերուն մէջ փտտած ըլլայ։



## ԵՐԿՐՈՐԴ ԳԼՈՒԽ

*Հայաստանի Թաթարներուն ստորագրութիւնը: Սաստիկ պատիժ մը: Պիթլիսէն մինչեւ սառոյին իջնելու եղած տեղւոյն ծառերը, գեղեցիկ դիրքը, անտառներն ու թռչունները: Անկէց մինչեւ Ախլատ գտնուած քարերը: Եզլիկներու երկու ընտանիք:*

ԳՈՒԳԵՆ այնպէս պատահեցաւ որ Պիթլիսի մէջ օր մ'ալ կենալու ստիպուեցայ, որովհետեւ ուղեկիցներս ու Թարգմանս (Պր. Աբովեան) ճամբայ ելլելէն ետքը՝ Բուսս կառավարիչը եկաւ ըսաւ որ Ձիերս յոգնած ու տաժանած են, չեն կրնար յառաջ երթալ: Աս բանիս վրայ շատ տհաճեցայ, ինչու որ Թարգմաննէս բաժնուած էի ու հայերէն չէի գիտեր. ինչ եւ իցէ՝ գիշեր մ'ալ Պիթլիս մնացի, ու Սեւանայ ծովին եւ անոր բոլորտիքը բնակող Թաթար ցեղերուն վրայ տեղեկութիւն առի:

Նողայեան Թաթարները՝ որ Խրիմի դաշտերուն ու լայնանիստ անապատներուն մէջ կը բնակին, յառաջագոյն յաջողակ աւազակներ ու վայրագ յելուզակներ էին. իրենց քաջ ձիավարութիւնն ալ աս բանիս մեծապէս կ'օգնէր, բայց քանի որ Մոսկովեան բազուկի տակ մտան նէ, զսպուեցան, ընտանեցան ու հեզ ժողովուրդ մ'եղան: Աստ հակառակ Հայաստանի Կովկասեան կողմերը բնակող Թաթարները՝ թէպէտ Նողայեանց պէս շատուոր ալ չեն, այսու ամենայնիւ դեռ իրենց խստութիւնը պահած են, ու այնպէս խոնարհ կերպարանք չեն ցուցըներ, մանաւանդ որ Կուր գետէն մինչեւ Երասխ ձգուած լեռնային երկիրներն ու անտառները՝ անոնց ամուր ապաւէն մ'ըլլալով՝ կը յանդգնին գոնէ աստին անդին պզտիկ խմբերով դէմ դնել խարտեշահեր աշխարհակալներուն (Ռուսներուն), որոնք հիւսիսէն կու գան: Աս Կովկասեան Թաթարները գեղեցիկ եւ ուժեղ մարդիկներ են. աչուըններնին կարծես թէ հուր ու բոց կը ցոլանայ, եւ քաջութիւնն ու պաղատու-

Թեւան սէրը վրանին դեռ մարած չէ, բայց ատանկ ցրուած վիճակի մը մէջ ըլլալով՝ գիտեն որ չեն կըրնար Ռուսի դէմ ազգովին ոտք ելլել, եւ կամ ելլելու ալ ըլլան, պտուղը շատ դառն՝ այսինքն իրենց զանազան ցեղերուն ջնջումը կ'ըլլայ։ Սակայն իրենց ձեռագործը՝ որ է աւազակութիւնը՝ միշտ յառաջ կը տանին, ու թանձր անտառներու եւ ցից ժայռերու մէջ պատսպարելով՝ Ռուսաց ձեռքէն կը պրծին։

Նոյնք Մահմետական են, մինչեւ հիմա հազիւ թէ իրենց կէսը Ռուսի երկիրներու մէջ մնաց, որովհետեւ բազմութեամբ Տաճկի երկիրներն անցան։ Ասոր հակառակ քրիստոնեաները այսինքն Հայերը գլխաւորաբար Պարսկաստանէն փախչելով՝ հետզհետէ հոստեղերն եկան ու շատցան։ Ընդհանրապէս ալ Հայ ժողովուրդը, նաեւ Վրացիք, Ռուսի տէրութեան հաւատարիմ են, ու համբերութեամբ կը հպատակին, թէպէտ ստորին Ռուս պաշտօնատէրներուն ագահութեամբը, կաշառակերութեամբն ու կեղեքելովը[1] շատ նեղութիւն կը կրեն։ Թաթարները դրացի Հայոց ալ հաւատարիմ հպատակութիւնը տեսնելով՝ եւ չորս կողմանէ անոնց գեղերէն ու քաղաքներէն պաշարուած ըլլալով՝ ապստամբելու չեն յանդգնիր, ինչու որ Թաթարներու գեղերուն մէջ ինչ դէպք որ պատահի, ինչ խօսք որ անցնի, Հայերը անմիջապէս կ'իմանան, ու տէրութեան կ'իմացընեն, որպէս զի անոնց ամէն ապստամբական շարժման ծիլը դեռ չբուսած՝ խղդուի. վասն զի նոյն իսկ Հայերը կը վախնան

[1] Գ. Վակներ աս տրտունջը շատ տեղ կը կրկնէ. բայց աս ստոյգ է որ կայսրն ու պաշտօնեաները աս բանիս վրայ մեծապէս կը հոգեն, եւ ստորին պաշտօնատէրներու մէջ ատանկ կաշառակեր կամ կեղեքիչ մը գտնեն նէ՝ սաստիկ խիստ կը պատժեն ու մինչեւ Սիպերիա կը ղրկեն։ Միայն թէ ցաւալին աս է որ այսպիսի ընդարձակ երկրի մէջ առանձնական մարդիկներուն անիրաւութիւնը ամէն տեղ բոլորովին զսպելը խիստ շատ դժուարին ըլլալով՝ երբեմն երբեմն խեղճ բնակիչները կը չարչարուին։

որ աս կէս մը վայրենի ու կատաղի Թաթարները քիչ մը զօրանալու որ ըլլան, քրիստոնէից դէմ իրենց ունեցած ատելութեամբը՝ Հայոց մեծ մասն ու ջարդ-կու տան, ինչպէս դժբախտութեամբ շատ անգամ պատահած է։

Ասանկով նոյն Մահմետականներէն շատերուն՝ տունք ոչ երկիրը բոլորովին թողուլ երթալ եւ ոչ ալ տէրութեան հրամանները կատարել կ՚ուզեն, ուրիշ բան չիմնար, բայց եթէ թափառական կեանք մ՚ անցընել։ Աւազակութիւն հիմա խիստ քիչ կը պատահի, միայն թէ մինչեւ որ ճամբաները քիչ մը ապահովութիւն ստացան նէ, հարկ եղաւ որ Ռուսերը զանազան խստութիւններ բանեցընեն, մանաւանդ աս վայրենի մարդիկներուն դէմ, որոնք մէկ պատժէ մը չեն վախնար ու ամենէն խիստ պատիժներուն ալ երկաթի պէս կը դիմանան կը կենան եւ կարծես թէ բան չեն զգար։ Գ. Պուխովալօ պաշտօնականը՝ որ հօտերոց ճամբաներն ու կամուրջները շտկելու համար Ռուսի տէրութեան կողմանէ դրուած էր, աս բանիս վրայ իր աչքովը տեսած օրինակը պատմեց։ Տանուութը տարուան Թաթար մը՝ որ իր եղբայրը սպաննած էր, 35 քառակուսի Ջայլան (Մօզդօք գուրղանը) ուտելու եւ Սիպերիա քշուելու դատապարտուեցաւ։ Ինչպէս յայտնի է՝ 35 քառակուսի Ջայլանի հարուածը վերջին աստիճանի ծեծ է, եւ շատ անգամ մարդ մը հազիւ 30 հատ տասնեկ հարուածի կրնայ դիմանալ։ Իսկ աս երիտասարդ Թաթարը առանց փոքր այլայլութեան՝ ծեծ ուտելու ատեն եկաւ, եւ շուանով ցիցը կապուելու ատենը դեռ Ռուսերը կը ծաղրէր. սոսկալի հարուածներուն տակը թէպէտ միսը կտոր կտոր եղաւ, բայց եւ ոչ մի անգամ ցաւի աղաղակ հանեց. 35երորդ հարուածէն ետքը՝ ահագին ձայնով մը Ռուսաց Աստուածին ու կայսեր դէմ սարսափելի յիշոց մը տուաւ ու դեռ

անտառաստան կը կենար. բայց երբ որ Ռուս պաշտօնատէրը տաքցուցած երկաթով ճակատը կոխեց, ան ատեն աս անհնուածելի Հողին սկսաւ տատանիլ ու բերանը փրփրալով՝ աննշան խօսքեր ու Հեծութեան ձայներ Հանել: Աս օրինակը մարդը կը սոսկացնէ:

Մայիսի 13ին Պիգնիկէն ելայ. ասկից մինչեւ աւազին իջեւան երթալու ճամբան անտառներու մէջ գեղեցիկ Հովիտ մըն է, որուն մէջէն լեռնային սրընթաց վտակ մը կարկաչելով կը վազէ: Լեռները չափաւոր բարձրութիւն ունէին, որոնք Հասարակօրէն Հովտին երեսէն 1800 ոտնաչափ բարձր են: Լերանց կողերուն վրայ շատ անտառներ կան, որոնց ամենէն սովորական ծառն է ափի. թեղօշ քիչ էր, որոնց տերեւներուն գլուխները՝ Մայիսի մէջերը Հազիւ թէ ցցուած էին. իսկ ծովին երեսէն 5400 ոտնաչափ բարձր տեղերուն վրայ ծառերը դեռ կանաչ չունէին: Միջին (ծովին երեսէն 3500—4000 ոտնաչափ) բարձրութեան վրայ ափիներու մէջ առատ թեղօշ, Հացի[1], կաղամախի (գաւակ) ու նաեւ սաղին անունին շաճի (շամ ագաճը) կար: Ծառերուն տարանկ ալ տերեւ բանալէն կը տեսնուի որ Հայաստանի աս մասին բարեխառնութեան աստիճանը մէջին Եւրոպայինին շատ նման է: Ինչպէս անտառներու ծառերը, նոյնպէս պզտիկ բոյսերն ալ բոլոր ամենայնի Գերմանիայիններուն տեսակէն են: Երկիր մը տեսքը գլխաւորաբար իր բոյսերէն ու լեռներուն ձիրքէն կ'առնուի: Եթէ, կ'ըսէ Պ. Վակներ, Հատեղաց մարգիկներուն գեղեցն ու գետերուն ձեւը Եւրոպայինէն տարբեր չըլլար, Գերմանացի մը քնոյ մէջ Հայաստանին աս գիւերը բերուելու որ ըլլար, արթննցած ատենը չէր կրնար իմանալ որ ուրիշ երկիր բերուած է: Աս տարբերանի նման է Սեւանայ ծովին ու Պիգնիկի մէջ եղած երկիրը մէջին Եւրո-

[1] լատ. Acer. գղ. Érable. տճ. Ակչաղաճ ագաճը:

պայի զանազան մասերուն, մանաւանդ Պաւիէրայէն Շդրայդպերկի ու Մուկկենտորֆի գեղեցիկ եւ նկա-րելու արժանի հովիտներուն։

Հայաստանի աս մասին կենդանիները Արաստա-նիններուն պէս են։ Անտառներու մէջ կայ արջ, գայլ, շնագայլ (չագալ), նաեւ ինչպէս Պր. Պուխ-վալտ հաստատեց, երբեմն ալ յովազ (պարս) ու բո-րեան (սըրթլան)։ Հոստեղս ես առաջին անգամ տեսայ վարդագոյն տարմահաւ (սըղըրճըք), աս Թռչունները Հայոց շատ սիրելի են, որովհետեւ երամ երամ կու-գան ու վնասակար որդերը Թթի ծառերուն վրայէն կը մաքրեն կը ջնջեն։ Գիշակեր Թռչունները շատ մօտ կու գային ու հրացաններէն չէին վախնար։ Տի-լիշան բռնած կիրճին կամ կապանին (տէրպէնտին) քովերը առջի անգամ տեսայ սեւ արագիլ (լէյլէք)։ Նաեւ քանի մը տեսակ գեղեցիկ միջատներ ալ գտայ։ Հոստեղաց միջատներն ու բոյսերը ստորին Ալբեան լեռներու կերպարանքն ունին։ Բայց Տիլիշանին վերի կողմը կը սկսի Հայաստանին բուն Ալբեան գօտին, եւ միջատներուն կերպարանքն ալ յանկարծ կը փոխուի։

Առաջին իջեւանին ու Ախտայի մէջ եղած լեռ-ներուն կազմուածքը մեծ մտադրութեան արժանի է։ Տիլլի բռնած վտակին քով խիտ, պինդ ու պայ-ծառագոյն կրաքար մը կը տեսնուի, որուն կիրը (քի-րէճը) կանոնաւոր եղանակաւ մը խաւ խաւ (քաթ քաթ) շարուած է. ամէն մէկ խաւը հաւասարակօրէն կէս ոտ-նաչափ, տեղ տեղ ալ մինչեւ հինգ վեց ոտնաչափ Թանձրութիւն ունի։ Աս հրաբխական լեռներուն մէջ երկրաբան մը, ինչպէս նաեւ նկարիչ մը զննութեան արժանի շատ բաներ կը գտնէ։ Խայտակուճը հոս շատ առատ է. աս գեղեցիկ քարը երկրէն դէպ ի վեր սիւնաձեւ կը բարձրանայ ու սրածայր կը վերջանայ։ Խայտակճեայ սիւներուն կանոնաւոր հնգանկիւնի ձեւն ու շիտ շիտակ բարձրութիւնը կը ցուցնէ որ հրա-

բուխներու բերնէն սաստիկ ուժով եւ շուտով վեր նետուած ու մէկէն ի մէկ սառած մնացած են։ Անտայի մօտ 5000 ոտնաչափ բարձրութեամբ կիրճէ մը անցնելու ատեններս դարձեալ նոյն քարը գտայ։

[illegible]ատեղերը շատ ողորմելի խրճիթներու մէջ Ռուս գաղթականներ կան։ Ասոնք տարւոյն ամէն օրերը կաթ ուտելնուն համար՝ Կաթնակեր կ'ըսուին, եւ Ռուսաց տէրութենէն իբրեւ աղանդաւոր հոս քշուած են։ Հազիւ թէ Կաթնակերներուն մէկ խրճիթէն ելած էինք, դիւապաշտ Եզիտիներու երկու բնակիք տեսանք։ Երիկ մարդիկներուն գլուխը սաստիկ մեծ էր, աչուըներին խոշոր ու խոլոր, եւ բոլոր կերպարանքներին այնպէս գարշելի որ նոյն իսկ ժանտատեսիլ Մղուլներու մէջ խիստ քիչ կը գտնուի, իսկ կանայք միայն կաշի ու ոսկր էին. աչուըներին տրտած ու փորած, հայեցուածքնին բիրտ ու կատաղի եւ այնպէս կախարդի նման էին որ մարդ երեսնին նայելու չէր համարձակեր։ Ասոնց բոլոր ունեցածն էր պզտիկ իշու մը վրան քանի մը պնակ (չանաք), կացին (պալթա), բահ (քիւրէք) ու չուան։ Երիկ մարդիկներուն մէկը կիսամեռ մօզի մը կը տանէր, իսկ կանանց մէկը ոչխարիկ մը. իրենց բանծին նայելով՝ ատենք Երիւանին մօտերը կը նստին եղեր, բայց տարի մը հունձքը չյաջողելով՝ ստիպուեր են հոնկից ելլել երթալ։ Իրենց ապագան ուրիշ բան չէր երեւար, բայց եթէ անօթութենէ մեռնիլ, վասն զի Հայ մը կամ Թաթար մը՝ աս սատանայի որդիներուն եւ ոչ կտոր մը հաց կու տայ։ Կանայք յուսահատական դէմքով ու խորունկ ձայնով մը ձեռքերնին երկընցուցին ու կ'ըսէին որ "Տուր, տուր, քրիստոնեայ, անօթի ենք"։ Մենք հաց չունենալով՝ քանի մը Ռուսի սատակ տուինք, զորն որ առին, ձեռքերնուն մէջ պնդեցին ու աւանց շնորհակալ ըլլալու՝ ճամբանին յառաջ տարին։

## ԵՐՐՈՐԴ ԳԼՈՒԽ

*Սեւանայ ծովին անունն ու չափը։ Սեւանայ լիճը հրաբխի բերան։ Սեւան կղզին. վանքն ու անոր հիմակուան վիճակը։*

Երբ որ լերան գլուխը հասանք, Տիւկէշանին հարաւային կողմը տեսանք Սեւանայ ծովը[1], որն որ կանաչ լեռներու եւ ձիւնապատ սարերու մէջ գեղեցիկ, հանդարտ ու մեծ կապոյտ (կէօյ-ճուլ) լիճ մըն է։ Աս Ալբեան ծովակին կապուտակ ջուրը Տիւկէշանէ կիրճին բարձրութենէն նայելով՝ ստուգիւ զարմանալի ու նկարագեղ տեսք մ'ունի։ Եթէ աս լճին հարաւային կողմերը սաստիկ բարձր ու ձիւնակատար լեռները չըլլային, Սեւանայ ծովին բոլորտիքն եղած երկիրները շատ մերկ կ'երեւային, ինչու որ թէպէտ լճին արեւելեան, արեւմտեան ու հիւսիսային կողմերն եղած լեռներն ալ բարձր են, բայց հոս պատահող ճամբորդի մը աչքին այնչափ բարձր չեն երեւար, որովհետեւ նոյն իսկ ճամբորդին քալած երկիրը Սեւ ծովին երեսէն 5—6000 ոտնաչափ բարձր տեղ է։ Սեւանայ ծովը անանկ բարձր դիրքի մը մէջ է, որ հաւանականաբար բոլոր առաջակողմեան Ասիոյ մէջ իր նմանը չունի. լճին արեւմտեան ու հիւսիսային կողմի լեռները հազիւ թէ անոր երեսէն 3500 ոտնաչափ բարձր են։

Սեւանայ ծովը տեսնուածին պէս՝ քովի Ռուսս սկսաւ ուրախութեամբ պոռալ, Պարոն, ծով, ծով։ Խաղախ մարդը, որն որ բոլոր կեանքը մէջ միայն Չէռնոյ-Մօռէ (Սեւ ծովն) ու Ազախու ծովը տեսած է եւ անոնցմէ ուրիշ ծովակ չէր գիտեր, աս ծովակը տեսած ատեն՝ կարծեց որ իր հայրենեացը մօտիկցաւ. բայց մենք լուռ ու խորունկ մտադրութեամբ մը Հայաս-

[1] Սեւանայ ծովը՝ որն որ մեր մէջը Գեղամայ ծով, Գեղարքունեաց ծով ալ կ'ըսուի, իր կապուտակ գոյնին համար Տաճիկներէն Կէօքչայ կը կոչուի. իսկ Պարսիկները կ'անուանեն Դերիա-ի շիրին, որն որ Քաղցր ու միանգամայն Գեղեցիկ ծով կը նշանակէ։

տանի բարձրագաւառներուն նորանոր տեսարանները կը գտնէինք։ Տիլիշան կիրճին բարձր տեղէն անցնելէն ետքը՝ երբ որ դէպ ի Սեւանայ ծով կ'իջնայինք, լերան զառիվայրին վրայ ձիւները կատարեալ հալած էին, եւ բոլոր երկիրն երերոր գարնանային բոյսերով զարդարուած էր։ Ձորս կողմն շքեղ ալպեան ծաղիկներ կը տեսնէի, որոնց մէջ ամենէն շատ էր աղուոր երկնագոյն մկնասոխը[1] նոյնպէս զանազան հազուագիւտ ճճիներ. ասոնց ամենէն ալ շատ ժողվեցի։

Եւրոպացւոց մէջէն ամենէն յառաջ Շարտէն[2] Գաղղիացին աս լճին վրայ ծանօթութիւն տուաւ։ Աս գիտնականը Սեւանայ ծովին շրջապատը կը դնէ 25 փարսախ[3] որն որ ըսել է 12 — 13 ժամ. անոր ստուգի խորութիւնը կը յիշէ, ու կը հաստատէ թէ անկից 9 տեսակ ձուկ կը բռնեն, որոնք Երիւանի մէջ շատ յարգի են։ Մենք երբ որ օթեւան (Ձենգիլ) հասանք, որն որ լճին հիւսիսային եզրէն հազիւ թէ 10 բայլ հեռու է, նոյն լճին Սեւան բռուած կղզւոյն վրան եղած մենաստանին վանահօրը օր մը յառաջ մարդ խրկելով խնդրեցինք որ վանքին այցելութիւն մ'ընելու կը բաղձանք, եւ կ'աղաչենք որ վանքին լաստը (նաւը) ճամբէ ընէ խուրէ։ Երկրորդ օրը երբ որ լճակը գացինք, ուրախութեամբ տեսանք որ չէ թէ միայն լաստը հոն էր, հապա նոյն իսկ պատուական վանահայրը երկու ժամէ ի վեր մեզի կը սպասէր։ Ամէնքնիս մէկտեղ լաստը հեծանք, ու Սեւանայ ծովին հանդարտ ջրերուն վրայէն սկսանք երթալ։ Լճին պայծառ ու կապուտակ գոյնը կարծես թէ մեր երեսը կը ծիծաղէր, եւ սառուցիւ մաքուր երկնքին վճիտ գոյնէն աւելի գեղեցիկ էր։ Արեւը չափաւոր տաքութիւն ունէր (կէսօրը 14° Ռէոմիւրի)։ Աս ազատ լեռնային օդին մէջ չորս կողմերնիս եղած գալարադեղ բլուրներն ու

[1] Scilla Sibirica. [2] Chardin. [3] Lieuë.

ձիւնափայլ կատարները մեզ շատ կը զուարթացը-նէին։ Հոս միտքերնիս եկաւ խեղճ Պր. Տիւպուա տը Մոնբէռէօ[1], որն որ մեզմէ ութը տարի յառաջ խիստ ձմեռուան ատեն հոս հասնելով՝ չկրցաւ աս փառաւոր տեղը վայելել ու աս տեղս ալ իր հմտական ու արդիւնաւոր զննութիւններն ընել։

Տարակոյս չկայ որ աս Սեւանայ լճին մէջ շատ ժամանակ յառաջ սոսկալի հրաբխական գործողութիւններ եղած պիտի ըլլան։ Լճին չորս կողմը բոլորած են այնպիսի հրաշունչ լեռներ, որոնք հիմա մարած են, բայց կը ցուցընեն որ ատեն մը իրենց բերանն է եղեր աս լճին տեղը, ուրմէ ահագին բոցեր ելած ու հրային նիւթեր եւ քարեր դուրս ցատքած պիտի ըլլան։ Սակայն հիմա նոյն ծակին մէջ ջուրը եկած լեցուած ըլլալով՝ յառաջուան անդունդը գո-ցուած է։ Անժխտելի նշաններէն կը տեսնուի որ հրաբուխ լեռները խիստ շատ երկայն ատեն հոստեղս գործեր են։ Նոյն իսկ Սեւան կղզին ուրիշ բան չէ՝ բայց եթէ ան հրաբուխներուն բերնէն դուրս ելած բլրաձեւ կոյտ մը։ Մինչեւ հիմա կղզւոյն վրան հրաբխային նիւթերով ծածկուած է։ Կղզին ելլելնուս պէս՝ խոշոր լաւայէ[2] քար մը տեսանք. սաստիկ մեծ կտորներով չէնչաքար (փոմզա թաշը) ալ շատ կայ. բայց ընդհանրապէս հրաբուխներուն ապակենման քարերը հոս չկան։ Կղզւոյն ժայռերուն երեսը չափաւոր խորութեամբ մը փշրուած, փխրած ու հող դարձած է,

[1] Dubois de Montperreux. Աս հմուտ երկրաբան ճամբորդը Հայաստանը պտըտած, քննած ու հատորաւոր պատկերազարդ գրքեր հանած է, որոնց մէջի հիմնական ծանօթութիւնները գիտնոց առջեւը մեծ համարում ունին։

[2] Լաւա հրաբուխներէն վազած փրփուրը կամ հեղուկ մոխիրն է, որն որ երկայն ատեն լոյծ կը մնայ ու իր տաքութիւնը կը պահէ, բայց ետքէն կը կարծրանայ ու պարունակած նիւթերուն համեմատ տեսակ տեսակ քարեր կ'ըլլայ։

եւ շատ տեսակ անկեր կը բուսցընէ։ Ժայռակերուն տասանկ քայքայիլը ու փշրիլը՝ որն որ օդին ու ջրին ազդեցութենէն եղած է, կը ցուցընէ թէ աս քարերը ինչչափ հին ժամանակուան բաներ են։ Զարմանալի է Սեւանի վրայ հեփեստոսեան տափ (այսէք Բաշը) ըսուած քարին վերջի աստիճանի խոշոր կտորները։ Աս քարին պզտիկ կտորները մաշած, կլորցուած եւ անկիւնաւոր են, ու պինդ եւ փայլուն նիւթով մը իրարու հետ կապուած են։ Յայտնի է որ աս ամէն երեւոյթները ջրին զօրութեամբը եղած բաներ են, որմէ կը հետեւի թէ Սեւան կղզին հազարաւոր տարիներ յառաջ ջրի տակ է եղեր կամ թէ ըսենք Սեւանայ ծովին ջուրը յառաջ հիմակուընէ շատաւելի բարձր է եղեր։ Արդէն գարնանային ծաղիկները կղզւոյն երեսը բացուելու սկսած էին, ամէնէն առատ տեսակներն էին դեղնագոյն հրանունկ ու գարնանաբեր ծաղիկ։ Երբ որ վանահայրը տեսաւ որ բոյսերը քննելու կը զբաղիմ, ըսաւ թէ Ապրիլ կղզւոյն ծաղիկներուն դեռ նոր սկիզբն է. մէկ շաբաթ ետքը դառնալու գալու որ ըլլաք, բոլոր կղզւոյն կերպարանքը փոխուած ու ամենագեղ ծաղիկներով զարդարուած կը տեսնէք։

Բոլոր վանքը լաւայէ շինուած է. Նաեւ եկեղեցւոյն խորաններն ալ աս սեւ քարէն[1] են։ Երկու եկեղեցիներն ալ իրենց փառաւոր վիճակին մէջը չեն։ Վանքըն այնպէս շինուած է որ արեւուն լոյսը խիստ քիչ կը մտնէ։ Վանականները հիմա 15 հոգի են. ատեն մը ատոր երեքպատիկն էր։ Սեւանայ կրօնաւորները շատ երկայն չեն ապրիր ու հիւանդոտ են, բայց կ'երեւայ որ աս բանս՝ խստամբեր ու ամէն դիւրութենէ զուրկ կեանք անցընելէն է, որովհետեւ

[1] Պր. Վագներին աս ամէն ստորագրութիւններէն կ'երեւայ որ աս կղզւոյն Սեւան անունը անոր հրաբխային սեւ քարերուն տեղէն առնուած դրուած ըլլայ։

## ՉՈՐՐՈՐԴ ԳԼՈՒԽ

*Սեւանայ ծովին բարձր դիրքը, խորութիւնը, աղէկ ջուրն ու ձկները։ Սեւանայ շրջակայ տեղերուն Հանքաբանական որպիսութիւնը, բոյսերը, կենդանիները, մշակութեան պակասութիւնը, բնակչաց քիչութիւնն ու աղքատութիւնը։*

ՅԱՄԱՌ ոլլեղնուս պէս՝ Պր. Արմէնակը Երեւան գնաց. եւ ես ալ երկրաբանական մուրճը ձեռքս առած՝ իմ կայարանս դարձայ։ Մայիսի առաւօտ օրերն ու հեշտ արեւն ինծի մեծապէս օգնեցին։ Ամէն օր կամ ձիով կամ հետի, երբեմն մինակ ու երբեմն իմ խազախիս ընկերութեամբը զանազան տեղեր ու ճճիներ ժողվելու կ'երթայի։ Բայց ձիւնը դեռ նոր հալած ըլլալուն՝ միջատներն ու բոյսերն այնչափ առատ չէին, միայն թէ խիստ հազուագիւտ ու մասնաւորութեամբ արժանի տեսակներ էին։ Իմ խազախէս զատ՝ երեք Հայազգի ալ վարձքով բռնեցի, որոնք աղքատ ու բարեսիրտ մարդիկներ էին, եւ քիչ ռուսերէն գիտէին, այնպէս որ հազիւ թէ շատ հարկաւոր բաները կրցայ հասկըցընել, բայց իրենք խելացի ըլլալով ամէն բան դիւրաւ ըմբռնեցին ու ինծի շատ օգուտ ըրին։

Բարձրութիւնները չափելու ծանրաչափս կոտրած ըլլալով՝ եռալ ջուր եռացընելու գործածութեամբ քննել[1] որ Սեւանայ ծովը Սեւ ծովին երեսէն որչափ բարձրութիւն ունի։ Այս վախճանիս համար Վիէննա Պր. Գաբելլէրէն շինուած ջերմաչափ մը գործածեցի, որն որ իր բոլոր մէկալ կազմածներովը ու երփարաններովը անանկ վարպետութեամբ կարգաւորուած ու տեղաւորուած է՝ որ Թուաներուն Թառափ ըրած ասյլին ցնցումներէն ալ վնաս մը չ'ելլեր։ Լճին Հիւսիսային եզերքին վրայ եօթը հեղ փորձելէս ետքը՝ գտայ որ հոս եռացման կէտն է Ռէօմիւրի 94°, որն որ 1501 գաղղիական մետր, կամ 4749 Վիեննական ոտնաչափ բարձրութիւն ըսել է։

[1] Տես Կրթական ու գըտածի տետրակը. Օդերեւոյթք, Երես 11 ուր այս գործածութեան վրայ մանրամասն գրուած է։

Աստի գրեթէ ճիշդ իմացայ որ Սեւանայ լիճը ծո-
վին երեսէն 4749 ոտնաչափ (շուրջ 1980 կանգուն,
արշին) բարձր է։ Լճին տաքութիւնը Մայիսի 19ին
առաւօտուն $3^4/_{10}$ աստիճան Ռէոմ. էր. իսկ դուրսը
ստուեր օդի մէջ 6 աստիճ. Ռէոմ։ Հիւսիսային ու
արեւմտեան կողմը լճին ջուրը մաքուր, անուշ ու ա-
խորժահամ է, եւ ամենէն աղէկ աղբիւրներուն ջրին
պէս կը զովացընէ։ Տիւպուա կ'ըսէ որ հարաւային ու
արեւելեան դին ասոր հակառակ է. բայց ես ինծի
հաւանական չ'երեւար, որովհետեւ մըրիկները շատ
անգամ բոլոր լճին ջուրը իրարու հետ կը խառնեն։
Նոյն ճամբորդը կը հաստատէ որ աս ծովակին եր-
կայնութիւնը 60 ռուսական մղոն (վերստ. 1 վերստ = 17
րոպէ) է, իսկ լայնութիւնը ամէն տեղ տարբեր է։
Սեւանայ ծովին գոյնը լեռներէն նայողին գեղեցիկ
լեղակի կապոյտ (չիվիթ մավիսի) կ'երեւայ, իսկ քովէն՝
սեւ կապոյտ, բայց շատ յստակ ու թափանցիկ է։
Աստ խորութիւնը մինչեւ հիմա չկրցաւ իմացուիլ.
Պր. Պուխվալտ ըսաւ որ ես անձամբ կապարէ գունտը
ձգեցի ու 70 գրկաչափ (գուլաճ) երկընցուցի, եւ
յատակը չգտայ։ Թէպէտ աս լճին դիրքը բարձր է
ու ձմեռուան ցրտութիւնը խիստ, ի վերայ այսր ա-
մենայնի ջուրը միշտ չսառիր, որովհետեւ Դեկ-
տեմբերէն մինչեւ Մարտ փչած սաստկաշունչ փո-
թորիկները նաեւ 20—25 աստիճան Ռէոմ. ցուրտ
եղած ատեն՝ թող չեն տար որ ջրին երեսը սառոյց
կապէ։ Բայց սառելու ալ ըլլայ նէ, երկու ամիսէն
աւելի նոյն վիճակի մէջ չիմնար։

Լճին մէջ Սեւան կղզիէն զատ՝ որուն շրջանը
հազիւ թէ ռուսի մէկ մղոն է, կապոյտ ջրին վրայ
կը բարձրանան ուրիշ երկու պզտիկ անբնակ ժայ-
ռուտ կղզիներ։ Թէպէտ ծովակին ձուկը շատ առատ
է, բայց ես ջրին երեսը ձկնորսի նաւակ մը չտե-
սայ։ Հայերն ու Թաթարներն իրենց ուռկանը կը

ձգեն այն տեղերը՝ ուր որ գետակները լճին մէջ կը վազեն, եւ լճին մէջտեղերը չեն փորձեր թէ որչափ ձուկ ունի։ Բուն ձկնորսութիւնը հասարակօրէն Մայիսի վերջերը կը սկսի։ Ամառուան սկիզբը ձկերը լճէն կ'ելլեն ու ջրին ընթացքին դէմ գետակները կ'երթան։ Կարգաւորեալ ձկնորսութիւնը տարին չորս անգամ է, ամէն մէկ հեղ մէյ մէկ ամիս. ասանկով ութ ամիս ձկերը մարդիկներուն որոգայթներէն ազատ ու ապահով կը մնան։ Կ'ըսուի որ աս լճին մէջ վեց տեսակ ձուկ[1] կայ։ Տիւպուա կը հաստատէ թէ Փետրուար ամսոյն տեղացիք լճին սառած երեսին վրայ ծակեր բանալով մէջը ցանց կը նետեն, ինչպէս որ ինք ալ տեսեր է. բայց ես ասանկ զարմանալի ձկնորսութեան մը վրայ հոս շատերուն հարցուցի որ տեղեկութիւն մ'առնեմ, եւ ամէնեւին մէկը ասանկ բան չէր գիտեր։

Ընդհանրապէս խօսելով Սեւանայ ծովին եզերքը ցից կամ սեպացեալ չեն։ Լճին ու անոր քովի լեռներուն մէջ պզտիկ դաշտեր կամ հովիտներ կան, որոնք Ցունիսէն մինչեւ Սեպտեմբեր գեղեցիկ արօտ կը բուսցընեն։ Հարաւային ծայրը շատ սքանչելի տեսք ունի, ուր կայ Ահմանկան ըսուած Հրաբուխ լեռներուն խումբը, որուն բերանը մինչեւ հիմակ ամբողջ մնացած կը կարծուի, եւ իր լեռներէն չորսին բարձրութիւնը 12,000 ոտնաչափէն վար չ'երեւար։ Իսկ լճին հարաւային արեւելեան ծայրը կը բարձրանան Գըրզ գալէսի, Քիւնկիւր տաղը, Քէօթիւ տաղ ըսուած լեռները, որոնց կատարը միշտ ձիւնապատ է։ Սեւանէն Երիւան երթալու ճամբէն քիչ մը հեռու երեք եղբարց պէս երեք լեռ կան, որոնք զարմանալի եղանակաւ մը հաւասարապէս կոնաձեւ կամ

[1] Ոմանք կը հաստատեն որ ամէն մէկ ամիս զատ զատ ձկի տեսակ կ'ելլէ. ասիկա ստոյգ կրնայ ըլլալ, բայց ծուռ է ըսելը որ 12 ամսուան մէջ 12 տեսակ ձուկ կ'ելլէ, վասն զի աս լճին մէջ տարին 12 ամիս ձկնորսութիւն չ'ըլլար։

բըղխածեւ են, եւ իրենց բոլորտիքը հրաբուխներէ դուրս նետուած զանազան քարեր կան, ու նաեւ հրաբուխներու ապակենման քարեր, ինչպէս վանակատ, մարգարտաքար եւ հուղակին[1]։ Աս երեք լեռը բնակիչներէն կը կոչուին Երեք բլուրք (Իւչ Թէփէ)։ Սեւանին արեւմտեան կողմի լեռները շատ տեղ բուն իրենց շղթայէն բաժնուած են ու զատ զատ կը կենան. աս բանս կը ցուցընէ որ հասարակաց լեռները հրաբուխներուն մէջէն միանգամ դուրս պոռթկալէն ետքը՝ հրաբուխները չեն մարեր, հապա երկայն ատեն անոնց գործողութիւնները յառաջ երթալով տաղին անդին նոր հրաբուխներու բերան բացուեր է ու երկրին ծոցէն նոր կայտեր դուրս են ժայթքեր։

Հոս ալ լեռան վրայ որ ելայ նէ, ամէն տեղ տեսայ որ երկրիս երեսի քարերն ու ժայռերը չափաւոր խառնութեամբ արդէն փշրեր ու հող դարձեր են, զատ ժայռ երկրին երեսը խիստ քիչ՝ տեղ կ'երեւայ։ Աս հող դարձած ժայռերուն երեսը փըռուած բոյսերուն հետ խառնուելով՝ զանազան գունով ու շատ գեղեցիկ ծաղիկներ կը բուսցընէ։ Թէպէտեւ իմ պտըտած ատենս գարնան արեւը հազիւ թէ քանի մը օր էր որ ծագեր էր, այսու ամենայնիւ

1 Վանակատը տեսակ մը հրաբխական, բայց շատ յարդի քար է. ապակւոյ իր բնական վիճակին մէջ չոր ձիւթ (զէֆթ) կը նմանի, սակայն յղկելու որ ըլլայ, սաստիկ կը փայլի ու սեւ մարմար կամ սեւ վանակն (ղէւըր) կը դառնայ։ Հին ատենները աս քարէն հայլի կը շինէին։ Գաղղիացիք ասոր կ'ըսեն՝ Obsidiane, Pierre obsidienne. լտ. Obsidianus lapis, որովհետեւ Ոպսիդիոս անուանով Հռովմայեցի մը ասիկայ առաջին անգամ Եթովպիայէն գտաւ ու Եւրոպա բերաւ. իսկ Գերմանացիք կ'ըսեն նաեւ Ապակի ակատ, Ագռաւաքար (Glasagath, Rabenstein)։ Մարգարտաքարը (գղ. Perlite, գերմ. Perlstein) մի եւ նոյն վանակատն է, բայց մէջը մարգարիտի պէս ճերմակ հատեր կան։ Նոյնպէս հուղակին (գղ. Résinite, գերմ. Pechstein) ալ մի եւ նոյն տեսակէն է, բայց իր այլեւայլ մասերը հուղով կամ խէժային նիւթով մը իրարու հետ կպցուած են, որով նոյն քարը զանազան գոյն կ'առնէ։

վրայի օդին մէջ անհամար բազմութեամբ որորներն[1] ու գետագռաւները[2] կը թռչէին։ Ջրին քովերը կը վխտային կանաչ ճայ (մորինի) ու բադ։ Ցամահաւներն ու ծիծառները տանեաց վրայ բոյն դրած էին. եւ լեռնային մարգերուն կողմերէն ալ լորամարգներուն կանչիւնն ու արտոյտներուն զուարթ կարկաչիւնը կը հնչէր։ Միջատները շատ գեղեցիկ, նոր տեսակ ու բազմաթիւ էին։ Ես ժամանակ չունենալով՝ Սեւանայ հարաւային եզերքը չկրցայ երթալ տեսնել, բայց երկրաբան մը ու բնապատում մը Ահմանկան լեռներուն վրայ քիչ մը ատեն կենալու որ ըլլայ, քննելու արժանի շատ բան կը գտնէ։

Հայոց թագաւորներուն ատենը հոստեղս շէն ու բազմամարդ գաւառ մըն էր Սիւնիք կամ Սիսական անուամբ։ Սեւանայ ծովին եզերքը ծաղկեալ գեղերով զարդարուած էին. եւ չէ թէ հիմակուան պէս միայն ցորենի ու գարւոյ արտեր կային, հապա ազուոր պարտէզներ ու մրգաբեր ծառեր մերկ գետինը կը զգեստաւորէին, ինչպէս որ դեռ այսօրուան օրս Վանայ ծովին բոլորտիքը կ՚երեւայ, ուր ժիր ու հնարագէտ ժողովուրդ մը հոնտեղաց խիստ բնութիւնը կէս մը յաղթած է ու ամէն կերպ անուշահամ պտուղներ կը հասցընէ։ Սեւանայ ծովին քովերը թէպէտ մերկ է, բայց պարտէզներ մշակելու եւ կարգաւորեալ անտառներ անկելու անկարելութիւն մը չկայ։ Բարձր Հայոց մէջ Կարնոյ լեռնադաշտը աւելի բարձր (Սեւ ծովին երեսէն 6100 ոտնաչափ վեր) դիրք ունի, ի վերայ այսր ամենայնի հոն խումբ խումբ գեղեցիկ կաղամախի (կավաղ) տեսայ. եւ Արարատայ պզտիկ մասին վրայ որ Սեւ ծովին երեսէն 7800 ոտնաչափ բարձրութիւն ունի, հաւամրգի[3] ծառերու անտառակ մը

[1] Լտ. Larus. գղ. Mouette. [2] Գղ. Cormoran. [3] Գղ. Bouleau.

ջար։ Ստոյգ է որ հիմա Սեւանայ շրջանակը պարտէզ կամ անտառ չկայ, բայց այնչափ գեղերու, եկեղեցիներու եւ վանքերու աւերակները կը ցուցնեն որ երբեմն հոս բազմաթիւ ժողովուրդ մը խաղաղութեամբ ու երջանկութեամբ կ'ապրէր։ Պարսից ու Տաճկաց մէջ եղած ահագին պատերազմներն աս կողմերը խոպան անապատ դարձուցին. բայց մնացածն ալ Ռուսաստանի եւ Պարսկաստանի վերջին կռիւը բոլորովին աւրեց ու ապականեց. մէյ մը Պարսիկներու կողմնակից Քիւրտերը գեղերը կը զարնէին, մէյ մը խազախներու խումբը. ասանկով Սեւանայ ծովին քովերը 60 պզտիկ գեղ մնաց. 45 գեղի բնակիչները Ռուսերուն եկած ատեն տեղերնէն ելան գացին ու գեղերն անբնակ թողուցին։ Հիմակ հոս Հայոց 6 եկեղեցի կայ. մէկալներն երեսի վրայ մնացեր են։ Ռուսերուն թիւը հազիւ թէ 20ի կը հասնի, որովհետեւ միայն՝ թղթատարութեան մէկ երկու պաշտօնատէրներ, քանի մը զինուորական պաշտօնականներ (օֆիցերներ) ու խազախներ կան։ Հայոց գեղերն ըստ մեծի մասին լճին արեւմտեան ու հիւսիսային կողմերն են։ Ես շատ անգամ ասոնց հիւսիսային գեղերուն այցելութիւն ըրի, ուսկից վարձքով մարդ կը բռնէի որ հետս բոյս ու ճճի ժողվեն։ Ասոնց տնակը կէս մը հողի մէջ է, որպէս զի, ինչպէս իրենցմէ մէկն ինծի ըսաւ, ձմեռն աւելի տաք մնայ։ Ամէն մէկ տնակին մէջ բաւական ընդարձակութեամբ երեք չորս խուց կայ։ Կանայք հասարակօրէն բամբակ կը մանեն։ Ամէն բանի մէջ կը տեսնուի որ սաստիկ աղքատ են։ Աս գեղացիները Ռուսաստանի եւ Տաճկաստանի մէջ 1829ին եղած դաշինքէն ետքը իրենց երկրէն ելան ու հոս եկան, բայց աս տեղափոխութեան վրայ հիմա գոհ չեն։ Ամէն մէկ տանտէր կամ ընտանեաց գլուխ՝ տարին իրեն համար երկու արծաթ ռուպլի գլխահարկ կամ մարդահարկ

պիտի վճարէ, եւ 8 մինչեւ 12 արծաթ ռուպլի ալ հողադրամ (երկրի համար տուրք). այսչափ տուրքը տասնեակ աղքատ մարդիկներու նայելով՝ սաստիկ շատ է։ Բայց ասկէց զատ՝ նաեւ տարէկ տարի հանկէց Վարդաւառին գացող Թաթար ձիաւորներուն զբեղանին եւ ուրիշ ծախքերուն ալ խեղճ բնակիչները պէտք են օգնել։ Իսկ սորքին ռուս պաշտօնատէրներուն իրենց կողմանէ բռնած անհամար հարստահարութիւններն ալ աւանդելէ դուրս են։ Տեղացիք բաժն որ իրենց կենդանիներին արածելու մէջ ալ շատ նեղութիւն կը կրեն, որովհետեւ նամակարանին (փօսթայի) ռուս պաշտօնատէրներին ամէնէն գեղեցիկ արօտները (չայըր-ները) իրենց ձիերուն համար կ'առնեն, թէպէտեւ իրաւունք մը չունին։ Դարձեալ բնակչաց մէկ երեսելը շահը հիմա պակսած է։ Յառաջագոյն Երիւանի եւ Թիֆլիզի մէջ եղած կարաւաններու երթեւեկին պատճառաւ շատ բեռնակիր կենդանիներ վարձքով կը բռնուէին ու ժողովրդեան մեծ շահ կ'ըլլար. բայց հիմակ Ռուսաց կառավարութիւնը դրած եկած ապրանքներու շատ բարձր մաքս դնելով՝ վաճառականներու կարաւանները խափանուեցան։ Ասկէց Տաճկաստանի Հայերն աւելի վնասուեցան, որովհետեւ Դաւրէժի ու Տրապիզոնի մէջ երթեւեկող կարաւաններն աւելի եւս յաճախ եղան։



## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

Գեղեցիկ տեսարան։ Ջինջի գետակին ձկները։ Հրաբխային քարեր։ Երիւանայ տաուտուրը, դիրքն ու պատերազմական նշանակութիւնը։ Երիւանայ բերդը։ Հայ գիւղացուհի։ Երիւանայ բնակչաց թիւն ու անոնց աղքատ վիճակը։ Կառավարութեան կերպ։ Բարեխառնութեան աստիճան։ Երկրին բերքն ու Հայոց մշակութեան ճարտարութիւնը։ Մեծ ու Փոքր Մասիս։

ՄԱՅԻՍԻ գեղեցիկ արեւը ծագած էր ու Հայաստանի պայծառ կապուտակ երկինքէն ձիւնախաղաղ լեռներն ու դաշտերու բնակիչները հաճոյական եղանակ մը կը տաքցընէր։ Ցօղաւէտ խոտերուն վրայ լորամարգը զուարթ կը հնչէր. վարդագոյն տարմահաւները ժայռերուն դալար ծածկութին վրայ սիրուն շարժումներով կը խայտային. որորները, գետագռաւներն ու գորշ ճայերը Սեւանայ ծովին վրայ երթեւեկելով՝ ձկնիկ ու գորտնիկ կը դիտէին, եւ որս մը գտածնուն պէս՝ ուրախութեամբ կը կռչէին. բազէն ու գետարծուին օդին բարձրագոյն գաւառներուն մէջ հանդարտ ու պերճ կերպով մը կը թռչէին. եւ լերանց ծայրերուն մօտ ժայռաբնակ արտոյտները՝ իրենց առաւօտեան ողջոյնը կ'երգէին։ Այսանկ զուարճալի տեսարանին մէջ Սեւանէն Երիւան ճամբայ ելանք։ Քովի Խազախս ալ առաւօտուանց քիչ մը օղի խմելով շատ զուարթացաւ ու սկսաւ Խազախի երգ մը մրմռալ եւ երբեմն երբեմն կը դառնար ինծի կը նայէր որ կը հաճի՞մ թէ կը տհաճիմ. բայց երբոր թեթեւ ժանիք մ'ըրի, լռեց, ու չիմացաւ որ կառքին սաստիկ ցնցումներէն կը տանջուիմ, որովհետեւ իր սլաւեան մորթը չէ թէ միայն չէր զգար, հապա նաեւ անով աւելի առողջութիւն կը ստանար ու իր ախորժակը կը բացուէր, որով Խազախներու ստամոքսին մարսողական զօրութեան հրաշալի փորձերը տեսնելու շատ անգամ առիթ ունեցայ։ Ինք շատ ճարպիկ էր, բայց սաստիկ ալ գող. ուր որ կ'երթայի նէ, կ'ազդարէի որ աղէկ զգուշա-

նան, ի վերայ այսօր ամենայնի ամէն տեղ բան մը կը կորզէր, ու նոյն իսկ իմ քսակս ալ երբեմն երբեմն ծածուկ կը բարեւէր։

Մեր ճամբուն վրայ հասանք ան Ջրանցքին՝ որն որ Սեւանայ լճէն ելլելով՝ իր ակնակիտ ջրերովը Զենկի գետին հետ կ'երթայ ու անոր հետ մէկտեղ Երիւան կը մտնէ։ Հոս կարթընկեց Հայեր նստած էին ու քովերնին նոր բռնած ձկեր ունէին, որոնցմէ տասուերկու հատ մը գնեցի, որ գինւոյ ոգիի մէջ դնելով Եւրոպա բերեմ, եւ Խաչախիս յանձնեցի որ անոնք ոգիի տիկը դնէ, ու ես մօտաւոր ժայռերը զննելու գացի։ Հրաբխական քարերու խել մը գեղեցիկ կտորներ գտնելէս ետքը դարձայ, ու նայիմ որ Խաչախս բոլոր մարմնով զբաղման մը մէջ է. մէյ մ'ալ, ափսո՜ս, տեսայ որ ձկերը նախ կտոր կտոր ըրեր ու այնպէս գինւոյ ոգիի մէջ դրեր է։ Աս բանիս վրայ սաստիկ կատղեցայ, բայց ինք կը զարմանար որ հոս տաքնալու ինչ բան կայ. "Անոր համար կտրտեցի, կ'ըսէր, որպէս զի ոգին աղէկ մը ձկերուն մէջ թափանցէ ու Երիւան հասած ատենդ աւելի համով ուտես"։ Ասանկով ան աղուոր ձկերը փճացան, որոնց մէջ, ինչպէս քննելով իմացայ, երկու տեսակ ծածան (սազան պալըղը) կար ու երեք չորս տեսակ անծանօթ ձկեր։ Կը յուսայի որ Երիւան անոնց չորցածը կը գտնեմ, բայց պարապի ելլելով աւելի եւս դժուարեցայ։ Եւրոպայի բնախոյզները հոստեղաց ձկերը դեռ աչքէ անցուցած չեն, անոր համար անոնց ճիշդ ստորագրութիւնը եւ բնակիչներուն՝ ձկանց տեղւոյն ու տարածութեանը վրայ տուած ծանօթութիւնները շատ յարգի են։

Հոս Հայաստանի հրաբուխ լեռները քանի կ'երթայ ահեղ կերպարանք մը կը ստանան։ Մեծ մասը կոնաձեւ կամ բրգաձեւ են. բայց ամենէն կանոնաւոր կոնաձեւը փոքր Արարատն է։ Չորս կողմը ափիւ

կը տեսնուին հրաբուխներու տապակենման փայլուն քարեր, որոնք նաեւ այնպիսի ճամբորդի մը աչքին կը զարնեն, որն որ չիգիտեր թէ հոս մարած ու սառած հրային գետնի մը վրայ կը քալէ: Քովի Խազախս զարմանալով մը աս փայլուն քարերէն քանի մը կտոր առաւ ու ըսաւ որ հոս ժամանակաւ ապակւոյ շատ գործատուններ եղած պիտի ըլլան: Բայց որ նոյն տապակենման քարերը կան նէ, քովերնին ալ չեչաքար (փոմզա Թաշը) կայ, որն որ աս տապակենման նիւթին հալած ատենը փրփուրի պէս անոր երեսը կեցած ու անոր սառած ատենը՝ վրայէն բաժնուած պիտ'որ ըլլայ: Երբոր Սեւանէն 20 ռուսական մղոն հեռացած էինք, առաջին անգամ Մեծ. Արարատը տեսայ: Աս հռչակաւոր ու հսկայ լերան ճերմակ ձիւնեղէն կատարը հեռուանց ու խորունկանց քովի սեւ ու անձիւն լեռներուն մէջէն դէպ ի վեր կը բարձրանայ: Անմիջապէս ճանչցայ որ ատիկայ Նոյեան լեռն է, ու Հայ կառապանը սկսաւ գլուխը շարժելով ըսել որ Մասիսն է: Գիշեր մը Երար օթեւանը պառկեցայ ու երկրորդ օրը քանի որ ճամբաս յառաջ կը տանէի, Մասիսը կը սկսէր իր բովանդակ ծաւալովն ազատ ու պայծառ երեւալ: Ասիկա անհնարին մեծութեամբ միապաղաղ սեւ քար մըն է: Գուցէ բոլոր երկրիս վրայ ատանկ ամէն կողմանէ զատուած ու ասանկ մեծութեամբ քար մէյ մըն ալ չկայ: Որ ճամբորդ աս Ջրհեղեղեան լեռը տեսած ատենը՝ անոր առջեւը մէկ կրօնական ու պատմական ներքին ու խորին յարգութիւն մը չիզգար: Աս ահեղ ու շքեղ տեսարանը բոլոր կրած ցաւերս ու նեղութիւններս մոռցուց:

Վերջապէս Երիւան հասայ. հոն ուղեկիցներս ալ գտայ: Զինուորական Ռուս մեծերը զիս վերջին աստիճանի մարդասիրութեամբ ընդունեցան: Ճամբորդութեանս պատմութեան մէջ Ռուսաց ստորին պաշ-

տանուտէրներուն անարժան վարմանցն ու հարստահարութեանցը վրայ շատ տեղ ակնածութեամբ խօսեցայ, բայց աս ալ պէտք է խոստովանիմ որ Ռուսաց հիւրասիրութիւնը խիստ քիչ տեղ կրնայ գըտնուիլ։ Երեւան. քաղաքը Երասխ գետոյն քովի դաշտին հիւսիսային արեւելեան կողմը կ'իյնայ ու Պառոտին չափմանը նայելով՝ Սեւ Ծովին. երեսէն 3311 ոտնաչափ բարձր է։ Քաղաքին աղբեւէն կ'անցնի Զէնկի[1] արագընթաց գետը, որն որ բնակչաց առողջ ու պարտէզներուն բեղմնաւոր ջուր կը մատակարարէ։ Շրջակայ բլուրներուն տեսքը միջակ բան մըն է, բայց հեռուանց չորս կողմը պատող բարձր լեռներուն գիծը շատ սքանչելի է։ Մերձաւոր տեղերուն այնչափ գեղեցիկ քարերը շէնքերուն չեն գործածեր, նոյնպէս անտառ տնկելու փոյթ չըլլալով՝ փայտի խիստ պակասութիւն կայ։ Քաղաքին հարստութիւնը հիմա մեծցած չէ, վաճառականութիւնն ինկած է. քանի որ Ռուսի դրօշները Երասխ հասան ու Կանկրինեան (այսինքն դրսէն եկող ապրանքներուն համար սաստիկ շատ մաքս պահանջելու) դժբախտ կարգադրութիւնն եղաւ, Թաւրէժէն Տրապիզոն գացող մեծ կարաւաններուն երթեւեկը բոլորովին դադրեցաւ, որն որ բնակիչներուն ստուգիւ մեծամեծ վնասներ եւ բուն հետեւորդի աղքատութիւն պատճառեց։ Անոր համար զարմանք չէ որ բնակիչները Պարսից բռնութիւնները դիմանալով ալ՝ առջին անդին դարձեալ անոնց իշխանութիւնը բաղձալի կը համարին։ Շուկաներն ու վաճառանոցները շատ ողորմելի են։ Անոնց մէջ Քիւրտի աղայ մը տեսանք, որն որ իր կոկորդովը ու լեզուովը այնպիսի զարմանալի երաժշտութիւն մը կ'ընէր որ Եւրոպա բերար նէ, աղէկ ստակ կը կտրէր։

Պատերազմական նկատմամբ Երեւան Ռուսաց ձեռքը մեծ նշանակութիւն ունի եւ աղէկ ամուր դիրք

[1] Աս գետը հին ատենները Հրազդան կ'ըսուէր։

է։ Քաղաքին աւելի տեսնելու արժանի բաներ կան բերդին մէջ, որն որ լաւ ինքեան շատ ամրութիւն մը չունի։ Անիկա քաղաքէն քառորդ ժամ մը հեռու է ու բոլորտիքը հազիւ թէ քառորդ մը կը տեւէ։ Իր շրջապատը երկու պատուար կայ, ներսինը դրսինէն ամուր է։ Երբ որ Նիկողայոս կայսրը 1837ին Հայաստան կը պտըտէր, բերդին տկարութիւնը տեսած ատեն՝ քովիններուն ցուցեր է որ Երեւանի բերդին ամրութեանը վրայ ինծի ծուռ գաղափար մը տուած էին։ Ռուսք Երեւանն առնելնին յաղթական մեծարանութեամբ մը կայսեր իմացուցին, որն որ նոյն տեղը յառաջագոյն անձամբ տեսած ըլլար նէ, դուցէ հիմակ Երեւանեան Բասդեւիչին պերճ պատուանուններէն մէկը պակաս կ'ըլլար։ Ընդհանրապէս խօսելով՝ Նիկողայոս ասս կողմերուն այցելութիւն ըրաւ նէ, շատ բանի մէջ յառաջուան գաղափարները փոխեց, ու միտքը դրաւ որ բոլորովին խաղաղական ընթացք մը բռնէ ու նորանոր աշխարհակալութիւններ ընելու բաղձանքը թողու, որովհետեւ, ինչպէս ինք ըսեր է, "Հարկաւոր է որ Պարսից ձեռքէն արդէն առնուած երկիրները լաւագոյն վիճակի մը հասնին, ու տէրութեան հոգաբարձութեամբը հիմնական խեղճութենէ ազատին։ Անոնք նոյն թշուառութեան մէջ թողուլն ու նոր երկիրներ վաստկելու ջանալը՝ իմաստութիւն մը չէ։" Թէպէտ եւ Ռուսի Հայաստանին սահմաններուն մօտ զանազան տեղեր նոր ու ամուր բերդեր կը շինուին, բայց ասոնք ապագայ ժամանակաց եւ հիմակուընէ չդիտցուելու դէպքերուն զգուշութեանը համար են։

Պարսիկները բերդին ներսի պատերուն վրայ զանազան պատկերներ նկարած են, որոնք շատ անկատարութիւններ ունին, բայց մէկ քանի հատին վրայ ալ բաւական վարպետութիւն կ'երեւայ։ Ասոնցմէ զատ՝ մասդրութեան արժանի է կործանած մզկիթ մը, որն որ իր աշտարակովը մէկտեղ շատ զարդարուն է։

Ռուսերը բերդին մէջ զինատուն մ'ունին, ուր Պարսիկներէն առնուած 6000 կտոր ջինջ ու փայլուն զէնք դրած են: Նիկողայոս կայսրը աս բերդին մէջ բնակեցաւ ու պատին վրայ իր անունը գրեց, որուն վրայ հիմա շրջանակ (չէրչէվէ) ու ապակի դրած կը պահեն: Բերդին պատուհաններէն մէկը Հայ դիւցազնուհւոյ մը գործած քաջութեամբը շատ երեւելի եղած է ու ամէն պարտողներուն մասնաւորապէս կը ցուցուի: Անիկա Երասխի եզերացը վրայ եղած գեղի մը մէջ աղքատ ու համեստ ծնողաց որդէն նշանուած դուստրն էր: Վերջին Պարսիկ բերդապետը Հիւսէյին Խան իր խժական սովորութեանը համաձայն՝ զանիկա բռնի մահմետական ընելու համար՝ իր ծնողացը ձեռքէն յափշտակեց, իր բնակարանին մէկ կողմը բանտ դրաւ ու ամէն կերպով աշխատեցաւ որ զանիկա իր հաստատութենէն խախտէ: Սպառնալիք, քաղցր խօսքեր, պատիւ, պարգեւ, երաժշտութիւն, ամէնն ալ իրար յաջորդեցին, բայց ամէնն ալ դերեւ ելան: Արամեան դիւցազնուհին անդրդուելի կը կենար, ամէն հրապուրիչ բաներն ու խոստումները կ'արհամարհէր ու կը բաղձար որ իր ծնողացը տարուի: Երբ որ աս վիճակին մէջ էր, գիշեր մը առանց քնանալու եւ հառաչանքով կեցած առենը լսեց որ դուրսը իրեններէն մէկը կ'երգէ: Ասով հոգի առաւ, պարսպին պատուհանը բացաւ, վանդակը (խաֆէսը) վերցուց ու անանկ բարձր պատուհանէն վար ու խրամէն (խէնտէկէն) անդին ցատքեց որ ծնողացը տունը փախչի, բայց հաշմեցաւ (սախաթէցաւ) մնաց: Պարսիկները հասան, զինքը բռնեցին ու Հիւսէյին Խանին առջեւը հանեցին, որն որ անոր արիութեան ու հաստատութեանը վրայ զարմանալով՝ շատ պարգեւներ տուաւ ու ծնողացը խաւրեց:

Իրիկունները երբոր օդը քիչ մը կը զովանար, Երիւանի բերդին հրամանատար Պիլ գնդապետը

ղմեղ իր գեղեցիկ ու Ջրարբի բուրաստանը կը տանէր, որն որ Զէնկի գետին աջ կողմն է ։ Գետին վրայ ձգուած է հաստատուն քարաշէն կամուրջ մը, որն որ դարերէ ի վեր ան սրընթաց ու շատ անգամ ա–ճող Զէնկիին կը դիմանայ ։ Ժողովրդեան աւանդու–թիւնը ասիկա, ինչպէս նաեւ ուրիշ քանի մը շքեղ ու տեւական գործքերը՝ Հռոմայեցւոցմէ շինուած կը համարի ։ Մենք իրիկունները հոս կը նստէինք, ու տա՝ մտադրութեան արժանի երկրին ժողովրդեանը, սովորութեանցը, վիճակին ու նոր պատմութեանը վրայ օգտակար խօսակցութիւններով ժամանակնիս կ'անցընէինք ։ Ասիկա ինծի անմոռաց պիտի ըլլայ ։

Երիւան քաղաքին բնակչացը թիւը 11 մինչեւ 12 հազար կը հասնի, որուն մեծ մասը Հայ է ։ Ռուսե–րէն զատ Եւրոպացի բնակիչ չկայ ։ Իսկ գեղերու մէջ Մահմետականներն աւելի կ'երեւան ։ Ռուսաց Երիւան գաւառին տիրելու ատենը՝ բնակչաց հազիւ թէ ե–րեքին մէկը Հայազգի էր, բայց Ատրպատականէն եւ ուրիշ կողմերէն Հայոց բազմութիւն հոս գալով՝ եւ ասոր հակառակ մահմետական Թաթարները մօտի–նակ Պարսկի գաւառները փախչելով՝ քրիստոնէից թիւը շատցաւ ։ Թէպէտ հիմա Ռուսի կառավարու–թիւնը թող չտար որ ուզողն ելլէ երթայ, բայց սահմաններու պահպանութիւնը կատարեալ չըլլալով՝ եւ միանգամայն սորկի զօրութեանց՝ Թաթարներէն շատ անձինք երկրէն հեռանալու միջոցը կը գտնեն ։ Թաթարներուն երթալուն պատճառը կրկին է, նախ՝ որ Ռուսաց դէմ կրօնական ատելութիւն մ'ունին, եւ երկրորդ՝ որ ժանտախտի զգուշութեան համար շատ նեղութիւն կը կրեն ։ Երբ որ Թաթարներու գեղի մը մէջ ժանտախտ կը ծագի կամ շատ անգամ միայն աս պատրուակաւ՝ գեղապետին հրամանաւ գեղը խիստ կը պաշարուի, եւ ժանտախտի ընդունակ ե–ղած նիւթերը կրակ կը ձգուին ։ Այսպէս է որ կայսե–

րական հրովարտակ մը տրուած բաներուն տեղ զուտ ստակով հատուցում կը հրամայէ, բայց սա ստակը պաշտօնատէրներուն գրպանը կը մնայ:

«Նոյն իսկ Ռուս պաշտօնաւորները խոստովանեցան որ Երեւան նահանգին աղքատութիւնն ու խեղճութիւնը տարուէ տարի երթալով կ'աւելնայ: Ճարտարութիւն չկայ. երկրին բերքն ու պաճարներուն ծնունդը հազիւ թէ տեղացւոց կը բաւէ: Ռուսի արքունի գանձն ու հոն հարստացած պաշտօնատէրներին ասանկ աղքատ երկրէ տարուէ տարի կէս միլիոնէն աւելի արծաթ ռուպլի կ'առնեն, եւ ասոր տեղը բանող կամ լցընող բան մը չիդար: Երկրէն դուրս խրկելու ապրանք չկայ որ բնակիչները անով շահին: Յառաջագոյն դէթ աս կար որ Պարսկաստանի կողմերէն ապրանքներ առնելով եւ ուրիշ տեղեր յուղարկելով կրնային շահել. իսկ հիմա Ռուսիոյ բարձր մաքսի կարգադրութիւնը մինչեւ Երասխ տարածուեցաւ, որպէս զի դրսէն ապրանք չմտնելով՝ բնակիչները ստիպուին Ռուսաստանի ներքին կողմերէն ու մանաւանդ Մոսկուայէն ապրանք բերել տալ, որով Ռուսաց գործատուններն ալ աղէկ վաստակ ունենան: Աս բանս երբեմնից պաշտօնեայ. Կանկրին մտածած էր, բայց իր յոյսը բոլորովին պարապի ելաւ. վասն զի ասով բնակչաց շահաւոր բարեկեցութիւնը կործանեցաւ, երկրին վրայ երկարատեւ վէրք մը դրուեցաւ եւ Ռուսաստանի ալ օգուտ մը չեղաւ, որովհետեւ աս աստիճանի աղքատութեան մէջ ինկած ժողովուրդը ինչպէս կրնայ Մոսկուայէն զարդի ապրանք բերել տալ: Խեղճ տեղացիք իրենց շահաւոր առուտուրը կորսնցընելէն ետքը՝ ցաւալի կերպով մը երկայն ատեն կուսակալներուն ձեռքովը կողոպտուեցան ու կեղեքուեցան: Ամէն մէկ կուսակալ հոս թագաւորի պէս կ'ապրէր. իրենց զուտ դրամական շահերէն զատ՝ ծառայից բազմութիւն,

արծաթեղէն սպասներ, եւ ուրիշ ամէն բան անեղծ էր, որոնց բոլորին համար ժողովուրդը կը վճարէր։ Բայց ատոնց մէջ ոչ Բեդրոսպուրկի կառավարութիւնը, ոչ Տփղիս նստող ընդհանուր կուսակալը եւ ոչ ալ բնաւ կայսրը յանցանք մ'ունին։ Ուրիշ ամէն անօրէնութիւններէն աւելի դժուարին է Ռուսաստանի մէջ հեռաւոր գաւառներուն վիճակին վրայ ճշմարիտ տեղեկութիւն առնել։ Պաշտօնատէրները ձեռքերնին անհամար միջոցներ ունենալով՝ ամէն կ'արգելեն ու երբեք չեն թողուր որ Տփղիս կամ Բեդրոսպուրկ իրենց վրայ լուր մը հասնի։

Այսպէս հաստատութեամբ ու անկեղծութեամբ կ'ուզէր որ Կովկասեան գաւառներուն աղէկ կառավարութիւն մը տայ. եւ աս վախճանաւ նախ Հան ատենակալը, ետքէն Չեռնիշեւ իշխանն ու Պ. Փօդէնը խաւրեց, որ երթան երկրին վիճակը ճշդքննեն։ Պ. Հանին դիտաւորութիւնը շատ պարկեշտ էր. վասն զի աս ազատամիտ ու արդարասէր մարդը դիտեց որ ժողովուրդը զինուորական խիստ կառավարութեան տակ սաստիկ նեղութիւն կը կրէ. ամէն միջոցներն ուզելով՝ քաղաքական կառավարութիւն մը ու քաղաքական պաշտօնատէրներ դրաւ, բայց նոյն ատենն ալ դժբախտութեամբ ժողովուրդը քիչ թոշակ ունեցող ստորին պաշտօնատարներուն կաշառակերութեանը, արծաթասիրութեանն ու հաճոյքը մատնուեցաւ։ Անկէց զատ՝ շատ անգամ կը պատահի որ Ռուսաստանի մէջ վատանուն, յանցաւոր կամ անճարակ մարդիկ պաշտօններնէն հանելով՝ իրենք զիրենք ծածկելու համար կ'առաջարկեն որ Կովկասեան գաւառներուն մէջ իրենց պաշտօն մը տրուի։ Ռուսաստանի կառավարութիւնը արդէն հնատեղուանքը խորհելու շատ մարդ չգտնելով՝ ատանկ ինք զինքը առաջարկող մարդ մը պատահի նէ, անմիջապէս կ'ընդունի ու Կովկասեան գաւառները կը խաւրէ։

Անանկ մարդիկներէն ինչ բարի բան կրնայ յուսացուիլ: Կաշառակերութիւնը Ռուս պաշտօնատէրներուն մէջ այնպէս արմատացած է որ անիկա խլելու համար յանցաւորը միայն պաշտօնէն վար առնելով գոհ ըլլալու չէ, հապա ուրիշ դէպքերու մէջ եղածին պէս հոս ալ անաչառ ու խիստ պատժելու է, այսինքն՝ կաշառակեր պաշտօնատարին մեղքով վաստըկած ինչքը յարքունիս գրաւել, զինքը բանտարկել, Սիպերիա քշել եւայլն: Հոն առեւտրականին կարգադրութիւնը շատ պատուական կ'ըլլար, եթէ Երիւան նահանգին գաւառներուն փոյթ տանելով՝ անոնց մէջ նոյն իսկ տեղացիներուն տղաքը կրթուէին ու անոնցմէ պաշտօնատէրներ դրուէին: Բայց անիկա հոգացող չկար. դատաւորները երեսի վրայ մնացած էին. անանկ խելացի ազգի մէջ տգիտութիւնը տիրած էր: Վերջապէս Նայտհարդ զօրապետն ու Վորոնցով իշխանը կառավարած տեղերնուն վրայ հայրական խնամք մ'ունենալով սկսան աս բանիս փոյթ տանիլ որ դատաւորները կարգի գնեն, եւ ինչպէս ճամբայ ելլելու ատենս ըսեցի, Պր. Աբովեանն ալ Երիւանի դպրոցին կարգավար դրին: Աս հոգաբարձութիւնները շարունակուելու որ ըլլան, կը յուսացուի որ ատենէ մը ետքը երկրին վիճակը քիչ մը աղէկնալու կը սկսի ու ժողովուրդը իր խեղճութենէն քիչ մը հոգի կ'առնէ:

Քանի որ Երիւան էի, ամէն առտու կանուխ երկրին բոլորտիքը զննելու կ'երթայի, բայց կէս օրուան մօտ տուն կը դառնայի, որովհետեւ հոսատեղաց տաքը տանելի բան չէ: Զգուշութիւն չընողը այնպիսի տենդի (սըթմայի) մը կը հանդիպի որ բժշկուելէն ետքն ալ մարդուս վրայ շատ տկարութիւն ու մարսողութեան դժուարութիւն կը մնայ: Սեւանայ ծովէն քով Մայիսի կէսէն վերջը օրհասարակին տաքութիւնը Ռէոմիւրի ջերմաչափին վրայ 12—14 աս-

աստիճան էր. իսկ Երեւան՝ որ անկից օրուան մը ճամբայ հեռու է, Մայիսի 24ին շուքի մէջ Ռէօմիւրի 24 աստիճան էր, եւ արեւու մէջ 40°։ Յունիսի սկիզբները տաքութիւնն այնպէս սաստկացաւ որ կէսօրէն յառաջ ժամը 11էն մինչեւ իրիկուան 4 դուրս ելլելու մէկը չէր համարձակեր։ Շատ Ռուս պաշտօնականներ հաստատեցին որ երբեմն բերդին ներսի դին շուքի մէջ տաքութիւնը 38° Ռ. եղած է։ Պր. Կոխ՝ Երեւանի ամառուան տաքութեանն ամենէն բարձր աստիճանը կը դնէ 35° Ռ.։ Ցրտութիւնն ալ նոյնպէս է։ Կիլ գնդապետը այնպէս կը յիշէր որ Յունուարի մէջ Ռէօմիւրի 24 աստիճան ցրտութիւն եղած ըլլայ. իսկ Տիւպուա 26 աստիճանի ցրտութիւն ալ կը յիշատակէ։ Ամառուան տօթագին ժամանակը հոն ամէն պաշտօնատէրներն ու զինուորական մեծերը Երեւանէն կէս օր հեռու գեղ մը կ՚երթան, ու հոն դալար բոյսերու եւ կարկաջահոս վտակներու քով կը զբօսնուն։

Երեւանին շրջակայ մօտաւոր տեղերը շատ չոր ու անջրդի են, բայց հոստեղաց մարդիկներուն փոյթը բնութեան օգնած է։ Ասիացիներէն զատ՝ գուցէ բոլոր աշխարհքիս վրայ անանկ ժողովուրդ մը չկայ որ երկիրը պտղաբեր ընելու համար ջուրն այնպէս աղէկ գործածէ, ինչպէս Հայերն ու Պարսիկները կ՚ընեն։ Ասիայիս տեղուանքը, ուր որ երկիրը խիստ փոքր բանն ալ ինք իրմէ չի բուսցըներ, աս ազգերը զարմանալի աշխատասիրութեամբ բերքի մշակութեան մը հասցուցած են. ինծի կ՚երեւայ որ աս ծիւղին մէջ Եւրոպայի բոլոր ազգերը նոյն երկու ազգէն օրինակ կրնան առնել։ Արտերուն չափաւոր առատ հունձքը միայն արուեստական ոռոգման պտուղն է։ Ուր որ գետակ մը կամ վտակ մը լեռնէն դէպ ի Երասխ կը վազէ, երկիրը ջրելու համար հազարաւոր փոսերու մէջ կ՚առնուի։ Հասարակօրէն աս գետակները՝ որ

տուտա կը բերեն, եւ իրենց ճամբուն վրայ հալած ձիւներուն ու պատառհած աղբիւրներուն ջուրովը շատ կը մեծնան, Երասխ գետը մտած աներերնին պղտորէ ու աւազաջուր են, որովհետեւ մինչեւ որ հոն հասանին նէ, ամէն դի արուեստական ջրանցներէն քալելով՝ ծարաւոտ երկիրը կը ջրեն։ Իսկ քանի մը գետակներէն (ինչպէս է Ապարանի յորդառատ վտակը) եւ ոչ կաթիլ մը Երասխ կը մտնէ. իր բոլոր ջուրը պարտէզներու եւ արտերու կ'առնուի։ Ամէն մէկ վտակը, ամէն մէկ աղբիւրը, ամէն մէկ լիճը սքանչելի եղանակաւ մը հողը գործածել գիտէ։ Երեւանայ գեղեցիկ պարտէզները առանկ ջանքով յառաջ եկած են։ Հասարակաց պտուղներուն մէջ երեւելի է խաղող, խնձոր ու թութ։ Քանի մը տեղ արդտուէնջ լսեցի որ Ռուսերը ջրանցներուն այնչափ խնամ չեն տանիր, ուր որ Պարսիկները թէպէտ բռնաթիւններ ալ կ'ընէին, բայց ջրանցներուն պահպանութեան համար անշէջ եռանդ մ'ունէին։

Ինչպէս յառաջագոյն յիշատակեցի, Հեռուանց Երիւանի չորս կողմը պատող լեռները անոր ահեղ տեսք մը կու տան։ Քաղքին հարաւային արեւմտեան դին 50—60 ուղղակի մղոնի հեռաւորութեամբ կայ Մասիս լեռը. իսկ հիւսիսային արեւմտեան կողմը գրեթէ նոյնչափ հեռու է Արագած լեռը։ Արեւելեան դին Աղմանկան հրաբուխ լեռներուն ձերմակ կատարն ու ցից կողերը կ'երեւան։ Մեծն Մասիս երեք ընդարձակ տէրութիւններուն (Ռուսաստանի, Պարսկաստանի ու Տաճկաստանի) սահմանն է. շատ անգամ կը պատահի որ ատոր քովերը պտըտող թափառական Քիւրտերը տարւոյ մը մէջ երեք տէրութեան հպատակ կ'ըլլան։ Բարձրին չափածին նայելով՝ Մեծն Մասիս Մեծ ծովէն երեսէն 16,254 ոտնաչափ եւ Երասխի դաշտէն 13,530 ոտնաչափ բարձր է։ Կատարագոյնը կլնայ երեւակայել թէ սա լայնատարած դաշտին վրայ



Է Ջ Մ Ի Ա Ծ Ի Ն

կուած ըլլալով՝ բաւական բերրի է։ Ինչպէս Պարսկաստանի շոր դաշտերուն վրայ, նոյնպէս հոս ալ խոտեղէն բոյսերը քիչ են։ Դաշտին տեսքը տխուր ու միօրինակ[1] կ՚ըլլար, եթէ հեռուանց ան բարձր ու երկնաբերձ հրաբուխ լեռները չըլլային, որոնց ծայրը երբեմն կրակով կարմրցած ու լուսաւորուած էր, իսկ հիմակ ահագին ու մշտնջենաւոր սառոյցներով ծածկուած է։ Երասխայ դաշտը պատող ատ հսկայ լեռներուն մէջ Մասիս ամենէն ահեղն ու շքեղն է։ Ճամբորդութեանս բուն վախճանը այս սուրբ լեռն ըլլալով՝ զանիկա տեսնելուս վրայ շատ կ՚ուրախանայի, ու Գարապաղեան նժուգիս վրայ յառաջ կ՚երթայի։ Նոյն օրը պայծառ ու գեղեցիկ օր մըն էր, բայց աւելի սաստիկ ամառուան քան թէ գարնան կը նմանէր։ Նախընթաց օրը ջերմաչափի վրայ 24 աստիճանի տաքութիւն կար շքյ մէջ, ու 40° արեւուն մէջ։ Սակայն մեր ճամբորդութեան ատեն օդն այնչափ տօթագին չէր, վասն զի Արագած լերան ճղճղկէն ու ձիւնապատ կատարէն անոյշ հով մը կը փչէր եւ արեւուն տապը քիչ մը կը բարեխառնէր, որով մեր՝ տաճիկ աղէկ ձիերուն վրայ ըրած ճամբորդութիւննիս ալ մեզի մեծ հաճութիւն ու թեթեւութիւն կու տար։

Էջմիածին Երասխայ դաշտին արեւելեան կողմն է, եւ չափաւոր հեռաւոր տեղէ մը կը տեսնուի։ Ես ձիս վազցընելով՝ ընկերներէս յառաջ գացի, ու երկու մեծ վանքի առջեւէն անցնելէն ետքը՝ պարըսպապատ կաթուղիկոսարանը հասայ, որն որ Վաղարշապատ գեղէն քովն է։ Կաթուղիկոսարանին եկեղեցին Տփղիսի Հայոց եկեղեցիներուն շատ կը նմանի։ Եկեղեցւոյն վրայի գմբէթը կամ կաթողիկէն գնտաձեւ կամար չէ, հապա բրգաձեւ ու սրածայր։ Վաղարշապատը՝ որն որ ժամանակ մը բոլոր Հայաս-

[1] Monotone.

տանի հռչակաւոր մայրաքաղաքն էր, հիմակ անշուք գեղ մը եղած է։ Կաթուղիկոսարանին չորս կողմն եղած դաշտը շատ ծառ չունի։ Ջուրն արուեստական ճամբաներով Արարատ գետակէն կը բերուի. եթէ ժիր մարդիկներու ձեռքով աս ջուրը հոս չբերուէր, ամառուան արեւը բոլոր գետինը կ'այրէր ու կը տոչորէր։ Էջմիածին երեք գլխաւոր շէնք կայ, Ա. Կաթուղիկոսարան, Բ. Հիւրանոց՝ որ Ղազարապատ կ'անուանուի եւ ուխտաւորաց բնակութեան կը գործածուի, ու Գ. Վաճառանոց՝ որն որ Քէրվան Սէրայ կը կոչուի. ասիկա գրեթէ Էջմիածնի համբարանոցն է, որովհետեւ կերակրեղէններն ու զգեստեղէնները հոսկից կը հոգացուին կամ կը գնուին. Եկեղեցւոյն մենաստանն ալ հոս է։ Եկեղեցին քառակուսի ու խաչաձեւ է, մէջտեղը չորս սիւն կայ, որոնց վրայ հաստատուած է կաթուղիկէն։ Ժամը երեք դուռ ունի, գլխաւորը Լուսաւորչի դուռ կ'ըսուի։ Հի[illegible]կուան ճակատը հինէն շատ տարբեր եւ զանազան ճարտարապետական ձեւերու միաւորութիւն մըն է, որովհետեւ այլեւայլ ժամանակ շատ նորոգութիւններ եղած են, բայց միշտ Հայոց սեպհական ճաշակը կը տիրէ, թէպէտեւ Տիւպուա քաջ հնագէտը հոս յունական ճարտարապետութեան հետքը կը տեսնէ, եւ ասկից ցուցընել կ'ուզէ որ աս շէնքը ստուգիւ շատ հին ու Տրդատայ ժամանակէն է, որն որ իբրեւ շինուածատէր թագաւոր յունական ճարտարապետութիւնը Հայաստան բերել կ'ուզէր։ Աս մտքով Գառնի գեղը յոնիական ոճով գեղեցիկ պալատը շինեց, որ գետնաշարժէ կործանած, բայց ամբողջ մնացած է. ասիկա կը կոչուի Գահ Տրդատայ (Թախթի Տրտատ) ու դեռ չէ քննուած։ Էջմիածնէն ուրիշ եկեղեցիներու մէջ չիտեսնուիր որ հին Հայ ճարտարապետները Յունաց նմանել ուզած ըլլան։ Թէպէտ Էջմիածնայ մէջ շատ նորոգութիւններ

ու յաւելուածներ եղած են, բայց բուն հին շէնքը միշտ կը մնայ քրիստոնէական կանուխ հնութեան յարգի յիշատակարան մը։ Եկեղեցւոյն վրայ ամէն տեղ գրերով ծածկուած է, նոյն իսկ զանգակներուն վրայ լեցուն գիր է։ Ցիւպռա եւ Պոռէ՝ երկու Նոր գիտնական ճամբորդները եկեղեցւոյն երեսէն խել մը յունարէն արձանագիրներ օրինակեցին, որոնք քրիստոնէութեան առաջին դարերուն կը վերաբերին։

Տաւեռնիէ, Շարտէն, Դուռնըֆոր Գաղղիացի ճամբորդներին՝ որ 1660ին մօտ աս հռչակաւոր տեղը պտտեցան՝ Էջմիածինը հիմնկուրնէ շատ աւելի գեղեցիկ ու ծաղկեալ կը ստորագրեն։ Նոյն ատենը վաճառականաց կարաւանները աս կողմերէն անցնելով՝ երկրին հարստութիւն կը բերէին, եւ ընչաւէտ Հայ վաճառականները առատ ընծաներ կու տային։ Տաւեռնիէ զարմացաւ մնաց այն մեծագին գանձերուն վրայ, որոնց Պարսիկները ու մէկալ այլազգիները դեռ ձեռք չէին դպցուցեր։ Եկեղեցին վերջին աստիճանի զարդարուած էր։ Կաթողիկոսը Պր. Տաւեռնիէին ու իր ուղեկիցներուն պատուոյն՝ ցլամարտութիւն մ'ընել տուաւ, որուն մէջ ութ գոմէշ պատերազմելու գրգռուեցան եւ երկուքն անմիջապէս ինկան մեռան։ Իսկ Դուռնըֆոր եկեղեցւոյ զարդերուն, երկրին մշակութեանն ու պտղաբերութեան վրայ մեծ զարմանքով կը գրէ. Մենաստանին բուրաստանը (ծաղկի պարտէզը) շահոքրամներով (կարանֆիլներով) ու անթառամ ծաղկով (կոռինֆէ ըմէկէջով) լեցուն էր, կ'ըսէ, ու հոս տեղս Դրախտ կը կանչէ. բայց հիմա քանի մը տեսակ հասարակ կանանչեղէններէ զատ՝ ուրիշ բան չիտեսնուիր։ Պաղչի ծառերն են գլխաւորաբար թթենի ու ծիրանենի։ Նոյնպէս եկեղեցւոյն հին զարդերը չկան։ Կաթողիկոսին խուցն ալ հիմա պարզ է. հոս Աստուածածնայ մետաքսով բանուած պատկերը կայ, որն որ

Էջմիածնայ գրատունը ասոնց վրայ, ինչպէս նաեւ Հայաստանի պատմական կեդրոնն եղող Արարատայ երկրին վրայ շատ անգին աղբիւրներ կրնայ պահած ըլլալ, զորոնք մէկ հայագէտ մը աղէկ քննելու ըլլայ նէ, կը յուսացուի որ իր աշխատութեան առատ վարձք գտնէ։ Աս գրքերը յառաջագոյն փոշիներու եւ մութ ծակերու մէջ մնացած էին, գուցէ ասոր համար որ յափշտակող Պարսիկներու եւ Քիւրտերու ձեռքէն ազատին։ Երեւան նահանգը Ռուսաց հպատակ ըլլալէն ետքը, ու յափշտակութեան վախ չըլլալով՝ գրքերուն առանձին սենեակ մը որոշուեցաւ։ Իսկզբան հոս ամէն գրաւորական գանձերու հարուստ հաւաքում մը յուսացին, որովհետեւ Հռոմայեցիք, Բիւզանդացիք հոստեղաց հետ ուղղակի առեւտուր ունեցան. Նոյնպէս Արաբացիք, Վիրք եւ Մոնղոլք իրենց գրագիտութեան ամենէն պայծառ ժամանակը հոս գտնուեցան, որոնց մէջ Արարատեան մատենադարանը կրցաւ ինք զինքը պահել։ Դարձեալ սեպաձեւ գրերը կարդալու բանալիքը, Ասիական ազգերու լեզուներն ու պատմութիւնները հոս կը փնտռուէին։ Աշխարհագրաց Թագաւոր Ռիտտեր կ'ըսէ որ "Արեւելեան ազգաց վաղեմիներուն առենը՝ աս քրիստոնէական ուսմանց ապաստանարանին մէջ գիտութիւնները շարունակ մշակուելով՝ բոլոր տիեզերական պատմութեան տարեգրութիւնները ուրիշ ամէն տեղերէ աւելի դիւրութեամբ հոս կրնային ժողվուիլ,,։ Առաջուան ճամբորդները հոստեղաց գրքերուն թիւը 30,000 դրին. Պր. Եւգինէոս Պոռէ՝ 5—6000։ Գրատան ցանկը 1840ին ռուսերէն լեզուաւ առնուեցաւ. ասոր մէջ կայ 635 գիրք, 462 հատը հայերէն, մէկալները օտար լեզուաւ։ Ռուսերուն առած ցանկը 11 դաս բաժնուած է. Ա. Ս. Գիրք եւ մեկնութիւնք՝ 83 հատ։ Բ. Աստուածաբանական գրուածք՝ 20։ Գ. Բանաստեղծական՝ 8։ Դ. Արարողութեանց գրքեր՝ 33։

Ե. Պատմութիւն ու աշխարհագրութիւն՝ 86: Զ. Հայերէն լեզուի դասական (classique) հեղինակներ՝ 34: Է. Քարոզք եւ ճառք՝ 53: Ը. Եկեղեցւոյ Հարք՝ 105: Թ. Վանական գրքեր՝ 4: Ժ. Հաւատոյ մասանց վրայ՝ 14: ԺԱ. Աղօթագիրք՝ 22: Ամենէն աւելի անծանօթ գրքերը հինգերորդ դարին մէջն են, ինչպէս Աղուաններուն սկզբանը պատմութիւն՝ Թ. դարէն, Պաղեստինի պատմութիւն. Մաթուսաղա եպիսկոպոսին Հայաստանի աշխարհագրութիւնը՝ եօթներորդ դարէն եւայլն: Հոստեղաց դրատնէն չէ թէ միայն Հայոց, հապա նաեւ անոնց հետ կապակցութիւն ունեցող մերձաւոր ազգերուն վրայ շատ տեղեկութիւններ կրնան ելլել: Ինծի կ'երեւայ որ Ռուսաց առած ցանկին մէջ դրատան շատ գրքերը չկան, ուստի եւ բոլորին գումարը 2000 կը սեպեմ. աւելի ալ կրնայ ըլլալ, բայց ստուգիւ ասկից պակաս չէ:

Մեր հասնելէն քիչ մը յառաջ նոր կաթուղիկոսին ընտրութիւնն եղած լմնցած էր: Կայսեր կողմանէ տէրութեան խորհրդական Պ. Շելաուքին խաբուած էր որ կաթուղիկոսը ընտրող ժողովքին գահերէց նստի: Ռուսաստան Պարսից ձեռքէն Հայաստանի քանի մը գաւառներն առած ատեն բարակ դիտաւորութիւն մ'ունէր: Ասանք գուցէ զարմացան որ Պասքեւիչ նոյն ժամանակը շատ զիջողութիւն ցուցնելով Պարսկաստանի Ատրպատականն, Գիլանն ու Մազանդարան երբի նահանգներն ալ չպահանջեց, բայց Ռուսաստանի բուն դիտումն էր Էջմիածին առնել, որպէս զի ինչպէս հոնտեղաց երկրին վրայ մարմնաւորապէս կը տիրէ նէ, նոյնպէս կաթուղիկոսին հոգեւոր ցէնքին վրայ ալ վարպետութեամբ ուզած կարգադրութիւններն ընելով՝ ամէն տեղերուն եւ մանաւանդ Ասիայի Հայոց մէջ կամաց կամաց իր ազդեցութիւնը հաստատէ եւ անոնց վրայ բարոյապէս տիրէ: Հայերն ի սկզբան Մոսկովին վրայ քիչ մը ան-

վստահութիւն ունեցան կասկածելով որ զիրենք ռուսական պաշտօնանք ընդունելու կը ստիպէ, բայց Ռուսաստան՝ որ իր եկեղեցիէն տարբեր եղած կրօններուն հետ այնչափ խնայելով չէվարուիր, Հայոց նկատմամբ մեծ խոհեմութիւն ու թոյլտուութիւն բանեցուց եւ ամէն կերպով անոնց սիրտը վաստըկելու ջանաց, միտքը դնելով որ ինք Էջմիածնի ձեռքով շատ բան կրնայ շահիլ։ Այս վախճանաւ Ռուսաստան նայեցաւ որ կաթուղիկոսի ընտրութեան առեն բոլոր Տաճկաստանի եւ Պարսկաստանի Հայերն ալ երեսփոխան խաւրեն ու անոր իշխանութիւնը ճանչնան, թէպէտ ինք իր կաթուղիկոսին այսինքն Կոստանդնուպոլսի Յոյն պատրիարքին չիհնազանդիր, ան պատճառաւ որ ուրիշ ազգութեան հպատակ է։

Ընտրութեան ժողովը 3 օր տեւեց, եւ ամենուն միաբան համաձայնութեամբը Ներսէս արքեպիսկոպոսն ընտրուեցաւ, որն որ 16 տարի Տփղիսով քաղքին արքեպիսկոպոսն եղած էր։ Ինք գրեթէ Եփրեմ կաթուղիկոսէն ետքը կ'ընտրուէր, բայց դէպք մը պատահելով՝ Ռուսի կառավարութիւնը զինքը հոնկից հեռացուց։ Բասգեւիչ Պարսից հետ պատերազմած ժամանակները կարճ զինադուլ մը դրաւ. ու կը պահէր որ Ռուսաստանի ներքին կողմերէն իրեն օգնական զօրք գայ, որովհետեւ ունեցած գնդերովը Դավրէժին վրայ երթալու չէր յանդգներ։ Պարսիկ զօրաց մէկ մասը եւ գլխաւորաբար Թաթարներու եւ Քիւրտերու խուժան մը ուրիշ կողմանէ գալով՝ կը ջանային որ վանքը մտնելու միջոց մը գտնեն։ Այս վայրենիներէն պաշարուելով եւ վերջի աստիճանի նեղութեան մէջ ըլլալով՝ Ներսէս արքեպիսկոպոսը Ռուս զօրաց գնդապետի մը ծածուկ մարդ խաւրեց, վանքին վիճակը հասկցուց եւ օգնութիւն խնդրեց։ Այս գնդապետը՝ որ քանի մը հազար զօրքով Էջմիածնէ օր մը հեռու կը կենար՝ Հայ էր, եւ Ներսէս արքեպիս-

կուպոնին վրայ որդիական յարգութիւն ունէր, անոր համար ալ ատանկ տառապանքի մէջ անոր յորդորանքին դէմ չկրցաւ գնել, եւ աճապարելով օգնութեան եկաւ, թէպէտ Բասքեւիչ սաստիկ խիստ հրաման տուած էր որ տեղէն չշարժի: Անոր գալու ատեն Էջմիածին պաշարող Պարսից նորէն օգնական գնդեր հասան, այնպէս որ Հայ գնդապետին հետ եկող Ռուս զօրքին հնգապատիկն էին Պարսիկները: Երբոր երկու կողմերը գիտցան գիշերով եկան զարնուեցան, Ռուսները յաղթուեցան, որուն յանցանքը Ներսէս արքեպիսկոպոսին վրայ դրուեցաւ, իբր թէ իր ազդեցութեամբը Հայ գնդապետին անհնազանդութիւն ընել տուած ըլլայ, ասոր համար կայսրը հրաման խաւրեց որ Էջմիածնէն ելլէ ու Պուճաղ Թաթարի Քիշնով քաղաքին երթայ իբրեւ Հնտեղաց արքեպիսկոպոս: Հոն 16 տարի կեցաւ. բայց ընտրութեան ատեն ժողովականք կայսեր անհաճութեան միտ չդնելով՝ զինք աթոռածնին ընտրեցին: Կայսրը զիջաւ, ընտրութիւնը հաստատեց, իրեն բարեկամութիւն ալ ցուցուց եւ Ս. Աննայի նշանը տալով՝ Էջմիածին խաւրեց:

Թէպէտ Էջմիածին շատ դարերէ ի վեր զանազան նեղութիւններ կրած էր, բայց կ'երեւայ որ ամենէն աւելի վշտալից ժամանակը անցեալ դարուն վերջերին եղաւ, երբ որ Ռուսները Վրաստան մտնելէն ետքը՝ սկսան կամաց կամաց Երեւանայ դաշտերուն մօտենալ: Պարսիկները տեսնելով որ քրիստոնեայ զօրաւոր տէրութիւն մը երթալով ան կողմերը կը տարածուի, սաստիկ կը տագնային ու կը կատղէին, եւ այնպէս կը սեպէին որ Պարսկաստանի հպատակ Հայերը մատնութիւն ու ապստամբութիւն կ'ընեն: Աս կասկածը գլխաւորաբար Էջմիածնայ քահանայից վրայ էր, եւ նոյն պատճառաւ անոնց աւելի տառապանք կը հասցընէին: Ռուսաց եւ Պարսից մէջ եղած դժուարութեան ատեն քանի մը անգամ՝ բանն

այնչափի հասաւ որ կաթուղիկոսը մէկ քանի քահանաներով Ռուսաց երկիրը փախչելու ստիպուեցաւ։ Այսպէս Միրզա թէպէտ միշտ շողոքորթելով կը ջանար որ Էջմիածնայ եկեղեցականները Պարսկաստանի հետ սիրով կապէ ու անով Հայոց սիրտը շահի, այսու ամենայնիւ Պարսից նախարարները մոլեռանդ[1] ու յափշտակասէր ըլլալով՝ Էջմիածնայ դէմ կատաղութեամբ աղբայ[2] կը կրճտէին։ Վերջապէս սկսան գուշակել որ Երեւանը շուտ կամ ուշ պիտի կորսնցընեն, անոր համար կը մտածէին որ վանքին գանձերը Ռուսաց թող տալու տեղ՝ իրենք ափ ձգեն, եւ իրենց տէրութիւնը չվերջացած՝ ժողովուրդն ու եկեղեցականներն ըստ կարի կապտեն ու կողոպտեն։

Երեւանի վերջին Պարսից կուսակալը թէպէտ չափազանց արծաթասէր էր, սակայն շատ չափաւորութեամբ այլ վարուելու կը ջանար։ Անիկա տարին մէյ մը կաթուղիկոսարանին այցելութեան կ'ելլէր։ Էջմիածնայ եկեղեցականաց համար ալ ժամանակը զարհուրանաց ու տարամութեան ժամանակ էր, բայց ստիպուած էին գէշ խաղին լուրջ երես ընել, եւ նոյն այցելութիւնը իրենց մեծ պատիւ եղածի պէս ցուցընել։ Երբ որ կուսակալը խումբ խումբ բազմութեամբ Երեւանէն ճամբայ կ'ելլէր որ Էջմիածին երթայ, բերդէն ուրախութեան թնդանօթներ կը նետուէին ու ձիաւորներն արշաւելով կու գային որ աւետիս տան, թէպէտ բերած լուրերնին գէշ էր։ Անմիջապէս բոլոր կղերականք իրենց հանդիսական զգեստները հագած՝ կուսակալը դիմաւորելու կ'երթային, ճամբաներուն վրայ ամենէն աղուոր օթոցները կը փռուէին որ Պարսից կուսակալը վրայէն քալէ, ու զանգակները մեկտեղ հնչելով՝ զանիկա կը բարեւէին։ Կաթուղիկոսը վար կ'իջնար ու մենա-

[1] Fanatique. [2] Աղբայ բառը Աղբէր անուանէն ելած երեւալով՝ սա ուղղագրութիւնն աւելի յարմար կը կարծենք։

տանիքին վրան մէջ հիւրը կ'ընդունէր, եւ բոլոր բազմութեամբ ամենէն լաւ սենեակները կը տանէր, ուր պատրաստ կ'ըլլար համադամ խորտիկներով զարդարուած սեղան մը։ Հասարակօրէն Պարսիկ կուսակալը իր հացկատակներուն (դալխասախներուն) գնդին հետ օրերով վանքը կը կենար, առատութեամբ կ'ուտէր կը խմէր, իրեն ու իրեններուն թանկագին ընծաներ կ'առնէր, եւ ան ատեն կ'ելլէր կ'երթար, երբ որ մառանն ու ամբարները կը պարպուէին։ Պարսիկ տղըուկներուն մէկդի քաշուելէն ետքը՝ վանքցիք կը ջանային որ կրած վնասներնուն տեղը լեցընեն, որուն յօժարակամ գործակից կ'ըլլային ուխտաւորներն ու աղքատ գեղացիները։ Բայց մնագրութեան արժանի բանն աս է որ այնպիսի հարըստահարութեանց ատեն՝ վանքին աւելի նպաստ ընող կար, քան թէ հիմակ որ խաղաղութեան մէջ են։ Էջմիածնայ տարեկան մուտքը գրեթէ 16,000 արծաթ ռուպլի է, որն որ գլխաւորաբար Տփղիս ու Երեւան ունեցած խանութներուն վարձքէն կու գայ։ Թէպէտ ուխտաւորաց բազմութիւնը տարուէ տարի կը քիչնայ, սակայն դեռ երեւելի է։ Մասնաւորեն Էջմիածին դառնալու ատեննս մէկ խումբ ուխտաւոր տեսայ, որոնցմէ ոմանք Խազախի զգեստ հագած էին ոմանք ալ Չերքէզի։ Ամէն ուխտաւորները ճամբուն այլեւայլ նեղութիւններէն զատ՝ յաճախ աւազակ Քիւրտերու կը հանդիպին, եւ աս բարբարոսաց ձեռքովը կը կողոպտուին ու շատ անգամ նաեւ կեանքերնին ալ կը կորսնցընեն։

Քանի որ Եւրոպացւոց ազդեցութիւնն արեւելեան կողմերը կը զօրանայ, Ասիայի քրիստոնէից աւելի միտ դնելու ենք, որոնց մէջ Հայազգիներն ամենէն բազմաթիւ ու ամենէն նշանաւոր կը գտնենք։ Ասոր համար անոնց վրայ եղած փոքր ու հատակոտոր ծանօթութիւններն ալ Եւրոպացւոց շատ սիրելի կ'ըլլան։

Հայկական ազգայնութիւնը պահողները միայն եկեղեցականներն էին։ Հայերը թէպէտ իրենց հայրենական երկիրը կը սիրեն ու կը պաշտեն, բայց շատ անգամ հոնկից ելլելու ստիպուելով՝ միայն անոնք չէր կրնար իրենց ազգայնութիւնը պահել, նոյնպէս իրենց լեզուն ուրիշ երկիրներու մէջ օտար լեզուներու հետ խառնուելով եւ երբեմն բոլորովին մոռցուելով՝ մինակ բաւական չէր ըլլար Հայոց ազգայնութիւնը պահել։ Ուստի միայն վանական եկեղեցականներն էին որ ազգայնութիւնը բռնեցին ու կենդանի պահեցին եւ Հայերէն գրուածներ հրատարակելով՝ Հայոց հին ու նոր ժողովրդի լեզուն զարձեալ ծաղկեցուցին։

Հայոց կրօնական միութիւնը մինչեւ հիմա չէ թէ միայն չյաջողեցաւ, հապա նաեւ շատ անգամ խռովու հետ եւ ոչ քիչ մը հալածուեցան։ Ասիոյ ներքին գիւղերը, ուր որ գիտութեան բարերար ճառագայթները դեռ չեն թափանցեր, երկու կողմանց մէջ անհաշտ թշնամութիւն մը կը տեւէ։ Երկու կողմն ալ հաստատապէս Հայազգի է, երկուքն ալ մի եւ նոյն արիւնը, մի եւ նոյն պատմութիւնը, մի եւ նոյն լեզուն ունին. ի վերայ այսր ամենայնի մէկ կողմը կաթողիկէ եկեղեցւոյն հետ միաբանեալ ու միւս կողմը դեռ չմիաբանեալ ըլլալուն համար միայն՝ Ասիոյ քանի մը ներքին տեղուանքը իրար կ'ատեն, ու իրարու հետ առուտուր եւ բան գործ ունենալ չեն ուզեր, թէպէտեւ ուրիշ ամենայն ազգաց հետ յաջողութեամբ ու խաղաղութեամբ կ'ապրին ու կը գործեն։ Ասիկա ստուգիկ ողբալի բան է։ Պր. Վաչկենէր Հայաստանի մէկ քանի կողմերը կրօնքէ ու տգիտութենէ յառաջ եկած սաստիկ գժբախտ անհամաձայնութիւնները հանդիպելով՝ սա գրքուն մէջ շատ տխուր ու քանի մը ցաւալի ստորագրութիւններ կ'ընէ։ Մենք ասոնք հաստատելս չենք ուզեր թարգմանել

գիտնալով որ աս խեղճութիւնները գիտութեան տարածման հետ օրէ օր նուազած են ու կը նուազին, եւ հաստատ յուսալով որ այդպէս հոգեւոր ու մարմնաւոր բարիքն աղէկ մշակող մարդիկներուն գործելի ջանքը օր մը պատշաճ եղանակաւ կը կատարուի ու կը պսակուի:

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

Գիտութիւն ու ազգային գաղափար: Բողոքականներուն Հայոց համար բրած ջանքը: Ռուս պաշտօնատարց կեանքը: Կեղեքելու հնարք: Հայաստանի ձիերուն ազնուութիւնը: Երախայ հովուին բերքը: Գիշեր մը Թաթարներու մէջ: Երասխ գետին տարաբաղդութիւնը:

ՊԱՐՈՆ Վակնէր Կովկասի ու Պոնտոսի կողմերը բնակող Հայոց կրօնական միճակը դիտելով՝ ամենուրէն գիտութեան նշմարանք մը չգտներուն վրայ շատ կը ցաւի, եւ միայն՝ գերապատիւ Յովհաննէս Սեղլեան վարդապետը յիշելու տեղն՝ զանիկա գիտուն եւ բարեկիրթ կ'անուանէ ու մեծ հաճութիւն կը ցուցընէ: Դարձեալ՝ շատ կը տհաճի որ ան կողմերուն Հայազգիները Հայրենիք, Ազգային պատիւ, Ազգային լեզու, Ազգասիրութիւն բառերուն վրայ աղէկ ու պայծառ գաղափար չունին, ու աս բաներուն նկատմամբ պատշաճ փոյթը չեն ցուցըներ, ուր որ բոլոր Եւրոպայի ազգերը շարժող, իրենց ազգայնութիւնը կենդանի պահող եւ ամէն յառաջադիմութեան յորդորողը միայն աս վսեմ գաղափարներն են: Բայց, ինչպէս. քիչ մը յառաջ ակնարկեցինք, նոյն բաներն ազգերնուս մէջ օրէ օր շատնալու վրայ են:

Նաանեկ ժամանակ մը, կ'ըսէ Պր. Վակնէր, բողոքականներն (Բրոթէսթանթներն) ալ մտադրութիւններն Հայոց վրայ դարձընելով շատ քարոզիչներ խաւրեցին: Ամերիկացի ու Անգղիացի բողոքականները[1] զա-

[1] Պր. Եւգինէոս Պոռէ (Arménie, երես 52) աս բողոքական քարոզիչներուն բանած ճամբուն վրայ հետեւեալ ծանօթութիւնները կու տայ: Ամերիկայի Միսիոներ

աշխարհաբար թէ՛ գրաբար աղէկ հայերէն սորված էր, ու աւետարանը նոյն տեղաց աշխարհաբար լեզուին թարգմանեց . ու Էջմիածնի դատաստանին տակ ձգեց, բայց չկրցաւ տպել տալ: Աս երեք քարոզիչներուն խօսքերէն սկսան մէկերկու անփորձ մարդիկ շարժիլ ու Հայաստանեայց եկեղեցւոյն բողոքականութեան կերպարանք տալու ջանք ցուցընել, բայց բանը կանուխ իմացուեցաւ ու Կուսակալի ընդհանուր կուսակալ Ռոզէն սեպուհը հրամայեց որ աս բողոքական քարոզիչները անյապաղ նոյն երկրէն ելլեն երթան:

Անկից ետքը Պր. Վակնէր Ռուս պաշտօնատէրներուն Հայաստանի մէջ անցուցած կեանքը ստորագրելու կը սկսի: Էջմիածնի Ռուս կուսակալը Պր. Իւանով մետաքսեայ զգեստներ հագած, իր բազմոցին վրայ հանգչած ու սրտազիւր՝ սեւ ջուր խմած ատենը Պր. Վակնէրին ըսաւ. “Հոս մարդ շատ աքանչելի կ'ապրի, այսու ամենայնիւ մեր (Ռուսաց) մէջ անմիտ ու ապուշ մարդիկ Կուկասեան նահանգները աւազակներու բոյն կը կարծեն, եւ ան կողմերը գացող կուսակալին վրայ կը ցաւին, իբր թէ լեռնէն անդին երթալով՝ քաւարան կամ դժոխք կ'երթայ: Ինծի կ'երեւայ որ մարդ հոս տեղս շատ պատուական կեանք կ'անցընէ, եւ ով որ կը տրտնջէ, էշ է, եւ կամ ապիրատ ու սուտըլոյց: Կը տեսնէք որ իմ տնակս ամէն դիւրութիւնն ունի, սեղանս աղէկ զարդարուած է, ախոռին մէջ 24 հեծնելու ձի ունիմ, որոնց ամէնն ալ գեղեցիկ, պերճ ու արքունական ապաստանի մը արժանի կենդանիներ են. ասկից զատ 20,000 հոգի զիս կը պատուեն ու կը սիրեն„:

Պր. Իւանովին ամէն մէկ խօսքը մէյ մէկ ճշմարտութիւն էր, եւ իր աս անկեղծութիւնն ինծի շատ աւելի հաճոյական եղաւ, քան թէ իր պաշտօնակիցներուն կեղծաւորական տրտունջները, թէպէտեւ

անոնք ալ նոյնպէս փափկութեամբ կ'ապրին ու աւելի առատ մուտք ունին, եւ օտարականաց հաւատացընել կ'ուզեն որ կաւկասեան գաւառներու մէջ կեանք անցընելը իրենց ծանր զոհ մըն է։ Ստուգիւ Պր. Իւանովին տանը մէջ բարեկեցիկ ապրուստի մը հարկաւոր եղածներէն բան մը պակաս չէր. մաքուր կահ կարասի, ազնիւ ու համադամ կերակուրներ, Գաղղիայէն գինի, Հաւանայէն գլանիկ (սիկար), Արաբիայէ, Պարսկաստանէ ու Թուրքաստանէ նմոյշ ձիեր, եւ ի վերայ այսր ամենայնի իր թոշակը 600 թղթեայ ռուպլի կամ 3000 ղուրուշ էր։ Իր պզտիկ տղան Վրացւոց իշխանիկներուն պէս հագուած էր։ Երբ որ Պր. Իւանով իր գաւառակին տուրքը ժողվելու համար դուրս կ'ելլէր, 20 ձիաւոր քովէն կ'երթային, որոնց ամէնն ալ իր տան ծառաներն էին։ Ի՜նչպիսի կեանք. զբօսանք, դիւրակեցութիւն, հարստութիւն, պարունակած պերճութիւն ու ճոխապետական (despotique) իշխանութիւն. եւ այս ամէն բաները 600 թղթեայ ռուպլիով կ'ըլլային (՜°)։ Հայաստանի մէջ Ուրալեան լեռներ չկան. եւ եթէ գետնի տակ Պարսիցմէ թաղուած գանձեր ալ կան նէ, այնպէս պահուած են որ Ռուս կուսակալ մը Արգոսի աչուըներով ալ չիկրնար գտնել։ Ուրեմն այսչափ ծախքերը ուսկի՞ց կ'ըլլան. մէկ քանի օր ետքը գաղտնիքն իմացայ, որովհետեւ ուրիշ պաշտօնատէրի մը տունը տեսայ որ Հայ ու Թաթար գեղացիները գունդագունդ կուգային, մէկը ձի կը բերէր, մէկը ոչխար, մէկալը քօշ, հաւկթով լեցուն կողովներ (սէֆէթներ), կաթ, ճարպ, նաեւ տակ եւ այլն։ Պաշտօնատէրին կնիկը աս ամէն ընծաները կ'ընդունէր արհամարհոտ կերպարանքով մը, եւ միայն բերնէն աս խօսքերը հանեց. “Գոհ եղէք որ տանիկ առած պրծաք. եթէ գիտցուի որ մէջերնիդ ժանտախտ կայ . . .„։ Անոնք ընծայաբերներուն վրայ չանիթի պէս տպաւորութիւն ըրաւ։

Աս դէպքին ես ականատես էի ու նոյն սպառնալից խօսքին իմաստը քիչ մը ետքը տեղեկացայ։ Բեդրոպուրկէն սաստիկ հրաման է եկեր որ ամէն ջանքն ըլլայ Կովկասէն ժանտախտը ջնջելու. ուստի երբ որ ռուս գործակալ մը կ'իմանայ որ գեղի մը մէջ ժանտախտի նշան կամ կասկած կայ, եւ երբեմն ալ միայն սա բաղբաղայով՝ գեղը ժանտախտէ մոլականած կը հրատարակէ եւ իսկոյն պզտի գունդ մը Խազախ կը խաւրէ ու նոյն գեղին բոլորտիքը մէկ երկու ամիս պաշարուած կը մնայ։ Խեղճ բնակիչք նոյն ժամանակուան մէջ չեն կրնար դուրս ելլել ու իրենց երկրագործութեանը զբաղիլ, հասուն հունձքին մէկ մասը կը փտի կը փճանայ ու գեղին ամէն ուտեստը կը հատնի։ Բաց ասկից՝ կը պարտաւորին իրենց ամէն զգեստները, անկողինները ու վերմակները եւ ուրիշ ամէն ժանտընկալ (ժանտախտի ընդունակ) կահերը կրակի մէջ ձգել եւ հազիւ թէ տանին մէկ հատուցում կ'առնուն։ Ասանկով ստորին ռուս գեղապետները սոսկալի մեծ զօրութիւն մ'ունին սա սպառնալիքով որ Գեղը ժանտախտէ վարակուած կը հրատարակեմ։ Գեղի մէջ ըստ պատահման կամ անեդով կամ ուրիշ մէկ հիւանդութեամբ մահ մը տեսնուի նէ, գեղապետը դէպքն իր շահին գործածելով՝ կը սկսի ժանտախտի հրատարակութիւն սպառնալ. նոյն ատեն թշուառ գեղացիք տեսնելով որ տներնին քանդուելու վիճակի մէջ են, անմիջապէս գեղապետին տունը պարգեւներ կը վազցնեն որ անոր սիրտը շահին։ Պր. Իւանով մէկալներէն աւել կը զանազանուէր որ աւելի մարդասիրութեամբ կը վարուէր ու աւելի առատաձեռն էր, անոր համար ժողովրդեան ալ սիրելի կրնար ըլլալ։

Աս մարդուս ձիերուն ալ այցելութիւն մ'ըրի, որոնց ամէնն ալ արաբացի ձիէ մը զատ՝ Ռուսի Հայաստանին Գարապաղ գաւառէն էին։ Բոլոր Հայ-

աստանի մէջ Գարապաղ գաւառին[1] արօտը (չայըր չիմէնը) շատ լաւ ըլլալով՝ տեղւոյն ձիերն ալ շատ աղուոր եւ ուժեղ կ'ըլլան։ Բայց Էջմիածնայ մօտերն ալ յառաջ եկած ձիերուն ցեղը գերազանց է։ Ես Հօտեղաց Հայերէն շատ ձի փորձեցի որ կառքին լծելով՝ Երասխէն անդին անցնիմ, սակայն ատանկ ձիերն Եւրոպա որ ըլլային, բեռնաձիգ գրաստի պէս գործածուելու տեղ՝ դքսի կամ իշխանի մը ապարատանը կը զարդարէին։ Տեղւոյն ձիերուն գինը շատ աժան է. 50 արծաթի ռուպլիով աղուոր ձի մը կրնայ գնուիլ։ Թուրքաստանի ու Արաբիայի ձիերը սուղ են իրենց մէկ քանի յատկութիւններուն եւ քիչ գտնուելնուն համար։ Պր. Իւանով ըսաւ որ իր արաբացի ձիուն 200 մանեթի ոսկի տուող եղեր է. բայց ես այսչափ ծախքի յօժար չեմ. իմ Հայու ձիուս վրայ շատ գոհ էի, որն որ թէպէտ այնպէս թռչնոյ նման չէր սլանար, բայց շուտ, թեթեւ ու հաճոյական ընթացք մ'ունէր։ Իմ վեհ հիւրընկալիս շնորհակալ եղայ ու սիրուն գեղին ալ վերջին բարեւս տուի. եւ երբ որ ծառերուն վրայ տարմահաւները, ճնճղուկները, մեղուաքաղները կամ երաշտահաւներն ու ծիծառները ճնճուելով ու կանչելով արշալոյսը կ'ողջունէին, ես իմ խաղախներովս դէպ Արարատ ճամբայ ելայ։

Երասխայ մեծ դաշտին ան ամէն կողմերը, ուր տեղացիք երկիրը ջրելու համար կրնան առուակներով գետերէն ջուր առնել, շատ արգաւանդ ու պտղաբեր են։ Ամէն տեսակ ցորեն, բամբակ եւ մանաւանդ բրինձ գերազանց եղանակաւ մը յառաջ կու գան ու հրաբխական գետնին վրայ՝ որ արուեստով կ'ո-

[1] Ամէն հին (Երոդոտոս, Ստրաբոն եւայլն) ու նոր պատմագիրներն ու ճամբորդները Հայաստանի ձիերը շատ կը գովեն, եւ Հայոց ձիաբուծութեան արուեստն ու մէկ քանի տեղերուն արօտը ուրիշ շատ ազգերուն ունեցածէն խիստ վեր կը դասեն։

ռոգուի։ Բայց ուր որ հողը խոնաւութիւն չունի, եւ ջրել փորելը կարելի չէ, երկիրն ամէն անապատ պէս մնացեր է։ Մասիսի լերան քարը շատ ծակոտիք ունենալով՝ հալած ձիւներուն վար վազած ջուրը կը ծծէ ու թող չիտար որ ուխ մը ձեւանայ, ապա թէ ոչ լերան անսպառ ձիւնը քովի արտերուն անդին բարիք կ'ընէր, որոնք հիմակ արեւակէզ եւ լերկ ու մերկ ամայաստան մը մարդուս աչքին առջեւը կը բերեն։

Մենք իրիկուան դէմ Երասխ գետին եզերքը հասանք. բայց ջուրը խիստ շատցած ըլլալով՝ մութ ատեն վրայէն անցնիլը խոհեմութիւն չսեպեցինք եւ նոյն գիշեր Թաթարներու գեղի մը մէջ պառկեցանք։ Թաթարները մեզ շատ սիրով ընդունեցան ու մեծ հիւրասիրութիւն ցուցուցին. ասիկա նշան մըն է որ Թաթար Մահմետականները քրիստոնէից հետ աւելի հաշտուեր են։ Բարրոգին առտնը բոլորովին տարբեր էր, ինք հազիւ թէ հարկաւոր եղած ուտելիքը կըր-ցաւ գտնել. իսկ մեր հիւրընկալ Թաթարն ինչ որ ունէր՝ մեր առջեւը դրաւ, եւ պարգեւ մ'ալ չառաւ։ Մինչեւ կէս գիշեր իր մէկքանի Թաթար դրացիներ-րով մեզի հետ նստաւ, որոնք շարունակ Պր. Աբո-վեանին կ'աղաչէին որ պատմութիւններ պատմէ, բայց զարմանալին ան էր որ բուն նուրբ ու զաւեշտ պատ-մութիւններէն համ մը չէին առներ, եւ հասարակ պատմութիւններով աւելի կը զուարճանային։ Անոնք շատ զարմացան, երբոր լսեցին որ ես ոչ Մոսկով, ոչ ալ Անգղիացի եմ, վասն զի չէին գիտեր որ աշ-խարհքիս մէջ Գերմանացի ալ կայ, նաեւ ոչ Սու-լթան Պոնաբարդին անունն իրենց ականջը հասած էր, թէպէտ արեւելքին մէկալ կողմերը թնդացուցած էր։ Հոս ազգապանծ Գաղղիացի մ'ըլլար նէ, շատ կը տաքնար տեսնելով որ ան մեծ ազգին ու իր դիւ-ցազնական քաջին շահատակութիւնները Երասխայ հովիտներուն վրայ դեռ չեն գիտեր։

Յունիսի գեղեցիկ օրուան մը պայծառութիւնը մեզ կանուխ արթընցուց։ Քիչ մը ձիավարելէն ետքը Երասխայ գետափը հասանք, որն որ հոս այնչափ լայնութիւն ունի, որչափ Կուր Տփղիսի մօտ, եւ նոյնպէս վայրենի ու սրընթաց է։ Ասոր փոսը գալարուն կայծքարներով լեցուն է, եզերքը շատ տեղեր բարձր ու ցից։ Իր վազած տեղը շատ խորունկ ըլլալով՝ ջուրը դաշտերու վրայ բերելը կարելի չէ, որն որ մեծ վնաս կը պատճառէ։ Իր եզերքը Եփրատինին պէս տափարակ ու առուակ բանալու յարմար ըլլային նէ, բոլոր երկիրն ասանկ ժրաջան ու յաջողակ ժողովրդեան մը ձեռքով դրախտի նման կ'ըլլար։ Արագած եւ ուրիշ հիւսիսային լեռներէն դէպ ի Երասխ վազող վտակներն ու աղբիւրներն ամառուան ատեն Երասխայ խիստ քիչ ջուր կը վճարեն, որովհետեւ մինչեւ որ Երասխ հասնին նէ, պարտէզներու եւ ագարակներու կ'առնուին։ Գրեթէ իր բոլոր փըրփրադէզ ջուրը Յունիսի մէջ Օսմանեան Հայաստանի լեռներուն հալած ձիւներէն կը վազէ։ Մեզ դիմաց անցընելու համար պարսկական ապրանքներով լեցուն նաւակ մը կու գար, որուն Երասխայ արշաւասպը կոհակները պատռելով մօտիկնալու ատենը՝ ես մտօք վերացայ, ինչպէս որ հռչակաւոր գետ մը առաջին անգամ տեսնելուն՝ բնականապէս կը պատահի, եւ ան հին ատենները յիշեցի, երբոր Հռովմայեցւոց արծուէնշան դրօշները մինչեւ աս "կամրջընկէց Երասխին,,[1] ափունքը հասան։ Բայց հիմա նոյն դրօշին տեղ՝ Ռուս կողմնապետի մը վառը (պօյրախը) կը ծփար. Հռովմայեցի զրահապատ դիւցազներու տեղ՝ քանի մը լայներես ու տափարաքիթ Սլաւներ կային, եւ փոխանակ լատիներէն հնչական լեզուին՝ մոնկոլական բաղաձայններու լեզուն երկայնատարած բառերով։

[1] Հռովմայեցւոց բանաստեղծները Երասխ գետին սրընթացութիւնը նշանակելու համար կ'ըսեն Araxes pontem

## ՈՒԹԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

*Արսէն Սուլթան-Գեղամեան Հայ իշխան։ Պարսիկ խանի վարդենոց ու ամարանոց։ Կեղեքելու դէմ ամբաստանութիւն։ Սեւանջուր գետ։ Ռուսաց տարիճանի բարձրութեան նշանները։ Ալի Բեկին ըսւարճալի պատմութիւնն ու Քիւրտերը։ Ճանապարհի վիճակ։ Մաքսանենգութիւն։ Բազէով որսորդութիւն ու բազէի կրթութիւն։ Դիւակերպ որսորդ։ Գուռանըֆօր։ Արարատայ բուսաբանական եւ կենդանաբանական վիճակը։ Սեւանջուր գետակին ակունքը։ Հրաբխային լեռ ու նիւթ։ Որսական թռչուններ։*

Յերեւանի կոմիսապետը Պ. Գոլովինն բոլոր իր ստորին պաշտօնատէրներուն յառաջուընէ իմացուցած էր որ մեր հանդիստ ճամբորդութեանը համար ամէն բան հոգան պատրաստեն. ան պատճառաւ Երասխէն անդին անցնելուս պէս՝ տեղւոյն Ռուս պաշտօնատէրն ինծի հասկըցուց որ մինչեւ Մասիս ապահով երթալու համար ամենայն ինչ կարգի դրուած է։ Քիչ մը հեռու Պարսիկ իշխանի մը ամարանոցին առջեւը մաքուր հագուած ձիաւորաց խումբ մը կար, որ մեզի ուղեկից պիտի ըլլար։ Ասոր գլուխը կեցած էր իշխանազգի Հայ մը Արսէն Սուլթան-Գեղամեան [1] անունով, իր քովն ալ Քիւրտերու մեծ մը Ալի Բեկ անուն. աս քաջազէն ձիաւորներն էին Հայ, Թաթար Քիւրտ։ Պարսիկ իշխանը պարտէզին դրան առջին

indignans, իբր թէ Երասխ զայրանալով թող չէր տար որ վրան կամուրջ ձգուի։ Պր. Վակներ ասիկայ ակնարկելու համար՝ գերմաներէն բառով Brückenzürnender Araxes կ'ըսէ, այսինքն է Կամրջատեաց կամ Կամուրջ-ընկէց Երասխ։

[1] Պր. Վակներ աս Գեղամեան անունը կը գրէ Gehamoff, որուն բուն Հայերէնը մենք Գեղամեան կը կարծենք, որովհետեւ Պր. Վակներ միշտ մեր Գ գրին տեղ՝ ուղղութեամբ g կը դնէ. փոխանակ մեր Ղ գրին՝ շատ անգամ h կը դնէ. իսկ off ռուսերէն հայրանուանական մասնիկ է, որուն Հայերէնն է եան. սակայն հիմա ակաճութեամբ կը տեսնենք որ Ռուսաստանի Հայոցմէ շատերը կամ երեւելիներն իրենց անուանց Հայերէն եան վերջաւորութիւնը ռուսերէն off կամ eff մասնիկներուն կը փոխեն, որն որ ազգայնութեան նշանները կամաց կամաց բնաջինջ կ'ընէ, եւ շատ դժբախտ հետեւանք կրնայ ունենալ, մինչդեռ ուրիշ տեղեր պատահած է։

ծառայից բազմութեամբ ու գոյնզգոյն զգեստներ հագած՝ մեզ բարեւելով ընդունեցաւ, վարդերով զարդարուած գաւազան մ՚ընծայեց, եւ բաց ասկից՝ թաթարերէն լեզուաւ երկայն ծաղկալից ճառ մը խօսեցաւ, զորն որ Պր. Արովեան ինծի թարգմանեց. ես ալ իրեն յանձնեցի որ իմ կողմանէս նոյն քաղաքավար Պարսիկ իշխանին կարելի եղածին չափ ծաղկաւէտ խօսքերով շնորհակալ ըլլայ։ Ետքէն վար իջանք ու վարդենոցը մտանք, ուր զարդարուն արահի մը մէջ մեզի քանի մը զովարար անուշեղէններ հրամցուցին։ Իսկ Պր. Արովեան երկայն բարակ խօսակցութեամբ նոյն Պարսիկ իշխանին հասկըցընելու կ'աշխատէր որ իմ ճամբորդութեանս վախճանն ինչ է, բայց ասիկա շատ դժուարին բան էր, որովհետեւ զբօսանաց ու վայելից մէջ ընկղմած Պարսիկը չէր կրնար ըմբռնել որ ինչպէս մարդ Եւրոպայի հանգիստ կեանքը թող տալով՝ քիչ մը հող կամ երկիր քննելու համար այնչափ երկայն ճամբորդութիւն ու աշխատանք կրնայ յանձն առնել։ Մեր վարդուշաքար (կիւ-լիւշէքէր) ու օշարակ (շէրպէթ) վայելելու ատենը՝ բոլոր ծառաները աշտարակաձեւ գլխարկներով բարեւ բռնած կարգաւ կը կենային, ինչու որ Պարսից մէջ հիւրի մը դիմացը շարուած ծառաներուն բազմութենէն կ'իմացուի տանտիրոջ աստիճանն ու հարստութիւնը։ Ասոնց ամենէն աւելի հաճոյ եղաւ ինծի մէկ ազնիւ բազէ մը, որն որ արծաթի գաւազանի վրայ կեցած՝ սուր ու դիտող աչուըներով մը մեզի կը նայէր։ Ասիկա իր որսորդութեամբը իշխանին զուարճութիւններէն մէկն էր։ Իմ Պարսիկ ասպնջականիս շաքարեղէններէն ու անոյշ խօսքերէն չափէն աւելի կշտանալով՝ ես վարդաբոյր ամարանոցը թողուցի ու նորէն ճամբայ ելայ։

Ռուս պաշտօնատէրներուն խիստ հրամանաւն ամէն տեղ մեզի համար պատրաստութիւններ տես-

նուած էին, որոնց համար Հայ տանտէրները ստակ ալ չընդունեցան. բայց տեսնելով որ ես այսչափ ձիաւորաց բազմութեամբ ճամբայ կ'ընեմ, ինծի պէս ողորմելի ընտանիքը՝ մեծ ու խօսքն անցնող մարդու մը տեղ դրին եւ Ռուս պաշտօնատէրներու վրայ ինծի ամբաստանութիւններ ըրին, երբոր տեսան որ ես ալ իրենց հետ սիրով կը վարուիմ: Իրենց գլխաւոր ամբաստանութիւնն աս էր որ տեղւոյն Ռուս կողմնապետան ու իր կնիկը միօրինակ զանոնք կը կեղեքեն ու կողոպտեն: Երիւանին վերակացուն նոյն օրերը փոխուած էր, եւ Կաւկասի ընդհանուր կուսակալն ալ աս կողմերուն այցելութեան պիտի ելլէր, ուստի Ռուս կողմնապետը կը վախնար որ պաշտօնէն վար կ'առնուի ու բռնաւորութենէն կ'իյնայ. անոր համար ձեռքէն եկածին չափ յափշտակութիւն կ'ընէր:

Իրիկուան դէմ Թաթարներու Արալըխ գեղը հասանք, ուր Խազախները Ռուսի արաքսեան սահմանագլուխը կը պահէին: Արդէն Սուլթան-Գերեզմանան Հայ իշխանը մեզ անանկ աղէկ հոգաց որ բան մ'ալ չպակսեցաւ: Հոս Սեւջուր (Գարա սու) ըսուած գետին քով հանդիստ վրաններու տակ բանակեցանք, եւ մօտաւոր գեղերէն մեզի առատութեամբ կաթ, հաց, ըրինձ ու հաւեղէն բերին. մեր ձիերուն ալ շատ լաւ գարի: Աս պզտի գետին մերձակայ տեղերն անբնակ ու մենակերպ են: Սեւջուրը Մասիս լերան տակ դաշտի վրայ շամբի (խամըշլըխի) մը մէջ կը բխէ, ու իրաւամբ Սեւջուր կ'անուանուի, որովհետեւ իր ակունքէն քիչ մը հեռու ջուրը սեւ գոյն մը կ'առնու, կը մօրոտի եւ գէշ համ մը կը ստանայ: Իր ընթացքն այնպէս կամաց կ'երեւայ որ մարդ շարժում մը չիտեսներ, բայց շատ խորունկ է: Քիչ տեղ քալելէն ետքը՝ կ'երթայ Երասխին հետ կը միանայ, այնպէս որ աւելի ջրանցքի մը քան թէ գետի կը նմանի: Ասոր եզերքը ճախճախուտ եւ վատառողջ են,

ուստի եւ Հօսանեղաց սահմանապահ Խազախներու մէջ ալ շարունակ տեսնք (ոբշմա) կ'իյնայ:

Նոր շրջակայ տեղուանքը քանի մը անգամ պտըտեցայ, բոլորը զննեցի, եւ մէկ քանի տեսակ դղըրդնագիւտ երկակենցաղ անասուններ ու ճճիներ գտայ: Հայք ու Թաթարք իմ աս զբաղմանս վրայ զարմացած էին, եւ գլխաւորաբար անոր համար որ տարրին աշխատանքներն ալ ես անձամբ կ'ընէի, ու մուրճս, անկացոյց պատկերներն ու միջատներու ցանցը ծառայիս ձեռքը տալու տեղ՝ ես կը կրէի. ասով իրենց սաստիկ յարգութիւնն ու վրաս ունեցած մեծ համարումին խախտեցաւ, եւ անդադար Պր. Աբովեանին կը հարցընէին որ ինչո՞ւ այնչափ պատիւ կ'ընէր անանկ օտարականի մը, որուն զգեստն ու զբաղումն ամենեւին բարձր աստիճան մը չէին ցուցըներ, որն որ ոչ ոսկեղէն ուսադիր (épaulette), ոչ ալ պատուոյ նշան մ'ունի եւ իր Խազախ ծառային հետ իբրեւ իրեն հաւասար մարդու պէս ընտանեբար կը խօսի: Աս ամէն բաները, մանաւանդ վերջի պարագան՝ Ռուսաց սովորութեանը բոլորովին հակառակ էր, որոնք վերջին ճիգը կը թափեն՝ զգեստով ու արտաքին ճոխական վարմունքով իրենց հպատակներուն աչքին ուժեղ ու պատկառելի կերպարանք մը ցուցընել, եւ ժողովուրդն ալ անանկ վարժած է, այնպէս որ մարդու մը աստիճանին բարձրութիւնն այսպիսի նշաններէն կը չափէ:

Ուղեկիցներուս մէջ ամենէն աւելի աչքի զարնող մարդն էր Ալի Բէկ Քիւրտը: Հասակը ծառաբերձ, ուսերն ու լանջքը սաստիկ լայն, փորը դուրս ինկած, եւ իր ոսկրներուն ու մարմնոյն տիտանեան զանգուածին վրայ արտաքոյ կարգի մեծ գլուխ մը: Արարատի Քիւրտ ցեղերուն մէջ ասոր նման կերպարանք մը չտեսայ. Քիւրտերու մէջ՝ Ճեզայիրի կողմերը բնակող Գապիլներուն պէս՝ իրարմէ վերջին աստիճանի

տարբեր մարմնոյ ձեւեր ու դիմաց գծագրութիւնները կան, անանկ որ իրենց բնիկ կերպարանքն որոշելը շատ դժուար է. ամէն բան կը ցուցընէ որ թէ՛ ատոնք թէ՛ անոնք խառնուրդ[1] մըն են։ Այն բեկին յաղթանդամ տեսքին աւելի շքեղութիւն մը կու-տար իր շառաւղին (կաս կարմիր) հագուստը։ Իր հրա-կայական խելապատակը շրջապատած էր լայնածիր փաթթոց մը։ Ինք յառաջագոյն Քիւրտերու մէջ շատ մեծարոյ է եղեր, բայց հիմա Սուլթան-Գերդամանին իբր օգնականն էր։ Աս Հայ իշխանն անոր՝ բարեկամի եւ ոչ թէ հպատակի պէս կը նայէր. եւ "Դուն խօսքը Քիւրտերուն անցնելուն ու իր այլանդակ կերպարան-քին համար հեռու կը պարապցընեմ„ կ'ըսէր։ Իրեն հե-մնկուան ինկած վիճակին պատճառն ալ կը կարծուէր որ Ինք Տփղիս երթալով Կովկասի Ռուս ընդհանուր կուսակալ Պր. Գոլովինին հպատակութիւն է ցու-ցըցեր, ատով մեկնալ Քիւրտերուն աչքէն ելեր է։ Պր. Գոլովին զինքը շատ սիրով ընդունելով՝ նաեւ խոստմունք մը հրատարակեր է, ուր ամէն կոչնականներն անոր անլիր ախորժակին վրայ աչքեր մնացեր են։ Ինչպէս սկսնատես մարդ մը ինծի պատմեց, կատա-րեալ արջու անյագութեամբ կերեր է. իր ծարաւը Սահարա անապատէն անցնող Տաճիկ ուղտի (հէճին տէվէսի) ծարաւին կը հաւասարէր։ Երբ որ իր ստա-ջեւը Շամբանեան գինի դրին, բան սկսնատես մէյան, ինք պզտիկ գաւաթն արհամարհելով՝ բուն

[1] Եւրոպացիք Քիւրտերուն սկիզբը գտնելու համար շատ աշխատած են ու կ'աշխատին։ Մեր ազգային պատմու-թիւնը քննելով՝ կը կարծենք որ ատոնք հին Մարացի, Պարթեւացի ու Հայոցի խառնուած ազգ մըն են, բայց ինչպէս Խորենացւոյն պատմութեան զանազան տեղե-րէն (Գիրք Ա. Գլ. Լ. եւ Գիրք Բ. Գլ. ԾԳ.) կը տեսնուի, թէ Հայաստանին հիմա Քիւրտիսթան ըսուած կողման Քիւրտերուն, եւ թէ Արարատայ Քիւրտերուն շատուոր մասը կամ բուն խմբը Մոք է։ Աս կարծեաց կը նպաստէ նաեւ ան որ Հայաստանի այլեւայլ կող-մերը մինչեւ ցայսօր Քիւրտերը Մոք կը կոչուին։

շիշն տասն ու մէկ անգամուն ամբողջ խմեց լմնցաւ։ Պր. Գոլովլին տասը ոսկի ժամացոյց մը պարգեւ տուած էր, ինք ասիկայ Եղիւան ծախեց ու կերուխումի գործածեց։ Ես ալ բանս չգիտնալու զարնելով՝ իրեն ըսի որ պարգեւ տուած ժամացոյցդ մէյ մը տեսնեմ. ան որ լսեց, սկսաւ ուսերը վեր վեր նետել ու ըսաւ. "Անիկա շատոնց գնաց. մարդս պիտ'որ ապրի եւ ուտէ,,։ Ասանկ կեանքի մը վարժելէն ետքը՝ ալ Քիւրտերուն անհանգիստ թափառականութենէն համ չէր առներ։ Ինք աղէկ զուարթաբարոյ ու զուարճախօս մարդ մըն էր, եւ կատակ կը վերցընէր։ Երբ որ ռուսերէն խօսելու կը սկսէր, մարդ չէր կրնար ծիծաղը բռնել։

Ըն Քիւրտ ցեղերն որոնցմէ Ալի Բէկն էր, Մասիսի չորս կողմը թափառական կ'ապրին, եւ երբեմն Պարսից, երբեմն Տաճկաց, երբեմն ալ Ռուսաց կողմերը կը կենան, ինչպէս որ արօտն ու ապահովութիւնը կ'որոշէ։ Ձմեռը Ռուսաց կողմը կ'անցնին, ինչու որ փայտ եւ ուրիշ պիտոյք գտնելը դիւրին է, ամառը սիրով Տաճկի երկիր կ'երթան, որովհետեւ հոն իրենց ապրանքներուն համար առատ գալար խոտ կը գտնեն։ Շատ անգամ ասոնք յափշտակութիւն մ'ընելէն ետքը բնակութիւննին շուտով կը փոխեն, որպէս զի ձեռք չիյնան։ Ռուսերը շատ ջանացին որ աս Արարատայ Քիւրտերը հաստատուն բնակութեան մը վարժեցընեն, բայց ամէն աշխատանքը պարապի գնաց։

Սեւ Ջուր գետին քով նաեւ Ռուս բժիշկ մը կար, որն որ ժանտախտին ընթացքը գիտնալու համար հոս խաւրուած էր։ Մինչեւ մեր գալստեան օրը միայն Թաթարներու երեք գեղ մարդամահ ինկած էր, զորոնք Խազախները սաստիկ խիստ պաշարած կը պահէին. իսկ Ռուս բժիշկը ոչ հիւանդներուն, ոչ ալ գեղերուն կը մօտիկնար, հապա երկու ժամ հե-

ւոր տեղ մը կը նստէր, եւ միայն խաղաղ պաշտօ-նակալին ձեռքով՝ Հիւանդաց թուոյն վրայ ծանօ-թութիւն կ'առնէր։ Աս հիւանդութեան ստուգիւ ժանտախտ ըլլալը կատարեալ չցուցուեցաւ։ Տեղացիք կ'ապահովցընէին որ ճախճախուտ տեղերէ պատճա-ռած ապօրական տենդն է։ Ռուսերը միշտ կ'ըսեն որ ժանտախտը Տաճկի Հայաստանէն Պայազէտ [1] քաղաքէն Ռուսի Հայաստան կու գայ, ուր որ Պայա-զէտի մէջ շատ տարիներէ ի վեր ժանտախտ տես-նուած չէ, ինչպէս որ տեղւոյն փաշան ու Պր. Պուքա-տորֆ բժիշկը հաստատեցին։ Նոյնպէս Պարսից սահ-մանակից Մակու քաղաքը խիստ երկայն ատենէ ի վեր ժանտախտ պատահած չէ։ Ուստի այնչափ հաւա-նական չ'երեւար որ Տաճկաստանէն ու Պարսկաստա-նէն եկող ապրանքներուն ձեռքովը Ռուսի Հայա-ստանին մէջ ժանտախտ տարածի, վասն զի ապրանք-ները ժանտախտով ըլլային նէ, նաեւ ան երկիրնե-րուն մէջ ժանտախտ պիտի՛որ ծագէր, ուսկից որ կու գան. եւ ոչ ալ կրնայ ըսուիլ որ նոյն ապրանքները Ռուսի Հայաստան մտնելէն ետքը՝ վրանին ժանտախ-տի նիւթ գոյանալու կը սկսի. ուրեմն աւելի հաւա-նական է ըսելը որ Ռուսի Հայաստանին մէջ ատեն ատեն պատահած մարդամահը բուն ժանտախտ չէ. գէթ մինչեւ հիմակ աս բանս բժշկական գննու-թեամբ ստոյգ ցուցուած չէ։ Կարելի է որ նոյն երեք գեղերուն Թաթարները Ռուս տեղապետին ընչասի-րութիւնն յագեցուցած չըլլան, ան ալ վրէժն առ-նելու համար՝ զանոնք այնպէս խիստ պաշարել տուած ըլլայ։ Սակայն Ռուս պաշտօնատէրներուն բռնած ճամբուն նայելով՝ անկարելի չէ որ նաեւ ամէն օր Երեւան խրկուած հիւանդներուն ու մեռելներուն

[1] Պայազէտ Ռուսաց սահմանէն քիչ մը հեռու է եւ Մա-սիսու հարաւային կողմը կ'իյնայ. ասիկայ Ռուսի սահ-մանակից երկիրներուն հետ աղէկ առեւտուր կ'ընէ։

ցանկը բոլորովին սուտ ըլլայ, որպէս զի՝ ինչպէս Հայ ու Թաթար բնակիչներն անկեղծութեամբ ըսին, առ ժամանակաւոր լուծերով Երևանի գաւառապետն ու Պաւլովի ընդհանուր կուսակալը խաբուելին, վախնալով, առ կողմերուն անձամբ այցելութիւն ընելու չհամարձակելին եւ կարող չըլլան եղած հարստահարութիւնները քննել, իրենց աչքովը տեսնել ու յանցաւոր պաշտօնատէրները պատժել:

Հասարակաց առհմանապահ խաղախները զուարթ ընկերակցութիւն մը չունենալով՝ շատ տխուր կ'ապրին, բայց առոր փոխարէն կը հանեն՝ մաքսէ ապրանք փախցընողներուն հետ շահաւէտ առեւտուր մ'ընելով: Պարսկաստանի մաքսանենգները՝ որ անգղիական ապրանքները հակերով (դէնկերով) Դավրեժէն Երասխ գետին վրայ կը դնեն եւ Ռուսաց Հայաստան կ'անցընեն, սովորաբար խաղախներու եւ մաքսաւորներու հետ բանը նախ կը յարմարցընեն, եւ վաճառներին անխափան իրենց կուսակալեան վաճառատեղերուն ձեռքը կը հասցընեն: Այս առհմաններուն վրայ փախցուած ապրանք բռնելը քիչ տեսնուած է. իսկ մաքսանենգ մը բռնել ու դատաստանի մատնելը լսուած բան չէ: Խաղախը միշտ կարեկից կ'ըլլայ ու կը գթայ, երբոր փայլուն ոսկիին ձայնը լսէ: Եթէ մաքսանենգ մը յառաջագոյն խաղախին ու անոր պաշտօնակալը գոհ չըրած՝ ձեռք կ'իյնայ, անշուշտ պրծելու համար՝ քանի մը արծաթ ռուպլի հերիք է: Ռուսաց Թէպէտ հոս խաղախներուն կեանքը տխուր կ'երեւայ, բայց անոնցմէ ամէն մէկը հոսկէց իր հայրենիքը դառնալու ատեն՝ իր կաշէ քսակը փայլուն դրամով լեցուցած կ'ըլլայ:

Ըրաէն Գեղամեան իշխանին ու Ալի Բէկ իմ երկրաբանական ու անկաբանական քննութիւններուս վրայ այնչափ հոգ մը չէին ցուցըներ, իրենք աղուոր բաղէով մը որսորդութիւն կ'ընէին ու անով կը զբ-

ւորճանայրին։ Օր մը ես ալ աս մանարանին ներկայ գտնուեցայ, թէպէտ նոյն անգամուան բաղէն այնչափ քաղցրութիւններ չըրաւ, ինչու որ աս թռչուններն ալ օր ու ժամ ունին, երբեմն անխտիր կ'ըլլան ու որսին վրայ մոլեգին կը խոյանան, երբեմն ալ թմլ ծուլ ու անյօժար կը կենան, եւ նոյն խակ պարարտ Լորամարգի (ղըլըղըրըճընէ) մը տեսքը իրենց արիւնառուշտ բաղձը չէր զարթուցաներ. երբեմն ալ ազատութիւննին մաքերնին գալով՝ կը թռչին ու կը փախչին, բայց շատ հեղ նորէն կը բռնուին, ինչպէս Գեղամեան իշխաննին բաղէին ալ դիպեցաւ. իշխանը բաղէն կաքաւի (քէքլիքի) մը վրայ արձակեց. խեղճ կաքաւը տեսնելով որ թռչելու մէջ իր սոսկալի թշնամւոյն հետ գլուխ պիտի չկրնայ ելլել, յանկարծակի ինք զինքը վար թողուց որ թփերու մէջ պահուըտի. բայց բաղէական աչուըներէն չկրցաւ փախչել. քէչ - մը ետքը անոր սուր մագիլներուն (փէնչէներուն) ու կտուցին տակ արիւնլուայ եղած մեռած էր։ Տէրը երկրորդ անգամ ուրիշ թռչուններու տարմին (քէ-մէին) վրայ խաւրեց, բայց անիկա նախ դէպ ի վերը Մասիս փախաւ, ետքէն վար իջաւ կեցաւ, եւ մօտ կայնող ձիաւորները ձիերնին բոլոր ուժով վազցուցին ու հասան եւ նորէն բռնեցին զբաղէն։

Թէպէտ -արեւելքի աս մասին մէջ բաղէով որսորդութիւնը յառաջուան չափ շատ ծախքով չ'ըլլար, այսու ամենայնիւ դեռ մեծին ու պզտիկին գլխաւոր զբօսանքներէն մէկն է։ Պր. Գոլէնադի՝ որն որ իմ աս կողմերը պտըտած ժամանակս Ռուսի Հայաստանը պտըտեցաւ ու աս որսորդութիւնը տեսնելու շատ անգամ առիթ ունեցաւ, անոր վրայ աղէկ ծանօթութիւններ կու տայ, զորոնք հոս դնելը հարկաւոր կը սեպեմ։ Աշնան ու գարնան երբոր բաղէները ճամբորդ թռչուններուն ետեւէն կ'իյնան, գաւառի բնակիչները վարմ (ող) կը ձգեն, մէջը կը

կալերն լորամարգ. կամ սալամբ[1] եւ կամ ուրիշ անտանկ թռչուն մը, որուն վրայ բազէները յօժարութեամբ կը յարձակին. իրենք չուանը բռնած կը պահուին, ու բազէն վարմին մէջ զալուն մտնելուն պէս՝ չուանը կը քաշեն ու բազէն վարմի մէջ կը մնայ։ Անկից ետքը կըթելու կը սկսին. նախ կը քննեն կը նային որ բազէն սեւաչեայ (ֆարս չեղ) չըլլայ, վասն զի՝ ինչպէս անդացինք կ'ըսեն, սեւաչուի բազէներն այնպէս սրատես չեն, ուստի եւ միայն խարտեաչաչուիները (ելա կէօզները) աս որսորդութեան յարմար կը դատուին։ Աս ընտրութիւնն որ կ'ըլլայ, բազէին աչուըներուն կոպերը (խափախները) մածուցիկ նիւթով մը իրարու կը կպցնեն, եւ կամ աւելի յաճախ՝ մէկ երկու անգամ ասեղ անցընելով՝ իրարու հետ կը կարեն, եւ երեք օր անանկ կը թողուն ու կ'ըսեն որ աս կերպով բազէն կ'ընտանենայ կամ իր վայրենութիւնը կը մոռնայ. ասկից զատ՝ սղանց.[2] բռնած խոտին եփած ջուրովը կը լուան, որպէս զի վրայի ոտիղերն ու ոջիլները սատկին։ Բայց բազէն պիտանի ընելու համար գլխաւոր պայմաններուն մէկն ալ աս է որ իրեն քիչ ուտելիք տալու է։ Դարձեալ տաուըներուն շղթայ՝ այսինքն երկըթէ օղակներ կ'անցընեն, եւ կաշիով մը զանանք իրարու կը կապեն, վրան ալ զլան մը կը հաստատեն։ Ասանք ըլլալէն ետքը բազէավարժը կենդա-

[1] Սալամբ բուն հայերէն բառ է, եւ սալ (քար) բառէն ելած կ'երեւայ, ինչպէս որ Փարպեցւոյն աս թռչնոյն տուած մականիշներն ալ ըստ մասին կը ցուցընեն, "Առասպարասէր, վիմասոյզ, սորամուտ երամս կաքաւացն եւ սալամբացն„։ Իսկ ըստ նշանակութեան տեսակ մը կաքաւ (կէքլիկ) է, ասոր տաճկերէն Չիլ կ'ըսեն պրս. Թէհուչ. որուն հետ նոյն կը համարուի լա. **Tetrao Francolinus**, եւ արաբ. Տէճրուճ (Թէճրուճ) ըսուած թռչունը. Մենք հայերէն Սալամբ բառը վերջիններէն առեր գրած ենք։ Մագիստրոսն ու Երզնկացին աս բուն պարսկերէն Թէհուչ եւ բուն արաբերէն Տէճրուճ բառերը իրրեւ արեւելեանց հատուկ բառ ենթադրելով՝ հայերէնի պէս կը բանեցընեն ու կ'ըսեն Դուհուճ եւ Դուրուճ։

[2] Լա. **Aristolochia.** պրս. Զերավէնդ։

Նոյն աշուղները կը բանան, եւ գլուխին վրայ երկայն տուտաւան (ոչխիմ) կապելով բազէն ծառի մը վրայ կը թռցընէ, ու ղայ-խա ղայ-խա պոռալով՝ դանիկայ իր քովն ունեցած հաւքին վրայ կը կանչէ կ'իջեցընէ։ Վերջէն ձեռքը մսի կտոր մը կ'առնէ, ու դանիկա շարժելով՝ բազէն կը հրաւիրէ, որն որ բազէակալին ձեռքին վրայ գալու նստելու վարժելուն պէս՝ անիկայ կը սկսի տանոց մսի փորձել ու վարժեցընել։

Երբոր կատարեալ կը կրթուի, կը սկսին որսոր-դութեան գործածել. բայց որսէն յառաջ պէտք է որ բազէն անօթի մնայ։ Բազէակները մաշկեղէն հաստ ձեռնոց մը կը հագնի ու բազէն ձեռքին վրայ կ'առ-նէ։ Բազէով որսորդութիւն ընողները հասարակօրէն ձիով՝ թփուտ ու մացառուտ տեղեր կ'երթան, հե-տերնին ալ խումբ մը թաւամազ քերծէ (որսի շուն, Բողր) կ'առնեն. ամէն մէկ շան վրան թաղիք (քէչէ) կապուած է որ փշերու մէջէն անցնելու ատեն չվիրա-ւի։ Որսորդները շարունակ քերծէները կը դրդեն որ թռչուններուն տեղը գտնեն, եւ անօթի բազէն միօրինակ չորս դին կը նայի։ Թռչուն մը երեւան ել-լելուն պէս՝ որսորդը կ'արձակէ բազէն, որն որ կամ անմիջապէս թռչունը կը բռնէ, եւ կամ անդադուլ անդադար անոր ետեւէն կ'իյնայ, մինչեւ որ խեղճ թռչունը թուփի մը մէջ կ'երթայ կը պահուըտի, բա-զէն ալ կ'իջնայ նոյն թուփին վրայ կը նստի։ Շները կը ցատքեն ու թռչունը նորէն դուրս կը հանեն, բազէն կը յարձակի կը բռնէ նէ, զինքը վարձատրե-լու համար՝ որսին ըղեղն ու աչուըներն անոր կու տան։ Բայց բազէին բռնած թռչունները թանգարաններու ամենուն չեն յարմարիր, վասն զի երբեք թռչունին ամբողջ ու անարատ չմնար։ Թռչունը բռնուելէն ետքը միշտ բազէին ու որսական շներուն մէջ տա-ռիկ կռիւ մը կը բացուի. երբեմն բազէն շատ կը կատղի, ան ատեն բազէակները մսի կտոր մը շարժե-

լով՝ կը սկսի ղօյ-խօ պոռալ ու զանիկա կանչել. բա-զէն թէ քաղաքակիրթ է, նաեւ (ռուսի) մղոն մը հե-ռու տեղէն կը դառնայ ու բազէապանին ձեռքին վրայ կու գայ կը կենայ: Շատ անգամ բազէին յառա-ջուան ազատութիւնը միտքը կու գայ ու կը փախչի, բայց սովորաբար դէշ վախճան մը կ'ունենայ, վասն զի կամ՝ ոտուըներուն կաշիները տեղ մը փաթթուե-լով կը մնայ ու սովամահ կը մեռնի, եւ կամ՝ մեր-ձաւոր գեղորէից հաւերուն մէջ մտնելով՝ կը սկսի զա-նոնք գիշատել, ուստի եւ հրացանով կը սպաննուի: Թաթարները կորսուած բազէն շատ հեղ օրերով կը փնտռեն, վասն զի երբեմն բազէն ամենալաւ ձիէ մ'ալ յարգի է իրենց. Թէպէտեւ շատ կը յարգեն շուն ու տակուն ձին ալ, որովհետեւ "Մեզի հաց կը բերէ„ կ'ըսեն, այսինքն աւազակութիւն ընելէն ետքը փախ-չելու ատեն իրենց աղէկ կը ծառայէ: Իսկ բազէն ա-նոր համար յարգի է, վասն զի իրենց ձմեռուան պարարտ ու ազնիւ թռչուններ, ինչպէս փասիան, կաքաւ ու սալամբ կը բերէ: Քաջավարժ բազէ մը 25 մինչեւ 50 արծաթ ռուպլի կ'արժէ:

Պր. Գոլենագի շատ ծիծաղելի եղանակ մ'ալ կը յիշէ, որով Հայաստանի Թաթարները սովորաբար կաքաւ կը բռնեն: Երբ որ, կ'ըսէ, Գերմանացի գաղ-թականի մը տունն էի, կին մը այլայլած ու շուարած վազեց եկաւ ըսելով որ անտառի մէջ մարմնացած սատանայ մը տեսայ: Ես որ լսեցի, աճապարելով դուրս ելայ որ ես ալ անձամբ նոյնը դիտեմ, եւ հե-ռուանց տեսայ հրէշային կենդանի մը, որն որ երկու կանգուն ականջներ, եղան եղջիւր եւ երկայն պոչ մ'ու-նէր, ու երկու ոտքի վրայ՝ դէպ ի լարուած ցանց մը մեղմաքայլ կու գար, եւ առջեւը երամ մը կաքա-ւուած՝ մէյ մը մէկ ականջով, մէյ մ'ալ մէկալով զա-նոնք դէպ ի ցանց կը քշէր: Ասոր մեկնութիւնն աս է: Թաթար հովիւներն իրենց վերարկուին երկայն

Թեւերուն մէջ դաւազաններ կը դնեն, զանոնք ա-
կանջին պէս վեր կը տնկեն, զորոնք ձեռքով՝ ուղտա-
ներնուն պէս կրնան շարժել. նաեւ իրենց վրայ եղան
մորթ մը կ'առնուն: Աս ընելէն ետքը վարմը (տ՛ղը)
կը լարեն, ու մէջը ձագարաձեւ (խոռնիկի ձեւով) ա-
պրակ մը կը դնեն. իրենք կը հեռանան կ'երթան
թփուտներու (չալը չըրփըլը) մէջ, եւ կաքաւները
տեղերնէն հանելով՝ կը քշեն ու ցանցին կը բերեն:
Ասիկա կ'ընեն, վասն զի փորձիւ գիտեն թէ կաքաւ-
ներն եղան տեսակ եղջիւրաւոր կենդանիներէն չվախ-
նալով՝ չեն թռչիր ու փախչիր, հապա շարունակ ե-
տեւնին կը նային, ու քանի որ եղջիւրաւոր կենդա-
նին կը մօտիկնայ, իրենք ալ նոյն շտկութեամբ յա-
ռաջ կ'երթան, եւ այսպէս կոյր զկուրայն կու գան
թակարդի մէջ կը մտնեն, եւ կը կարծեն որ հոն
իբրեւ ապահով տեղ մը պահուած են:

Ա՛ս կողմերն եկող յառաջուան ճամբորդներուն
գրուածոցը մէջ ամենուն մէկունը այնչափ յօժա-
րութեամբ չեմ կարդար, ինչպէս ծերունի բուսա-
քաղ Դուռնըֆորին: Թէպէտ զանիկայ շատ անճիշդ
ու վեր ի վերոյ գրող մը կը սեպեմ, այսու ամենայնիւ
իր պատմելու կերպն այնպէս սիրուն ու անոյշ է,
ինչպէս հին ժամանակները Գաղղիացի ազնուականի
մը խօսակցութիւնը: Բայց ասկից՝ իր չափազանց ու
անստոյգ մասերուն քով՝ նաեւ շատ շիտակ դիտո-
ղութիւններ ու սքանչելի ծանօթութիւններ ունի:
Մանաւորապէս զուարճալի է Արարատ կենալուն
պատմութիւնը, որ լեռան վրայ՝ ինչպէս կարծեմ
իրմէ յառաջ ուրիշ Եւրոպացի մը ոտք կոխած չէր:
Թէեւ ինք Արարատայ վրայի ձիւներուն սկիզբը հա-
զիւ թէ հասած է, ի վերայ այսր ամենայնի կրած
նեղութիւնները զարհուրելի կերպով մը կը նկարա-
գրէ, եւ կ'ըսէ որ "Տնկաբանութեան մարտիրոս,,
ըսուելու արժանի եղայ: Ինք բոլոր բոլոր երկու նոր սե-

տակ բոյս գտեր է, այս ինքն Արեւելեան գէոն[1] եւ Արեւելեան շողամարգ[2], բայց բարի ծերը դեռ քանի մը տեսակ բոյսեր առ Ջրհեղեղեան լերան վրայ ինծի թողուցած էր, թէպէտ իմ հոս կենալուս գլխաւոր նպատակը՝ Արարատայ 1840ին հրաշնչութենէն ծածկուած տեղերուն վրայ երկրաբանական զննութիւն ընել ըլլալով՝ հոստեղաց բոյսերը քննելու երկայն ժամանակ չունեցայ: Իմ գտած նոր տեսակներս էին Ոսկեծիլ[3], Խատոր կոճատերեւ[4], եւ ուրիշ նոր տեսակ բոյս մը, զորն որ Կուիզէնպախ անկարանը Արարատեան քարագեղ[5] անուանեց: Արարատայ կողերն ու ստորոտն աւազով ծածկուած են, որուն մէջ յաճախ կը բուսնի զարմանագեղ Հիրիկ կամ Լուրջ շուշան[6] որն որ Հայկեան լեռնադաւառաց ամենաշուք զարդատունկն է, եւ գուցէ Հիրիկին մինչեւ հիմա ծանուցեալ տեսակներուն ամենէն գեղեցիկը: Կ'երեւայ որ Դուռնըֆոր աս չքնաղ ծաղկէն ամենեւին ժողված չէ: Ինք կ'ըսէ որ Արարատայ կողմերը նաեւ վագր ու յովազ գազաններն ըլլան, բայց աս կողմերն անանկ կենդանիներու յարմար չէ, եւ ոչ ալ անոնց հետքը տեսնուած է: Հոս գլխաւորաբար կան ջրային թռչուններ: Մասիս լեռը հիմակ ամայի է եւ ան ամէն կենդանիներէն զրկեալ, որոնք երբեմն Նոյեան տապանէն ելլելով՝ անկից վար իջան:

Ռուսաց հարիւրապետ մը բարեկամութեամբ զիս Սեւջուր գետակին մօրուտ ակունքը տարաւ: Սեւջուրը խորունկ տեղէ մը մեղմով կը բխէ, եւ ամենեւին եռացում մը չերցուցըներ. ասով կը խախտի

[1] Լտ. Geum orientale, Բժշկական օգտակար տունկ մըն է: [2] Լտ. Lychnis orientalis, Հաս սերուն ծաղիկ մըն է, ու պարտէզներու զարդերէն մէկը կը համարուի: [3] Լտ. Alchimilla, Ցաւաքուան ոսկեփոխները կամ ստորին մետաղներն ոսկի ընելու ջանացողները կը կարծէին որ աս խոտին վրայ նոյն զօրութիւնը կայ: [4] Լտ. Allium veratrifolium. [5] Լտ. Petrocallis araratica. [6] Լտ. Iris, տճկ. մուլէ ղամպաք:

Բառոդին ենթադրութիւնը, որ կ'ըսէ թէ Սեւջուր գետակը ան հալած ձիւներուն ջուրերէն կը գոյանայ; որոնք Մասիսու պատառուածներէն վար կը վազեն։ Աս աղբերականց շրջակայ տեղուանքը երկրաբանական հայեցուածով մտադրութեան արժանի շատ բաներ ունին։ Հոս ամենէն ահագին հրաբխային նիւթերու հետքերը կը տեսնուին, որոնք ատեն մը Մասիսու հիւսիսային կողմէն դէպ ի դաշտ վազեցին։ Արարատայ աս կողման լաւան ծակոտկէն ու աղտոտ է, եւ իր մուխ գունովը շատ կը զանազանի ան լաւայէն, որն որ լերան հարաւային, ու հարաւային արեւելեան դին դէպ ի Պայազիտ ժամանակաւ վազած է։

Չոստեղաց սեւ լաւան Ետնա հրաբուխ լերան նոր լաւային կը նմանի։ Զորս կողմը կանաչութենէ բոլորովին մերկ է, վասն զի ժամանակ մը հոս հրեղէն հեղեղներ վազելով՝ ամենայն ինչ այրած տոչորած ու ապառաժ կտրած է։ Բայց լաւայի բլուրներուն մեծութիւնն ու ընդարձակութիւնը աս լերկ լեռնադաշտին ահեղ ու մեծվայելուչ կերպարանք մը կուտան։ Հին ու նոր աշխարհքին բոլոր հրաշունչ լեռներուն մէջ խիստ քիչերը կան, որոնք իրենց վառարանէն աս աստրիճանի ամբաւ քարի զանգուածներ դուրս նետած ըլլան, ինչպէս աս Հայ հսկայ լեռը։ Ամէն մէկ երկրաբան Սեւջուր գետակին բոլորտիքը միանգամ միայն նայելով՝ անմիջապէս կը տեսնէ, որ ինչպիսի հրային զօրութեամբ դուրս ելած է Արարատն ու ինչչափ երկայն ատեն իր հրաբխական գործողութիւնը շարունակած է։

Քաջ որսորդ մը հոս ջրային թռչուններէն հարուստ աւար մը կը գտնէ։ Ասոնց տեսակները թէպէտ շատ չեն, բայց բազմութիւնն ահագին է։ Եւ քիչ ատենուան մէջ աղբերականց քովերը խել մը բարձրաքեաց (երկայնոտուի, երկայնարուն) ջրային

թեամբ զինու մարմնին ցուցանէին։ Իսկ սոսակարաբուռն անուշահոտ ծաղկանցն՝ զարդոյն քաջից ոստանէր նետողացն եւ գնդապետ բացօթեացն ընձեռնելով առողջութիւն, զօրացուցանէին զզգայութիւն խելացն եւ նորոգէին։ Անդ գանձքն եւ ազգի ազգի արմատք բուսոց ի դէտս օգտակարութեան դեղոց ըստ ճարտարարուեստ ճանաչողութեան ստուգահմատ բժշկացն յօրինուածոց, երագահաս անտահալած աղեղանիք, եւ կամ զարմանքն՝ յերկարելոյն ի ցաւս պատահացուցանէին առողջութիւն։

Իսկ դաշտացն անհնարլութիւն զկամս աշխատաւորացն կորզելով յինքեանց իբրեւ բանիւ, եւ առլցեալ որ զինչ է եւ բարով՝ եւս առաւել փաթանակի առ ինքեանս հրաւիրէին միանգամայն, որք ոչ միայն երեւելութեամբ ցուցանէին վերաբերեալ զշահաւորութիւն օգտից մարդկան, այլ առաւել յորդորականդ աշխատողացն զուարճերկրաւ ծածկեալ օգուտ ուստացանէին՝ զանձեալ անձանց զշահս այսր աշխարհիս ի մեծութիւն թագաւորաց եւ ի հաստատութիւն հարկահանաց, զոսկի եւ զարծաթ եւ զերկաթ եւ զպատուական քարինս, ընկալեալ առաւելապէս ձեռաց՝ զարդարեն զթագաւորս մեծամեծին զարդեօքն յօրինուածովքն, զոր ի կայսն եւ ի թագսն եւ ի հանդերձսն ակնհուսս պաճուճեալս ընդելուզանէին։

Այլ եւ մանծմանք լերանց՝ համածքն[1] անուշութիւնս մատուցանէին զկարտակացն որոշութիւնս։ Նա եւ զարմանս եղեգնաւէր բուսոցն ոչ ընդունայն մատուցանէ յինքեան անմնաբարձ դաշտն Արարատայ, այլ եւ ի նմանէ ծնեալ որդունս ի զարդ կարմրաներկ գունոց ընծայէ օգտաւէտացն շահս եւ շքե-

[1] Համածքն բառը հասու չէ թէ Համ (կէց, մէկամեղ) մասնըկէն կ'ելլէ, համար Համ (ճաշակ, [illegible]) բառէն բարդուած է; եւ Համ փոսող կը նշանակէ։

լեռներուն միայնութեանը նայելով դրուած է եւ առոյգ պարագաներէ զուրկ։ Երեւանի մէջ աս ալ կը հաստատէին որ նոյն հազարապետը ճամբու ատենը խաղի մը մէջ կորսնցնելով՝ Մասիսու կողմերը չէ դարձեր. հապա Երեւանի բնակչացը հարցնելով՝ կը մէկհատիկ պատմութիւնը շարադրեր է։

Պր. Վոսկոբոյնիկով ալ բոլորովին ուրիշ կարծիքն ունի որ Արկուռի գեղն ու Ս. Յակոբայ վանքը ծածկող զանգուածը՝ գետնաշարժով մը լերան բարձր տեղէն փրթած ու գլտորելով նոյն տեղուանք զարկած ու ճզմած եւ վերջէն դաշտի վրայ տարածուած ըլլայ. աս կարծիքը բոլոր Կովկասի կողմերը ծաւալած է։ Բայց ամէն ականատեսներուն ասոր դէմ կ'ելլեն, ինչպէս նաեւ ճիշդ ու նախապաշարմանէ ազատ քննութիւն մը նոյն կարծիքը կը հերքէ։ Աս քարերն ու զանգուածները չէ թէ լերան ծայրէն ինկած, հապա Ս. Յակոբայ կիրճին մէջ եղած Մասիսու հին հրաբխային բերնէ մը շոգիներուն եւ օդերուն սաստկալի ուժովը վեր նետուեցան։ Աս կիրճին մէկ ծայրէն մինչեւ Ս. Յակոբայ վանքին քովերը ժայռը պատռելով՝ ահագին ճեղքուած մը բացուեցաւ, որն որ քարի եւ հողի հեղեղ մը ժայթքեց, եւ մինչեւ հիմա լերան մէկ կողն ու շատ լայնատարած տեղ մը ծածկած է։ Ուստի ասիկա հրաբխական ժայթքում, հրաշխչութիւն մըն էր գետնաշարժով մէկտեղ, եւ ոչ թէ սասանութեան մը պատճառաւ լերան փլչիլը։ Կասսարեան միաբանութեանն այնպէս կը վկայեն Հայ, Թաթար ու Քիւրտ ականատեսները, որոնք նոյն ատեն Ս. Յակոբայ կիրճէն վեր տեղ մը կեցած՝ ոչխարնին կ'արածէին, որով եւ նոյն արկածէն ալ ազատեցան։ Ես աս ականատես մարդիկներուն ըսածը քովէ քով բերելով ամբողջ պատմագրութիւն մը կու տամ։ Բայց ասոր ամէնէն ընդարձակ եւ ստուգիւ ամէնէն աւելի հաւատարիմ

պատմութիւնը հաղորդեց ինծի Սահաթիէլ Խօճայեան[1] Հայազգին, որն որ պատուական ծերունի ու համագամբ եւ յատակ միտք ունէր մարդ մըն էր. Ասիկայ ան Արկուռեցի Սանէփեան աղային եղբայրն է, զորն որ Բառուօդ ու Տիւպոա յաճախ կը յիշեն եւ որն որ Հիմնակ աւերակներու տակ թաղուած մնացած է։ Ցուած սառրագրութիւնս անմիջապէս պատմածին ընթնէն լսելով Արարատայ քովը նստած գրած եմ. Դժբախտութեան պատահած օրը Սահաթիէլ Խօճայեան Արարատի վրայ արօտի տեղ մը գացած էր, եւ հրաշնչութեան ու հողային զանգուածին դուրս ելած ատենը հազիւ թէ նոյն տեղէն 2 սովորական մղոն (35 րոպէ) հեռու էր։ Ասոր բոլոր պատմածներն ուրիշ երկու Արկուռեցի Հայ ալ Նասիբ Մկրտչկեան ու Յովհան Յովհաննէսեան[2] հաստատեցին, որոնք Արարատի վրայ միշտ իմ հետս էին։ Անոնց պատմածը թարգմանելու ատեն Պր. Աբովեանին պէս կրթեալ ու լեզուագէտ մարդէ մը օգնութիւն գտանելուս համար ինք զինքս երջանիկ կը սեպէի։

Արկուռի գեղը Մասիսու մէկ ձորին մէջն էր՝ Երասխ գետին փոսէն գրեթէ 2800 ոտնաչափ բարձր։ Ասիկա Հայաստանին ամենէն գեղեցիկ ու մեծ գեղերէն մէկն էր։ Տիւպոա ասոր բնակչաց թիւը կը դնէ 1000 հոգի, իսկ տներուն թիւը 200։ Բայց աս շատ քիչ է։ Արկուռի գրեթէ 1600 Հայ բնակիչ ունէր. բաց անկէց՝ շատ Քիւրտեր հոս իբրեւ վարձուոր Հայոց քովը կը բնակէին։ Արագած (Ալաքեազ) լերան տակ եղած Գաղարծուզ գեղէն ետքը՝ Երեւանին ալ ինչ մարդաշատ ու բարեկեցիկ չէնն էր Արկուռի։ Իր դիրքը թէպէտ այսչափ բարձր է, բայց բոլորտիքը կը բուսնէին ցորեն ու գարի. հունձքը վրայէ վրայ հաշուելով՝ ցանուածին քառասպատիկն էր։ Արկուռին

[1] Sahatel Chotschaieff.
[2] Nassib Megertschikoff. Chowan Awanesof.

վեր առատ հրային զօրութիւնը թմրած կեցած էր ու միայն գետնաշարժներով կ'իմացուէր։ Անոր համար Ռուայնէկս ճամբորդին պատմութիւնը թէ 1785ին Յունուարի 3ին ու փետրուարի 22ին Արարատ ծուխ ու բոց ժայթքած ըլլայ, սուտ է։ Ցեղային ամենէն ծեր բնակիչներն ալ, որոնց մէջ 100 տարին անցնող մարդիկ կան, այսանկ հրաշնչութիւն մը չեն յիշեր։ Սաղաթիէլ Խոջայեան բսաւ որ "Ես 68 տարիէ ի վեր Մասիսու քով կը նստիմ, եւ իր աւրէն ծուխ ելլելը չեմ տեսեր, նաեւ մեր հայրերն ու պապերն ալ ամենեւին հրաշնչութիւն մը չէին պատմեր,,։ Այ գետնի տակ եղած վառարանն որ իր հրաշէկ շանթերովը ժամանակ մը հին ցամաքին ամենէն զօրաւոր հրաբուխ լեռը դուրս հանած է, այնչափ դարերու հանդարտութենէն ետքը՝ նորանշան ու սարսափելի բորբոքմամբ մը դարձեալ իր ոյժը ցուցուց։

Յամի 1840 Յունիսի 20ին (Յուլիսի 2ին) արեւուն մարը մտնելէն կէս ժամ յառաջ, երբ որ երկինքը բոլորովին պայծառ ու վճիտ էր, Հայաստանի բնակիչները որոտաձայն բոմբիւնով մը զարհուրեցան, որն որ Մեծ Մասիսու մօտերն ամենէն ուժգին ու սոսկալի կը հնչէր։ Մէկ կողմանէ հողը դղրդեց երկու մանրերկրորդ (սանիյէ) կոհակաձեւ (դալղայի ձեւով) շարժելով՝ սկսաւ Արարատէն դէպ ի արեւելք ու արեւելեան հարաւ հոսել եւ գլխաւորաբար Շարուրայ ու Նախիջեւանի կողմերն ահագին աւեր ու կործանում պատճառեց. միւս կողմանէ Արկուռիէն վեր ռուսական մղոն վեր՝ Մասյլ ձորին ճոթը մեծ ճեղքուած մը բացուեցաւ, ուսկից խիտ օդ ու շոգի կ'ելլէր, որոնց սաստիկ ուժովը դուրս նետուած քարերն ու հողերը լեռան վրայէն դէպ ի դաշտ կ'արձըկուէին։ Հրաբխին բերնէն ելած շոգեղէն ամպերը շուտով մը Մասիսու կատարէն ալ աւելի վեր բարձրացան, որոնց մեծ մասը սառուցիկ ջրային գոլորշի էր,

որովհետեւ նոյն գիշերը գրեթէ միայն լերան չորս դին տարափ (տեղատարափ) եկաւ, ուր ամառուան ժամանակ անձրեւելը խիստ ցանցառ բան է։

Շողջին դուրս պաթկալը տանն գոյնզգոյն կ՚երեւար, կարմրագոյնն ու կապուտագոյնը այնոր տատիկն էր։ Ականատեսները չկրցան որոշ ըսել թէ աս ճայթման տանն բոց չկար, վառօդի ինչպէս ըսինք, ելած մխերը կարմրկել գոյն մ՚ունէին։ Սակայն ստոյգ է որ ամենեւին չտեսնուեցան անանկ լուսաւոր հրային (չէ թէ իրօք բոցեղէն) սիւներ, որոնք հասարակօրէն հրաբուխներուն բղխած ժամանակն անոնց բերնին վրայ ու վառած լաւայէն հետ միկտեղ կ՚երեւան։ Գիշեր ըլլար նէ՝ դուցէ կը տեսնուէին, ինչու որ նաեւ Վեզուվ ու Էտնա լերանց դուրս տուած նիւթերուն հրաշէկ կարմրութիւնը միայն մութ տանն տեսանելի է։ Գոլորշւոյն կարմիր ու կապոյտ գոյնը շուտով մը մութ սեւ դարձաւ, եւ անմիջապէս օդն ալ վերջին աստիճանի անախորժ ծծմբային հոտով մը լեցուեցաւ։ Լեռը շարունակ կը թնդար, ու գետինն անդադար որոտումներով կը սասանէր. երկրի տակ եղած մռնչական ու դղրդական ձայներուն հետ միկտեղ յայտնի ու որոշ կը լսուէր օդի մէջ ցատքած քարերուն շառաչիւնը, որոնք ռումբի պէս կը սուլէին։ Աս նետուած ժայռերուն մէջ անհաւատալի մեծութեամբ կտորներ կան որոնցմէ ես անտարակոյս 100 կենդինարէն աւելի կշռող քարեր տեսայ։ Նոյնպէս լերան ներսի դիէն ելած որոտական թնդիւնը կրցեր են յստակ զանազանել աս ճայթմունէն, զորն որ օդի մէջ թռած քարերն իրարու զարնուելով կը պատճառէին։ Աս խոշոր քարերն ուր որ կ՚իյնային, հասարակօրէն հոն կը մնային. լերան ստորոտը խիստ քիչ ծռութիւն ունենալով քարեղէն զանգուածները չէին կրնար այնչափ գլտորիլ։ Աս ժայթքումը կատարեալ ժամ մը տեւեց։ Երբոր դա-

լորշիները փոխուեցան, ու քարէ եւ հողէ անձրեւը դադրեցաւ, եւ ոչ փոքր նշմարանք մը կ'երեւար ան մեծ ու հարուստ Ակոռի գիւղէն. աներեւոյթ եղած էր հռչակաւոր վանքն ալ, նոյնպէս ծածկուած էին ան ամէն դաշտերն ու պտղատու ծառերն՝ որոնք հոն այնչափ տարի անվրդով ու խաղաղ կ'աճէին, եւ առանոց հետ մէկտեղ բոլոր այն բարեշէն ժողովուրդն որ այս պարտէզները անկած ու մշակած էր, դուրս նետուած քարերէն ու մոխրական կոյտերուն տակ թաղուեցաւ: Արկուռի գիւղին բնակիչներէն 1500 հոգւոյ չափ Հայազգիք անհետ եղան, իսկ վարձուոր Քիւրտերէն 400, Ս. Յակոբայ վանքէն 8 անձինք: Տեղացիներէն միայն 114 մարդ կենդանի մնաց, որոնք կէս մը գիւղական գործքի համար շրջակայ տեղուանք գացեր, կէս մ'ալ ճանապարհորդութեան մէջ էին: Արարատի կողմերն եղած ամենա նոյն դժբախտ ժողովրդեան սա պզտիկ մնացորդը Երասխայ դաշտերուն վրայ ցրուած ու դառնագառն թշուառութեան մէջ կ'ապրէր. եւ Նոյեան լեռը դարձեալ այնպէս տխուր ու ամայի կ'երեւար՝ ինչպէս ջրհեղեղին հոն ամէն կենդանի ջնջած ատենը:

Արարատայ սա հրաշնչութեան հետ մէկտեղ կործանիչ երկրաշարժ մըն ալ կար, որն որ ընդարձակ դաշտին վրայ մեծամեծ ազդեցութիւններ ըրաւ: Երասխ ու Սեւջուր գետերուն եզերքին մօտ շատ ճեղքուածներ բացուեցան, որոնցմէ ուժով դուրս ելած օդերը՝ գետոյն ջուրն ու աւազն ու հողի կտորուանքը քանի մը կանգուն վեր նետեցին: Ուրիշ պատռուածներէն ալ դուրս ջուր պղպջակեց: Երասխ գետին յատակը շատ տեղեր պզտիկ բերաններ բացուեցան, որոնց դոլորշային զօրութեամբը ջուրը կարկաջելով վեր կ'ելլէր, այնպէս որ գետին վրայ վերէն ի վար կարգ մը զարմանալի ջրբուխ կամ շատրուան կը ձեւանար, իսկ ուրիշ շատ տեղեր ջուրը գետին

եզերքէն վեր ելաւ ու զանազան կողմերը կոխեց ։ Ճեղքուածներն առհասարակ 8 ոտնաչափէն աւելի բացուած չէին. անոնց մեծ մասը գետնաշարժէն ետքը գոցուեցաւ, բայց շատերն ալ շաբաթներով բաց մնացին, եւ մինչեւ Օգոստոս դեռ կը տեսնուէին, մանաւանդ Երասխայ յատակը, ուր շատ տեղեր ջուրը միշտ խոխոջալով վեր կը ցայտէր, քանի մը տեղ ալ յորձանաւոր պտոյտ մ'ընելէն ետքը կը վազէր կ'երթար ։ Ասիկա շատ նմանութիւն ունէր ժահաշնչութիւն (mouffette) ըսուած երեւութին հետ, որ Վեսուվ լերան բռնկելէն ետքը հասարակօրէն չորս դին կը տեսնուի. բայց ասով կը տարբերի որ Արարատայ մերձակայ տեղուանքը շարժը դադրելուն պէս՝ օդին արտաշնչութիւնն ալ դադրեցաւ, ուր Վեսուվին քովերը օրերով, երբեմն ալ ամիսներով կը տեւէ ։ Մասիսու արեւելեան ու հարաւային կողմը պատահած աւերները հիւսիսային դին եղածէն անհամեմատ աւելի ահագին էին ։ Երեւան քաղաքն որ մօտաւոր է, մինակ մէկ քանի տներ քիչ մը վնաս քաշեցին, իսկ Նախիջեւան, պարսկական Հայաստանին Մակու քաղաքն ու Տաճկաստանին Պայազիտ քաղաքը բազմաթիւ տներ հիմնայատակ եղան ։ Պաշտօնական (րէսմի) հաշիւներուն նայելով՝ Նախիջեւանի, Շարուրայ եւ Աստապատի (Էրտուպատ) կողմերը փլած տներուն թիւն է 6000 ։ Խիստ շատ մարդիկ կը կորսուէին, եթէ գետնաշարժը քանի մը ժամ ուշ պատահէր, վասն զի բնակիչները հնձողաց ամառուան սովորութեանը համեմատ՝ իրիկուան զով օդը վայելելու համար իրենց տներէն ելած գացած էին ու բարեբախտութեամբ դեռ տուն չէին դարձեր ։ Փլած տներուն տակը մնացող մարդիկներուն թիւը համեմատութեամբ քիչ է ։

Որչափ որ մարդուս միտքը կը յիշէ, յառաջակողմեան Ասիան եւ մանաւանդ Հայաստանը քան-

դող երկրաշարժներուն մէջ 1840ինը ամենէն սոսկալի ու ամենէն տարածեալ գետնաշարժներէն մէկն ըլլալով՝ սաստկութեան սահման կամ անոր տարածութեան շրջանակն ալ ըստ այսմ կրնար որոշուիլ։ Հումբոլդ մեծանուն բնախոյզն Ասիայի մէջ սաստկութեան երեք սահման կը դնէ, որոնք երեք գլխաւոր հրաբխային վառարան ունին կամ հրաբուխներու երեք խումբ են, եւ որոնց հրաշնչութիւններն ու երկրաշարժներն աւելի իրարու քան թէ ուրիշ տեղ պատահած՝ նոյնօրինակ երեւոյթներու կը նմանին։ Հումբոլդ Ասիայի արեւմտեան կողմը սաստկութեան շրջանակ կը դնէ ան հրաբխային սահմանը՝ որն որ կը պարունակէ Ատրպատական գաւառը, Հայաստան, Կասպից ծովին եզերացը վրայի Ապուշերան թերակղզին ու Կովկասը։ Արարատ աս հրաբխային սահմանին գրեթէ կեդրոնն է. եւ կ՚երեւայ թէ աս ընդերկրեայ շարժման գլխաւոր կայանն ըլլայ։ Տփղիս ինծի ցուցուած պաշտօնական գրուածներուն մէջ դժբախտութեամբ միայն ան տեղերը յիշուած էին, ուր գետնաշարժը վնաս մ՚ըրած էր. իսկ ան դեհերն ուր որ սաստկութիւնն իր քանդիչ ազդեցութիւնը չէր ցուցուցեր՝ համրուած չէին։ Բայց բնակչաց վկայելովն իմացայ որ հիւսիսային կողմերը գրեթէ բոլոր Վրաստանի մէջ ու Կովկաս լերանց մինչեւ հարաւային ոտքը սաստկութիւն ու երեր տեսնուեր է, իսկ Կովկասի հիւսիսային կողմը չէ հասեր։ Բայց Պարսկաստանի ու Քիւրտիսթանի (այս ինքն Պարսկական ու հարաւային Հայաստանի գաւառներուն) մէջ գետնաշարժը շատ յառաջ գացեր է։

Աս երկրաշարժին՝ աղբիւրներու վրայ ըրած ազդեցութիւնը ուշադրութեան արժանի բան է։ Արարատի վրայ եղած “Սուրբ Յակոբայ անուանի աղբիւրը„ նոյն ատենէն իր ընթացքը փոխեց, ու հիմա լեռնէն դուրս նետուած քարերուն ու հողերուն մէջ

ուրիշ տեղէ մը կը բխէ։ Ակուաի քովի աղբիւրն՝ որ յաւաշխարհային յատակ ու ախորժ ջուր մըն էր, Հրաշխութենէն ետքը պղտոր է ու անախորժ եւ ծծըմբային համ մ'ունի։ Նախիջեւանի բոլորտիքը գրեթէ երեսուն աղբիւրներու ջուրը քիչ մը աղեն կորեցաւ, Միկրանի վճիտ աղբիւրներ ալ սկսան պղտոր ու կաթնագոյն ջուր մը բխել, որոնց նախընթաց համն ալ փոխուած էր։ Քանի մը աղբիւրներու ջուրն ալ շատ յորդառատ վազելու սկսաւ, զոր օրինակ Սարդարակ գեղին մօտ Իշխանակ ու Սեւջուր աղբիւրները։ Կ'երեւայ թէ ան յառաջուան երկրաշարժներուն մեծման որ Հայաստանի այնչափ ատեր պատճառեցին, աղբիւրներու վրայ նոյն տեսակ այլայլութիւններ ունեցած ըլլան։ Աս եղանակաւ էր որ 1827ին երկրաշարժէ մը ետքը Կումրիին Հիւսիսային կողմը Գեղշլակի մօտ աղուոր համեղային ջերմուկ (կաղիւռն) մը բացուեցաւ, որն որ ածխային թթու (acide carbonique), լուծիչ ալ ու երկաթ ունի, բայց սաստիկ գեղեցիկ աղբիւրը գործածող չկայ։



## ՏԱՍՆԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

Արարատայ երկրորդ սարսափելի արկածն ու աղմուտ ջրոյ Հեղեղը։ Դուրս նետուած հողերուն ու քարերուն բնու-թիւնը։ Սուրբ Յակոբայ վանքին աւերը։ Ջրերուն ու գե-տային հունին վրայ քննութիւն։ Աւերակաց Թանձրութիւնն ու տարածութիւնը։ Արարատի փլած չլլալուն նորանոր ցոյ-ցեր։ Հրաբուխ լերանց վրայ ծանօթութիւններ։ Արարատայ ներքին ամբաւ ջրերը, արտաքին փայլուն երեսը, վերին ծայրն ու բնապատմական վիճակը։ Արագած ու Արարատ լերանց բաղդատութիւնն ու Արագածին անհամեմատ գեղեցկութիւնը։

ԱՐԱՐԱՏԻ նորանշան հրաշնչութենէն չորս օր ետե-քը յաջորդեց երկրորդ աղէտք մ'ալ, որն որ լերան ստորոտին վրայ աւերն ու քանդումն աւելի եւս յա-ռաջ տարաւ։ Երբ որ հրաբխի ան բերանն, որմէ Թանձր գոլորշիներն ու ահագին զանգուածով քա-րերն ու հողերը դուրս նետուած էին, գոցուեցաւ, մի եւ նոյն տեղը ձեւացաւ խորունկ աւազան մը, ուր անձրեւը, հալած ձիւներուն ջուրն ու վերէն վա-զող մէկալ վտակները լեցուելով՝ պզտիկ լիճ մ'ե-ղաւ։ Ասոր քովերը դիզուած մեծամեծ քարերն ու կաւային հողը զօրաւոր Թումբ մը կ'ըլլային, եւ լի-ճը հրաբխի բերնի մը պէս չորս դիհաց կը պատէին, բայց ժողվուած ջրաշեղջին ծանրութեանն ու ճըն-շելովը խախտեցան ու բացուեցան։ Նոյն տեղէն ան աղմալից ջուրը հեղեղներով ու սոսկալի ուժով վար վազեց, դաշտը կոխեց եւ Սեւջուր գետակին մէջ մտնելով՝ շատ տեղ անոր ճամբան գոցեց, այն-պէս որ Սեւջուրին ընթացքը փոխուեցաւ։ Նոյն մօ-րուտ հեղեղն Ակոռի գեղէն՝ հրաշնչութեան վնաս-ներէն ազատած պարտէզներուն մէկ մասը բոլորովին ապականեց, ծառերը, խոշոր ժայռերու կտորներն ու փլատակներու տակ մնացած մարդիկներուն մար-մինները առաւ տարաւ, կէս մը դաշտի վրայ գլոր-ցուց տարածեց, կէս մ'ալ Սեւջուրին յատակը քշեց նետեց։ Աս աղմուտ հեղեղը Յունիսի 24ին (Յուլի-սի 6ին) սկսելով՝ երեք հեղ կրկնուեցաւ, եւ ամէն

մէկ անդամուն նաեւ գետնի տակէն գոռում գոչում ալ կը լսուի եղեր։

Այսպէս պատմեցին մեզ տաւուր բնակիչները, բայց առջի վանդէն ազատողներուն մէջ այս դէպքին ալ ի մերձուստ ականատես եղող մարդ մը չկար։ Շատ հաւանական է որ այս վերջի աւերումներն ալ Մասիսու հին բերնին հրաբխային ծիգերէն յառաջ եկած ըլլան։ Այս անդրընդային խառնարանը[1] դեռ բոլորովին գոցուած չէր, եւ նորէն նորէն ժայռ ու գայռ դուրս կը ժայթքէր, ուստի դիզուած ամբարտակին մէկ մասին փլչիլն ալ ուրիշ բան չ'երեւար, բայց եթէ ներքին հրաբխային գործողութենէ պատճառած ու անոր ընկերացած երեւոյթ մը։ Շատ կը ցաւիմ որ այս երկրորդ աղէտքին ճիշդ տարրագրութիւնը մէկէ մը չկրցայ լսել։ Վստահելու մարդ մը չգտայ որ խնդրի որոշ ցուցընէ թէ այս առեղծական[2] աղմուտ հեղեղներն ուսկից վազեցին։ Ակոռի գեղին բնակիչներէն կենդանի մնացող քանի մը անձինք՝ որոնք առաջին բռնկելուն մօտ ու ականատես էին, անոր կրկնուելէն վախնալով՝ հեռաւոր հովիտները քաշուեր են. իսկ այն թափառական Քիւրտերն որ այս հարուստ գեղին կործանումը լսելուն պէս՝ մեծագին բաները փլատակներու մէջէն հանելու համար աճապարած եկած էին, իրենց կողոպուտ ժողվելու ատենը վար գլորած զանգուածներէն զարնուեր մեռեր են։ Երկայն ժամանակ հոս տեղս անդնալի մնաց, որովհետեւ այն լուծեալ կաւոտ հողը լերան ձորին վերի ծայրէն մինչեւ գաշտ լայնատարած ճահիճ մը շիներ է, այնպէս կակուղ ու խորունկ

[1] Ի հնուց ի վեր բնախօսները հրաբուխ լերանց բերանները խառնարան (κρατήρ, cratère) կ'անուանեն, իբր թէ ասոնք Հեփեստոս ստորերկրեայ դարբին չաստուածոյն բաժակներն եղած ըլլան։

[2] Énigmatique, հանելուկի պէս ծածուկ ու դժուարաւ մեկնուելու։

որ նոյն իսկ թռչունները չէին յանդգներ վրան դալու կենալու, բայց վերջէն կամաց կամաց չորցեր է, ու հիմա բարակ եւ բաց թուխ հողի մը դարձած է Շատ հաւանական է որ աս նիւթը շոգիներուն զօրութեամբը փշրուած արատոյ քարէ[1] գոյացած ըլլայ, ինչու որ աս այլ Ամերիկայի Կիտոյ (Quito) գաւառին հրաբուխներէն դուրս նետուած նիւթին (moya) պէս՝ գլխաւորաբար խճային ու կաւային հողէ բաղադրուած է, որոնք արատոյ քարին բուն էական մասունքն են։

Արարատի վրայ եղած ատենս ժամանակիս մեծ մասը զոհեցի աս տեղերուն դիտողութեանը, որոնք նետուած քարերէն ու տիղմերու հեղեղէն այնչափ աւեր ու աղականութիւն կրեցին։ Դուրս ցատքած քարերուն մեծ մասը արատոյ քարին այլեւայլ տեսակներն են, որոնց մէջ նաեւ ակնվանի (cristal, պէլլօր թաշը) եւ ուրիշ ապակենման նիւթեր այլ կան։ Ասոնք շոգիներուն ուժովը լերան վրայէն 8—10 ռուսական մղոն հեռու նետուած են։ Արարատի բերնէն երբեմն ահագին յորդութեամբ լաւայի պէս վազած պղպջակաւոր ու փրփրանման սեւկակ քարը նոր փլատակներուն մէջ ամենեւին չկայ։ Հիմնական արատոյ քարերուն մէջ աւելի ծծըմբախիճ[2] կը գտնուի, որն որ շքեղ ու փայլուն գունովը՝ աւերա-

[1] Արատոյ կամ տրաքիտ քարին վրայ Ցես Բնական պատմութիւն, Վիեննա 1842—1844, Բ. Հատոր, Երես 187։

[2] Գղ. Pyrite sulfureuse. գրմ. Schwefelkies, որն որ ծծըմբէ (քիւքիւրթ) եւ երկաթքարէ կամ խճէ (չախմախ թաշը) բաղադրուած է. գոյնն ու տեսքը ոսկիի կամ արոյրի (թէլէյինի) կը նմանի, ու անկիւնաւոր խճի պէս հատ հատ կ'ըլլայ, որոնք շատ անգամ իրարու քով գալով կը միանան եւ մեծամեծ բազմահատ ու ոսկեփայլ զանգուածներ կը կազմեն, զորն որ չճանչցողները շատ հեղ խաբուելով՝ ոսկեղէն կամ ոսկեխառն հանք կը կարծեն։ Ասիկայ ամէն տեսակ լեռներու մէջ ու ամէն ձեւով կը գտնուի եւ գլխաւորաբար մէջէն ծծումբ հանելու կը գործածուի։

կը շատ տեղ կը զարդարէ. Նոյնպէս քարերուն վրայ կպած դեղնագոյն կեղեւներ կը տեսնուին, որոնք Արարատի յառաջագոյն դուրս տուած ժայռերուն վրայ չկան:

Իմ Հայ ուղեցոյցներս Ս. Յակոբայ վանքին տեղը իսկ ցուցուցին: Աս արեւելեան կողմը վերէն վար վազող աղմկալից հեղեղը փլատակներու մէջէն իւրեն ճամբայ մը բացած էր, որն որ գրեթէ 20 ոտնաչափ խորութիւն եւ երեսուն ոտնաչափէն աւելի լայնութիւն ունի: Հիմակ հոսկից կը վազէ պզտիկ վտակ մը աղտոտ ու դեղին ջրով, որն որ հալած ձիւներէն կը գոյանայ: Աս վտակին ալ՝ որ Մասիսին դուրս նետուած ժայռերուն մէջէն կ'անցնի եւ երեք տարիէ ի վեր շատ մը հող ու քար առած տարած է, ասիկ ծծըմբային համ մ'ունի, այնպէս որ ջուրը գրեթէ խմելու բան չէ: Բայց լերան վերի գիտերը, ինչպէս ես ալ խմելով փորձեցի, ամենեւին ծծըմբի համ չկայ: Նմանապէս մէկալ ջրշեղջներին ալ՝ որ Արարատին ժայթքած զանգուածներուն մէջ ժողվեր ու լճացեր են, անոնց մէջ եղած ծծըմբուտ մասունքն ընդունելով՝ ժանտ ու ծծըմբահոտ ճաշակ մ'ունին Աս լճակներուն յատակը դեղին ու դեղնակարմիր թանձր ծծըմբի մրուր (Նօշնօս) կայ: Վանքին տեղը հիմա պզտիկ հարթ ու դիւր տափարակ մըն է. աս Հակոռուոյ վանքին պարտէզին ու գերեզմաննոցին վրայ փլատակները բարձր բլուր մը ձեւացուցած են: Գուցէ վանքը՝ վրան նետուած զանգուածներուն զօրութեամբը ճզմուելէն ու փլելէն ետեւ՝ աղմկալից հեղեղը վազած տանի՝ բոլորը մէկտեղ տարած քշած ըլլայ: Վանքին մէջ եղող խեղճ անձինք՝ որ աս Նոյեան լերան մարդաբնակ մասերուն ամենէն բարձր տեղը բարեպաշտութեամբ կ'ապրէին, աս աւերակաց վիհերուն մէջ սոսկալի գերեզմաննին գտան: Նաեւ մասնաւորապէս հարցուցի Կարապետ վանահայրը,

զորն որ այնպէս գեղեցիկ ու սրտաշարժ կը տարա-գրէ Բաւոզ։ Ասիկա աշխատասէր ու զուարթ ծե-րունի մըն էր, եւ գերեզմանը յառաջուընէ փորել ու որմել տուած էր. Թէպէտ Պարսիկներէն շատ տառապանք կը կրէր, բայց միշտ Նոյի լերան պա-հապան կը կենար։ Ինք Արարատայ հրաշնչութենէն յառաջ մեռած էր, բայց աւերակներու տակ իր գե-րեզմանն աներեւոյթ եղած է։ Ակոռի գեղէն ալ եւ ոչ ամենափոքր նշմարանքը կը մնար, եթէ յափշտա-կուէր Քիւրտերը դժբախտութիւնը լեռնուն պէս՝ բան գողնալու համար մէկքանի տեղեր շուտ մը ե-կած ճամբայ բացած չըլլային։ Զանազան տեղուանք՝ ուր քարերն ու հողերը շատ ծանր չըլլալով՝ չէնքերը բոլորովին փլցուցած չեն նէ, ծակեր ու խոռոչներ կը տեսնուին, որոնցմէ դուրս եղած են ասդին անդին աներուն յարկի գերանները։ Մենք ցուրտ գիշերները բացօթեայ եղած ատեններս՝ աս գերանները կը վառէինք։ Երիկուն մը տեսայ որ Լինծի հետ մէկտեղ ե-կող Հայերուն մէկը վերջին աստիճանի տխուր դէմ-քով գերան մը կրակը կը դնէր. "Ասիկա իմ տանս մէկ գերանն է" ըսաւ դժբախտ մարդն ու աչուըներն արցունքով լեցուեցան։ Իր տանէն 23 հոգի կոտորե-ցուցեր է, կին, զաւակ ու թոռունք. ինք ունեւոր ու երջանիկ է եղեր, բայց հիմակ իր ծերութեանն ա-տեն մինակուկ մնացած էր ու ամենադառն աղքա-տութեան մէջ կը տառապէր։

Անդր քանի որ Մասյլ ձորէն վեր կ'ելլէ, աւե-րակաց տեսքն ալ այնչափ աւելի տխրական ու քստ-մնելի կ'ըլլայ։ Հոս քարեղէն լեռներ դիզուած են, անոր համար ալ վեր ելլելը դժուար ու տաժանելի է։ Գրեթէ մինչեւ Ս. Յակոբայ աղբիւրը կրցայ ձիով ելլել, բայց անկէ անդին ստիպուեցայ ձին թողուլ ու ոտքով քալել։ Ան տեղերն ուր որ շողիկները գե-տինը պատռելով Արարատի վրայ բերան բացած են,

դիզուած քարերուն ձեւը վարիններէն տարբեր է. Հոս վերի կողմերուն քարերը յաճախ բոլորակ ձեւով կեցած են եւ իրենց մէջտեղը ջրով լեցուած խորունկ տեղեր կան: Աս լճակներուն քով մօտիկցողը մեծ վտանգի մէջ կ'իյնայ, որովհետեւ գետնին կաւը սաս-տիկ կակղցած է, եւ ինչ որ վրան կու գայ նէ, անմիջապէս կ'ընկղմի կը թաղուի. Աս կաւին վրայ մե-ծամեծ քարեր նետեցի, եւ իսկոյն ամէնքն ալ աներեւ-ոյթ եղան: Հաւանական է որ ասոնք յառաջագոյն աւելի մեծ ու միանգամայն աւելի խորունկ եղած ըլլան, ինչու որ ամէն տեղ կը տեսնուի թէ վազած ջրերուն զօրութեանը մինչեւ հիմա շատ փոխուած են: Արարատայ Մասյլ ձորը ծածկող զանգուածին թանձրութիւնն իմանալը միայն ան ատեն կարելի էր, երբ որ մարդ աս կողմերը յառաջուան վիճակին մէջ տեսած ըլլար: Տեղացւոց ստորագրութեններէն հետեւ-ցընելու որ ըլլամ, զանազան տեղերուն նայելով 20էն մինչեւ 200 ոտնաչափ թանձրութիւն կրնամ սեպել: Թէ դուրս նետուած եւ թէ հեղեղներով վար բե-րուած ու տարածուած քարեղէն ու կաւային զան-գուածները 25 մղոնէն աւելի երկիր կը ծածկեն:

Պր. Վոսկոբոյնիկովին կարծեացը համեմատ՝ Ա-րարատայ վերի ծայրէն մեծամեծ ժայռերու կտո-րուանք փլած ըլլային նէ, հիմա լերան ձեւը փո-խուած եւ իր ահագին ապառաժներուն մէկ երեւելի մասը կորսուած պէտք էր ըլլալ, ինչու որ անոր վերայէն այսչափ ամբաւ նիւթ վար եկած կ'ըլլար: Աս դժբախտութիւնը պատահելէն ետքը Պետըրբուրգի լրագիրներուն մէկէն առնուած լուր մը կարդացի, որուն մէջ կ'ըսուէր թէ սոսկալի գետնաշարժով մը Մասիսու ձեւը փոխուեցաւ. իր երեք կատարները քովէ քով եկան միացան ու հարթ տափարակ ե-ղան: Աս լուրն ալ սուտ գտայ: Պր. Աբովեան ըսաւ որ լերան ձեւը ճիշդ այնպէս է, ինչպէս որ 1829ին

Բառուողին հետ միջին կատարին վրայ եղած ատենն էր։ Ամէն Հայերն ու Թաթարներն որոնց հարցուցի, միաբերան հաստատեցին թէ Արարատայ ձեւը նոյն արկածէն ետեւ բնաւ ամենեւին այնպէս մնաց, ինչպէս որ յառաջագոյն էր։ Սաղաթիէլ Խոճայեան ծերունին կարծելով որ ես իր ու իրեն հայրենակիցներուն քամծին վրայ կը տարակուսիմ, ջերմութեամբ մը անանկ խօսեցաւ. «Տղայութենէս ի վեր Մասիսը միշտ աչքիս առջին է, անոր վրայ եղած մանր փոփոխութիւնն ալ աչքէս չէր փախչեր»։ Դարձեալ եթէ սա զանգուածը ստուգիւ Արարատայ վերի ծայրէն փրթած ու ձորին մէջ ինկած ըլլար, այնչափ (գրեթէ 10,000 ոտնաչափ) բարձրութենէն վար իյնալուն զօրութեամբը նոյն տեղը պէտք էր որ կենար մնար ու մեծ լեռ մը ձեւացընէր։ Բայց եթէ ըսուելու ըլլայ որ գետինը ծուռ ըլլալուն համար՝ ինկած տեղը չկեցաւ ու դարվար մինչեւ Ակուռի գլտորեցաւ, ան ատեն գեղին բնակիչները ժայռին փրթելուն որոտումը լսելէն ետքը՝ կրնային դիւրութեամբ փախչելու ժամանակ գտնել, որովհետեւ վար գլտորած խոշոր կտորուանքը իրենց հասնելու համար՝ հինգ ռուսական մղոնէ աւելի երկայն ճամբայ պիտի ընէր, եւ ան ալ քիչ ծռութիւն ունեցող տեղւոյ մը վրայ։ Մտածելու բան մըն ալ սա է որ ինչպէս 30 ոտնաչափ բարձրութեամբ ու 40 ոտնաչափ երկակարով (տրամագծով) խոշոր ու բոլորակին խորտուբորտ ժայռերը կրնան գրեթէ 15 ռուսական մղոն գլտորելով երթալ անանկ գետնոյ մը վրայ, որ շատ տեղեր ամենեւին ծռութիւն չունի։ Աս քարերը լերան մէջէն հեռու նետուելուն ու վար իյնալուն ուժովը, նաեւ իրենց սեպհական ծանրութեամբը հողին մէջ խորունկ մտած են։

Զարմանալի բան մըն է որ աս աւերակներուն տեսարանին մէջ քանի մը տեղուանք բոլորո-

միջին անվնաս մնացեր են, ինչպէս Ակոաւիէն վեր պար-տէզի մը պզտիկ մասը։ Հոս դեռ 14 հատ պտղատու ծառեր կային, որոնց տակ իմ տաղաւարս կանգնած էի։ Խոտն ու առուոյտը գետինը ծածկած էին, եւ նոյն իսկ պարտէզին ակար ցանկորմը տեղը կեցած էր։ Պարտէզին աս մասը խորունկ ալ ըլլալով՝ անկարելի էր որ վերէն վար վազող հեղեղներուն հոսանքէն ա-զատէր։ Ասիկայ ուրիշ կերպով չիկրնար մեկնուիլ, բայց եթէ ասով որ դուրս ցատքած քարերն ասոր բոլորտիքը թումբ մը ձեւացընելով թող տուած պի-տի չըլլան որ հեղեղները պարտէզը մանեն։ Հիմակ Ա-րարատի վրայ ասանկ կանաչազարդ տեղերը Ափրի-կէի լայնատարած անապատներուն մէջ եղած Ովա-ներուն [1] պէս նորանշան տեսք մ'ունին։

Մեծն Մասիսու 1840ին երկրաշարժները շատ տար-բեր են անոնցմէ, որոնք դեռ չմարած հրաբուխներուն բռնկելու ատենը կը տեսնուին։ Հոս ոչ կրակի սիւ-ներ երեւցան, ոչ ալ յատուկ լաւա վազեց, այլ դուրս նետուած նիւթերն էին միայն քարային ու հողային զանգուած, ու տեղ մը հրային ու տաք հոսանք չկար։ Այն մեծ քննախոյզը (Հումպոլտ), որ Ամերիկայի հրա-բուխներուն վրայ սքանչելի ծանօթութիւններ տը-ւաւ, շատ ճահաւոր դիտողութիւն մը կ'ընէ․ Հրա-բխային զօրութիւնները, կ'ըսէ, երկայն ատեն հանգ-չելէն ետեւ իրենց նոր ճամբայ բանալու որ ըլլան, անանկ մասնաւոր գործքեր յառաջ կը բերեն որ նախ-

[1] Ովա (Oasis, oase) Ղպտերէն բառ կը համարուի ու կը մեկնուի Հանդրուան, Շէնավայր, Բնակավայր։ Հին ա-տենները ասիկայ իբրեւ յատուկ անուն գործածուելով կը նշանակէր Եգիպտոսի արեւմտեան դին եղած անա-պատին մէջի մէկ պզտիկ գեղն ուր հասարակօրէն աք-սորեալները կը խրկուէին. Իսկ հիմակ անունին նմա-նութեամբ ան ամէն տեղերուն կ'ըսուի, որոնք ահագին անապատներուն ու ամայի աւերներուն մէջ ջուր, դալա-րիք, մշակելու երկիր եւ քիչ շատ բնակիչ ունին. կա-րաւանները հանգրուան կ'ըլլան ու իբրեւ թէ աւա-զերէն ծովու մէջ կանաչաւէտ կղզեակներ են։

ընթացք կամ ապագայ ժամանակներու ժայթքումներուն հետ ամէնուն չէին կրնար բաղդատուիլ: Դարերէ ի վեր Հայոց լեռնադաշտաներուն հզօր հրաբուխներն իրենց կենդանութիւնը նշանով մը չէին ցուցըներ, բայց չէր կրնար ալ ըսուիլ որ բոլորովին մարած են: Ուրիշ շատ հրաբուխներու վրայ ալ տեսած ենք որ խիստ երկար ժամանակ հանգիստ կ'ըլլեն, դարերով անգործ կը մնան, ու յանկարծակի իրենց հին ուժգնութեամբը կ'արթըննան եւ իրենց աւերները նորէն կը սկսին: Այսպէս Վեզուվ մինչեւ Քրիստոսի թուականին 79երորդ տարին պատահած մեծ հրաշնչութեան ատենը բոլորովին մարած կ'երեւար, ու մինչեւ իր կատարը ծառերով զարդարուած էր: Ստրաբոն նոյն լերան արտաքին նշաններէն միայն հետեւցուց որ անիկա յառաջուան ատեններն ալ կրակ արձակած ըլլայ, բայց պատմական դէպքով մը չկրցաւ ցուցընել: Իսկ Վիկտոր Աւրելիոս նաեւ որոշակի կ'ըսէ որ Վեզուվ 79ին բռընկելու սկսաւ: Նոյնպէս կը համարուէր Եպոմէօ հրաբուխն ալ մինչեւ Քրիստոսի 40երորդ տարին: Ամերիկայի մեծամեծ հրաբուխները հասարակօրէն 100 տարուան մէջ միանգամ կը բռընկին: "Հրաբուխներուն կենդանութիւնը, կ'ըսէ Հումբոլդ, իրենց՝ երկրին ներսի կողմերուն հետ ունեցած կապակցութեան կերպէն ու տեւողութենէն կախում ունին: Շատ հրաբուխ լեռներուն վերաշընչութիւնը ժամանակ ժամանակ կը հանգչի, ու ան ատեն կը դադրի իրենց գործողութիւնը, երբոր մթնոլորտին՝ երկրիս ներսի կողման հետ ունեցած հաղորդակցութեան միջնորդ եղող խողովակը կը գոցուի":

Այսպէս նաեւ կրնայ ըլլալ որ Հայաստանի երկայն ատեն հանգչող հրաբուխները նորէն արթըննան, ու Արարատի նորատեսիլ դէպքը յետագայ մեծագոյն հրաշնչութեանց գուշակ ըլլայ: Հոս այնչափ յաճախ պատահած աշխարհաւեր գետնաշարժ-

ները, որոնք բուն ներքին պատճառին նայելով՝ հրաբխային զօրութեան հետ ըստ ամենայնի նոյն երեւոյթներն են, կը ցուցընեն թէ ան հին վառարանը՝ որմէ խիստ յառաջ ժամանակաւ Հայաստանի հսկայական հրաբուխները գոյացեր եղած են, դեռ ընդերկրեայ տեղուանք կենդանի է. Թէպէտեւ վառարանին հիմնական ուժգնութիւնը չիկրնար ամենեւին համեմատուիլ ան յառաջուան ժամանակներուն զօրութեանը հետ, որ ատեն Արարատ, երկնաբերձ Արագածն ու Գեղամայ ծովակին քովի հրաբլուրներն իրենց բորբոքեալ ծոցէն ամբառ լաւայի հեղեղներ հանեցին: Երկրին տակի կրակը շատ հաղորդաւոր տարրներէ ի վեր երթալով սաստիկ խորունկ տեղ իջաւ, ուստի գուցէ բորբոքեալ հանքը ըրած ճիգերը թեպէտ գետինը սասանելով քաղաքներ կը քանդեն, բայց ինք շատ անգամ վերայի հողին թանձրութիւնը չէկրնար պատռել ու ելլել: Գրեթէ երբ 1840ին առաջին անգամ տեսնուեցաւ որ ստորերկրեայ օդերն ու շոգիները հողը պատռեցին ու բռնութեամբ իրենց ճամբայ բանալով դուրս ելան:

Աս դէպքին ընկերացած երեւոյթները քիչ շատ կրնանք մեկնել նոյն իսկ Արարատայ ներքին ազդեցութենէն: Շատ նշանաւոր բան է որ այսպիսի բարձր, մեծ ու ամբառ ձիւներով ծածկուած լեռնէն այսչափ քիչ աղբիւր ու միայն քանի մը ձիւնաջրի վտակ կը բխէ: Բոլոր մեծ Մասիսու վրայ միայն երկու աղբիւր կայ, իսկ փոքր Մասիսու վրայ եւ ոչ մէկ հատ, ուր Արագած լեռնէն՝ որ ամենեւին անանկ սաստիկ ձիւնապէզ չունի, քառասունէն աւելի յորդառատ աղբիւր կը վազէ: Ձիւներուն հալելը սկսած ատեն Մասիսու վրայէն վազած քիչ վտակները վերջին աստիճանի սակաւաջուր են, ուր Ահմանեան հրաբուխ լեռնէն, որ մեծութեամբ կողմանէ ամենեւին չէկրնար Արարատայ դիմացն ելլել, այնչափ վտակներ ու աղ-

բիւրեղներ կ'իջնան, որ Սեւանայ մեծ լիճը կարող կ'ըլլան լեցընել, մանաւանդ թէ լճին գոլորշի դարձած ջրէն շատ աւելի կը բերեն: Բառով՝ ինչպէս ուրիշ անգամ ալ ըսինք, կարծեց թէ Մասիսու ստորոտին մօտ եղող Սեւ Ջուր գետակին ան ջուրերէն գոյանայ, որոնք ձիւներուն հալելու ատեն գետնի տակէն ճամբէ մը անցնելով՝ Սեւ Ջուր գետակին ակունքը գան: Քանի մը պարագաներ սա ենթադրութեան դէմ կ'ելլեն. նախ՝ Սեւ Ջուր գետակին աղբերակունքն ամառը (ձիւներուն բուն հալած ժամանակը) քիչ ջուր կը բխէ. ասոր հակառակ ձմեռը շատ աւելի առատ ջուր կու տայ, ո՛ր ատեն բոլոր Արարատ թանձր ու պինդ սառոյցներէ բովանդակ պատած ըլլալով՝ ամենեւին ձիւնաջուր չ'ունենար: Դարձեալ՝ Սեւ Ջուր գետակին ջուրը Մասիսու այնչափ բարձրութենէն իջնալու որ ըլլար, բոլորովին տարբեր ուժով ու ցայտելով մը պէտք էր գետնէն դուրս ելնել, որն որ Սեւջուրին աղբերակաց վրայ երբեք չիտեսնուիր, ուր եւ ոչ փոքր պղպջակ կամ եռացք մը կայ:

Ուստի անտարակոյս կ'երեւայ թէ Արարատ լերան մէջ ահագին ջրամբարներ կան, ուր ձեան ու անձրեւի ջրին մեծ մասը պզտիկ ճեղքուածներէն վազելով կ'երթան կը ժողվին: Կրնայ ըլլալ որ ընդերկրեայ լիճ մը Արարատայ ներսի պարապ միջոցները լեցընէ, որոնք՝ ան յաղթամարմին հրաբխին ուժելով երկրէն դուրս ելլելու ատենը՝ ներսի դիրէն դատարկ մնալով ձեւացած ըլլան: Ա՛ս գտնելու որ ըլլանք, 1840ին աղէտալի դէպքերը, մանաւանդ Արարատէն բորբոքած անչափ ջրերը պարզ կերպով մը կրնան մեկնուիլ: Արարատայ հրաբխային վառարանը շատ խորունկ՝ ուստի եւ ջրերու ժողովներէն աւելի վար պիտի ըլլայ, արդ երբոր անոր վրայի ահագին ջրերը ճամբայ մը բանալով՝ ներքին հրային վառարանին վրայ թափելու կը սկսին նէ, անմիջա-

պէս անհնարին շոգի կը դիմանայ, որն որ իր ուժգին ու անընդդիմակաց տարածութեամբը գետինը շարժելով ու սասանեցընելով՝ քանի դուրս ելլելու ճամբայ մը պտտելու բանալու ճիգ կ՚ընէ: Բայց որովհետեւ ան առաջին հին ճամբան կամ լերան կատարին բերանը շատոնցուընէ սաստիկ թանձրութեամբ, քարերով ու մշտնջենաւոր ձիւներով գոցուած էր, շոգին լերան կողերուն զարկեր է, ու հոն այնչափ ընդդիմութիւն մը չգտնելով՝ ծակեր դուրս է ելեր: Հիմակուան վառարանին խորութիւնն ու այնչափ մեծ ջրաշեղջները, որոնց մէջէն հրաբխային զօրութիւնն իրեն ճամբայ գտաւ անցաւ, ստորերկրեայ կրակին ուժը չափաւորեցին՝ շոգիներուն սաստկութիւնը տկարացընելով. ուստի եւ ոչ հրային սիւներ, եւ ոչ ալ հալած նիւթ երեւան ելաւ, հապա միայն անբաւ ու անչափ գոլորշի, որն որ ապառաժները պատռելով՝ դուրս ժայթքեց, ու պատճառած աւերածին կողմանէ յառաջուան հրաշնչութիւններուն գուցէ մէկէն ալ եւս չմնայ:

Նաեւ Արարատի հիւսիսային կողմանէ դար վեր ելայ մինչեւ ձեան զանգուածներուն սկիզբը, ուր ձիւնը սաստիկ հալելու սկսած էր: Հոս ծովին երեսէն 7000 ոտնաչափ բարձր տեղւոյ վրայ բովանդակ աւերածը կը տեսնէի, որն որ հողմահարի (Եէլչեովլէ) մը ձեւով դէպ ի վար տարածուած էր: Իմ վերեւս ամենապարզ երկնքի տակ Ջրհեղեղեան լերան ճերմակ ու հսկայական գլուխը կը շողար: Հոս մարդուն աչքը Մասիսու բարձրութեան վրայ զարմանալի կերպով մը կը խաբուի: Արարատայ միջին կատարը հասնելու համար իրմէ վեր դեռ ամբողջ 9000 ոտնաչափ կար, այսու ամենայնիւ ինծի անանկ կ՚երեւար որ շուտ մը պիտ՚որ հասնիմ: Թէպէտ ամէն լերանց ձիւնապատ կողը կամ գլուխը բնականէն շատ աւելի ցած կ՚երեւայ, բայց Հայաստանին ասանկ չոր ու վճիտ օդին

մէջ ասիկայ աւելի եւս շատ է, քան թէ Միկալ Հիւսիսային լերանց վրայ: Հոս ան սաստիկ ու սքանչելի պայծառութիւնը հեռաւոր առարկաներուն ու լերանց ճերմակ կատարները շատ կը մօտիկցընէ, բայց ասկից՝ ձիւներուն երեսը չկան անանկ առարկաներ, որոնք տեղւոյն բուն հեռաւորութիւնը ճշդակ հաշուելու նեցուկ ըլլան: Աչքը բոլորովին ասոր հակառակ կը խաբուի, երբոր մարդ պղտոր օդի մէջ անձրեւ ու անդադար եւ մութ լուսով ծածկուած լերան մը վրայ ըլլէ, որն որ իրականէն շատ աւելի հեռու կ'երեւայ: Մեծն Մասիսու հիւսիսային կողմն անանկ սեպ ու ցից է որ մագլցելով ելլելն ալ շատ դժուար է: Իսկ արեւմտեան ու հիւսիսային արեւմտեան կողմանէ լերան գլուխն ելլելու համար ուրիշ դժուարութիւն չկայ, բայց եթէ ահագին բարձրութիւնը: Հին ճամբորդները պատմեցին որ Մասիսու վրայ ելլելն անկարելի է, սակայն ասիկա ստոյգ չէ եւ միայն հարեւանցի քննութեան մը հետեւանքն է: Թէպէտ Մայիսի վերջերը դեռ անհուն ձիւն կար, ի վերայ այսր ամենայնի կը յանդգնէի վեր ելլել, եթէ չափելու գեղեցիկ գործիքներս կորսնցուցած չըլլայի, որոնց պակասութեամբը լերան կատարն ելլելս գիտնական օգուտ մը չէր ունենար: Բայց համոզեալ եմ որ ժիր ու պնդակազմ լեռնագնաց մը երկու գիշեր ցուրտ լերան վրայ մնալը յանձն առնելէն ետքը՝ նոյն իսկ հիմակ կրնայ կատարը հասնիլ: Բարոտին պատմածներն ինծի բոլորովին ճիշդ կ'երեւան: Մարդ ստուգիւ դժկամակութիւն կը զգայ, երբոր տեսնէ որ ոմանք նախանձէ շարժելով՝ աս ճշմարտասէր ու արդիւնաշատ բնախօսէն՝ առաջին անգամ Արարատայ գլուխն ելլելու պարծանքը տարակուսական ընելու կը ջանան:

Մասիսու կողերուն վրայ մնացորդութեան արժանի երեւոյթ մըն է՝ ժայռերուն շիպշիտակ ողորկ ու փայլուն երեսը, որն որ չէ թէ միայն 7000 ոտնաչափ բարձր տե-

ղեր, հապա նաեւ ցածագոյն կողմերն ալ կը ստանունին։ Արեւուն ճառագայթներն աս ողորկ միակերեւութին վրայ զարնելու որ ըլլան, այնպէս կը փայլին որ հե-ռուանց շատ անգամ կը կարծէի թէ սառուցով ծածկուած ըլլան։ Աս ողորկութիւնը, ինչպէս որ կը համարուի, սառնալեռներէ* պատճառած է նէ, պէտք է որ յառաջագոյն Հայաստանի մէջ բոլորովին տար-բեր բարեխառնութիւն եղած ըլլայ, որ ատեն նաեւ ցածկեկ տեղուանք ալ սառնալեռներ կը գտնուին եղեր։ Հիմակ ամենէն ցած սառնալեռները կը սկսին 9 կամ 10 հազար ոտնաչափ բարձր տեղեր։ Նոյն փայլուն ողորկութենէն զատ՝ ապառաժներուն վրայ ամէն տեղ կը տեսնուին ուղղագիծ քերուածքներ, որոնք՝ ինչպէս Ագասիզ կ'ըսէ, սառոյցներուն հետ մէկտեղ վար իջնող կարծր քարերէն պատճառած պիտ՚որ ըլլան։

Կենդանեաց կողմանէ Արարատ լեռն աղքատ է, բայց մասնաւոր բաներ ալ ունի։ Կաթնասուն կեն-դանիներէն ես միայն հասարակ նապաստակ տեսայ. սակայն կ'ըսեն որ գայլ ու բորեան (ըըրթլան) եւ Ե-րասխի մօտ տեղուանք նաեւ յովազ կայ եղեր։ Իսկ

* Սառնալեռ (գղ. glacier, գերմ. Gletscher) կ'ըսուին լեռանց ձորերուն ու կիրճերուն մէջ գիզուած սառոյցնե-րու կոյտերը, որոնք նոյն իսկ ամառ ատեններն ալ չեն հալիր։ Ասոնք գլխաւորաբար ան ժամանակը կը գոյա-նան, երբոր լերան վերի գիծէն վար շատ ձիւն կը գլորի եւ կամ սաստիկ ձիւն գալով՝ լերան շատ ցած տեղերն ալ գտնուող ձորերը կը լեցընէ, ու ցորեկուան արեւուն տաքութեանը քիչ մը հալելու սկսելէն ետեւ՝ գիշե-րուան ցրտութեամբ կը սառի կը մնայ, եւ շատ անգամ ալ վերի ծայրին վրայ նորէն ձիւն նստելով ու սառնա-նալով՝ Սառնալեռն ալ դէպ ի վեր շատ կը մեծնայ։ Ա-սոնք շատ հեղ քիչ մը հալելով կամ վերի ծանրութեան ճնշելովը սաստիկ ճայթմամբ կը փլչին, ու լերանց խորա-ւորտ տեղերն ալ մէկտեղ վար կը բերեն։ Շատ ան-գամ երկու կամ բազմաթիւ սառնալեռներու մէջ սառ-նապատ տափարակ տեղեր կ'ըլլան, որոնք կ'ըսուին Սառ-նադաշտ, Սառնահովիտ։ Ասոնց ամէնը մեծ գետերու ջուրը կը մատակարարեն։

Թռչնոց մէջէն Արարատայ բոլորտիքը շատ են դըղ-նադիւտ տեսակներ կային։ Որոր կիրճին մինչեւ կէսը շատ առատ է. բայց անկից վեր փետրաւորաց բնակիչները կը դադրին կը լմննան, քիչ անգամ կը պատահի որ Թռչուն մը լերան մինչեւ կէսն ելլէ։ Մարախները ոչնչնելուն համար անուանի եղած Թռչունն է վարդագոյն տարմահաւը (Sturnus roseus, ալաճա սըղըրճըգ), որն որ Թիթեռը հաւաննալուն պէս՝ երեւան կ'ելլէ։ Ծաղկած միջատներուն վրայ շատ գոհ էի։ Լերան կողերուն աւազուտ հողին վրայ (որն որ յայտնապէս հրաբխային մոխրէ յառաջ եկած է) աւազին ծովեզրներու եւ գետեզրներու մէջ եղած միջատները կը գտնուին. Հոս բազմութեամբ սրճա-տարը (mélasome, սեւ մարմին ունեցող) միջատներէն բռնեցի։ Իսկ Թիթեռներուն մեծ մասը միջին ու հարաւային Եւրոպայիններուն նման են։ Ցնկերէն ալ քանի մը գեղեցիկ բաներ ժողվեցի։ Ակոռի գեղին հաւասար բարձրութիւն ունեցող տեղերուն վրայ կերպ կերպ լուրջ շուշան (մաճի ղաճղալ) բուսած էր, որոնց մէջ՝ ինչպէս կարծեմ, դեռ մինչեւ հիմա չստորա-գրուած՝ հազուագիւտ մեծութիւն ու շքեղութիւն ունեցող տեսակ մը կար, զորն որ Հայաստանին ու-րիշ կողմերը չգտայ։ Փոքր Մասիսին վրայ ծառերուն սահմանը՝ Բառուողին չափածին նայելով՝ ծովին երե-սէն վեր մինչեւ 7800 ոտնաչափ բարձրութեան կը հասնի։ Նաեւ Մեծ Արարատին հիւսիսային արեւ-մտեան կողմը նոյնչափ բարձրութեան վրայ խումբ խումբ Թխկենի (bouleau, ղուշ աղաճը) տեսայ։ Ընդ-հանրապէս խօսելով՝ Հայաստանի բարձրագաւառին մէջ Թէ լեռնադաշտներուն եւ Թէ լերանց կողերուն վրայ վայրենի ծառ քիչ կը գտնուի։ Բայց կ'երեւայ որ անտառներու պակասութիւնն ոչ երբեք հողին որ-պիսութենէն կամ Հայաստանի բարեխառնութենէն յառաջ եկած ըլլայ։ Քանի մը տեղուանք՝ որ հիմա

ծառէ բոլորովին զուրկ ու լերկ են, Հին բնակիչներէն լսեցի որ յառաջագոյն անտառ կայ եղեր։ Հումբոլդ իրաւամբ կը հերքէ անոնց կարծիքը, որոնք կ'ըսեն թէ ծառ չունենալը հարաւային օդաբաժիններուն (կլիմաներուն) բնաւորութիւնն է. "Անիկա ըսողները հարաւային կողմանց բնակիչներուն շատ յառաջ արթըննալը կը մոռնան եւ չեն յիշեր թէ մարդկային ազգը քանի որ քաղաքական կրթութիւն կը ստանայ նէ, անտառները կը ջնջէ, եւ մարդիկներուն այլափոխիչ հոգին հետզհետէ երկրին այն զարդը կը յափշտակէ, որն որ հիւսիսային կողմերը կը զուարճացընեն զմեզ, եւ ամէն պատմութիւններէն աւելի կը ցուցընէ թէ մեր բարոյական կրթութիւնը դեռ նոր ու երիտասարդ է,,։

Մեծ ու փոքր Մասիսն որ Հայաստանի հին Արարատեան գաւառին կեդրոնն է, զորն որ Ռիդդեր աշխարհագիրն ալ "Հայկական լեռնագաւառին պատմական միջավայրը,, կ'անուանէ, դրեթէ զատ ու ինքնագլուխ լերանց խումբ մը կը կազմէ, որն որ միայն Կարնոյ (Էրզէրում) հիւսիսային արեւմտեան կողմանէ եղող հրաբուխներու շղթային հետ կապակցութիւն մ'ունի։ Իսկ Սեւանայ ծովակին քովի ապառաժուտ լեռներէն ու Արագածէն բոլորովին բաժնուած է։ Արագած Մասիսէն ետքը Հայաստանին ամենէն մեծ լեռն է. անիկա Մասիսի դիմացն ու Երասխ գետին հիւսիսային եզերացը վրայ դէպ ի վեր կը բարձրանայ։ Իր բարձրութեան չափն է ըստ Բառոդի 12,766 ոտնաչափ։ Աս երկու հին հրաշունչ լեռները զարմանալի ու իրարմէ տարբեր հանգամանքներ ունին։ Արագած աւելի հովիտներ ու տարահարթ տեղեր ունի, եւ իր ժայռերն այնչափ մերկ ու անծածկոյթ մնացած չեն, որչափ Արարատինը։ Արագածին քարն աւելի սեւկակ ու աւելի ածխացեալ է եւ շատկեկ ալ կաւային հող ունի քան թէ

իր դիրացին։ Մասիսի մէջ ձիւներուն հալելուն հետ սկսած յորդահոս աղբիւրներն ու վտակները լերան կողերը, բարձր դաշտերն ու դարատափները (terrasse, լերան կողերուն վրայ սեղանի պէս ընդարձակ ու տափարակ տեղերը) գեղեցիկ կը ծաղկեցընեն ու գոյնզգոյն կը զարդարեն։ Ասանկով Արագածի վրայ քարերն աւելի փշրուած ու հող դարձած են քան թէ Մասիսի վրայ։ Տնկերուն արմատները շարունակ թթուութիւններ դուրս տալով ու միանգամայն օդին եւ ջրին գործակցութեամբը քարերը միշտ կը լուծեն ու կը փխրեն։ Ես Արագածի լայնատարած լեռնադաշտին վրայ ալ քանի մը օր կեցայ։ Հոս եթէ ձմեռն այսչափ երկայն չտեւէր ու աս աստիճանի փայտի պակասութիւն չըլլար նէ, Հայաստանի հարաւային կողմերէն (Քիւրտիսթանէն) ասդին անցնող Հայերուն ունեցած գեղեցիկ ու քաղցրախառն օդը նախանձելու բան էր։ Աս լեռնադաշտին վրայ եղած ամենէն աւելի մեղմ ու սիրուն բան մը մարդ չիկրնար մոռնալ։ Դրացի երկիրներու (Ատրպատականի ու Պարսկաստանի) դաշտերուն ու հովիտներուն մէջ ամառուան խեղդիչ տաքութիւնը բնակիչները չարչարած ատեն՝ հոս մարդ կը զգայ որ զով ու անուշ-օդ լեռնակողի մը վրայ կեցած է, ինչպէս որ Ռիտ-դէր Հայաստանի լեռնադաշտը յարմարութեամբ կ'անուանէ։ Արագածի վրայ եղած վանքերուն ու գեղերուն բազմութիւնը մարդը կ'ապշեցընէ. անանկ շատուոր ժողովուրդը, բնութեան գեղեցկութիւնը, սա հին հրալերան վրայ բնակողներուն զուարթ կեանքը, այնչափ աներուն, ցորենի արտերուն եւ խաշանց տեսքը, զանգակներուն ձայնը, կատարեալ ընդդիմապատկեր (contraste) մըն է ան ամայի ու անապատական լռութեան, որն որ Ակոռի գեղէն աւերմանէ ետքը Մասիսու վրայ կը տիրէ։ Հիմակ Արարատի ոլինդ մօտ բնակութիւնն ալ անկից 20 տարուական

մօտն հեռու է։ Արարատի կողմերը կեցած բոլոր ժամանակս թագաւորական քիւրտերուն եւ ոչ մէկ փոքր նշմարանքը անոնց։ Երբոր (ուղեկիցներս վարը մնալով) ես միայն Մասիսու Մասյլ ձորին վերի դին առանձին կը կենայի, առ պարհուրելի անձայնութեան դղրդմունքը զիս կը նուաճէր։ Ոչ թռչնոյ ձայն, եւ ոչ ուրիշ կենդանւոյ կանչ հոս կենդանութիւն մը կը յիշեցընէր։ Արարատս այս վիճակի մէջ հիմնակուան ճամբորդի մը աչքին շատ աւելի ասակալի կ'երեւայ քան թէ Նոյի տապանին բնակիչներուն եւ մեկյալ կենդանիներուն, որոնք ջրհեղեղէն ետքը դուրս ելնելով՝ Արարատէն վար կ'իջնային մեռեալ աշխարհքը կենդանացընելու համար։



# Մ. ՎԱԿՆԷՐԻ

## ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆ

# Ի ՀԱՅԱՍՏԱՆ

---

## ՄԱՍՆ Բ.

# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆ
# Ի ՀԱՅԱՍՏԱՆ

## ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

*Արարատ լերան գեղեցիկ դիրքը, դարատափները, ջուրը, բոյսն ու միջատները: Նոյն լերան մէկ կատարին վրայ երկրաբանական դիտողութիւն: Վերջին աստիճանի սիրուն ու ահռելի դիրքը:*

ՅՈՒԼԻՍԻ 1ին Երասխայ մեծ լեռնահովիտը թողուցի, ուր ալ չէր կրնար մարդ կենալ արեգական տապէն: Ժանտախտէն ու մօրական տենդէն, փառք Աստուծոյ, ազատած էի, բայց տօթագին արեւուն շողը տաքուկ ցաւեր պատճառած էր երեսիս վրայ: Արեւակէզ մորթը պատառ պատառ ըլլալով երեսս ի վար կախուած էր, եւ ուռած պռկունքս՝ որչափ որ շատ հնդկանշի[1] եղով օծէի, խափշիկի մը շըրթանց կը նմանէին: Ամենայն ուժով կը փափաքէի բարձր լերանց զով օդին, ատոր համար լեցուն օր մը ձիով ճամբորդութիւն ընելով՝ Էջմիածնէն Արարատ (Ալըչէղ) լերան առաջին դարատափին[2] վրայ ելայ, որն որ Երասխէն գրեթէ 2000 ոտնաչափ բարձր է: Արարատ լերանց խումբը Հայաստանին գրեթէ անծանօթ կողմերէն մէկն է մինչեւ հիմայ, զորն

[1] Հնդկանուշ. Cacao.

[2] Դարատափ բառը հայերէն յիշատակարաններու մէջ կը գտնուի եւ Լերանց լանջերուն կամ զառիվայր տեղերուն վրայ տափարակ տեղ, շիտակ դաշտ կը նշանակէ, ինչպէս որ բարդութիւնն ալ յայտնի կը ցուցընէ. ասիկայ շատ ընտիր բառ է, եւ նախնեաց կանոնին համեմատ (Տես Տուարածատափ, Թառեացատափ եւայլն). ու շատ յարմար կու գայ Գաղղիացւոց Terrasse կամ Իտալացւոց Terrazza բառերուն, որոնք այլեւայլ նշանակութիւններէն զատ՝ վերը զրուցածնիս ալ կը նշանակեն:

որ Եւրոպացի ճամբորդի մը գրիչը դեռ ստորագրած չէ։ Բաւաղ ու Գոլս աս լերանց միայն ստորոտէն՝ Ապարանի հովտին մէջէն անցողակի ճամբայ ըրած են, ոչ անոնց զառիվերներուն վրայ ելլելով, ոչ ալ ներքին կողմերուն կանաչ լեռնահովիտներն ու դարատափները մտնելով։ Քարթուն՝ որ քիչ մը ժամանակ Արագածի վրայ կեցած էր, իրեն հոն բնակելուն նկատմամբ բան մը չհրատարակեց։ Հոս բոլորովին չքննուած երկիր մը կոխելուս եւ գրեթէ անվտանգ պտըտելս կրնալուս հաճոյական յոյսը՝ այրած շրթանցս տանջանքը զգալ չէր թողուր, եւ առաջին օրուան սաստիկ ճամբորդութեան մեծ աշխատանքն ու ցաւերն ըստ մասին կը մոռցընէր։ Սխրալի ու շքեղ հրաշալիններուն տեսքն ու հազուագիւտ տնկերու եւ ճճիներու առատ հաւաքումն ալ զիս շատ զուարթացուցին ու այրած հոգիս նորէն կենդանացուցին։ Նաեւ ուղեկիցներս ալ սաստիկ կը բաղձային որ դաշտերու տապագին օդէն փախչին, եւ անսովոր արտօրանօք մը կը ձիավարէին, ու քանի որ զիս կը տեսնէին թէ աղուոր ծաղիկ մը փրցընելու կամ դժուարագիւտ ճճի մը ասեղի անցընելու համար ձիէն յաճախ վար կ՚իջնամ, յայտնապէս տժգոհութիւն կը ցուցընէին։ Բոյսերուն ազնուութիւնն ու հետաքըրքրական ճճիները ցաւելով թողուցի, որովհետեւ շուտով յառաջ երթալու բաղձանքիս արգելք կ՚ըլլային։ Բաց ասկից՝ նոյն օրը Թաթար երիվարի մը վրայ նստած էի, որն որ հաւաքիչ բնախուզի մը ամենեւին յարմար չէր, ինչու որ ճամբու վրայ տունկ փրցընելու ժամանակս չէր ուզեր կենալ, եւ ինծի մեծ տաժանմունք կու տար աս կրակոտ կենդանին՝ երբոր առանց խաղալիս օգնութեանը նորէն հեծնել կ՚ուզէի։ Թէպէտ հոսանեղաց ձիերուն ցեղը շատ գերազանց, ընթացքնին թեթեւ, եւ շարժուածքնին սիրուն ու հաճոյական է, այսու ամենայնիւ շատ հեղ

կը նզովէի զանոնք իրենց Հայրենի արեան համար, եւ Բերբերիայի հեզ ու համբերող ձիերուն, նաեւ դըրեթէ խաղախներու դանդաղ գրաստներուն ալ կը բաղձայի, որոնք թէպէտ հեստ ու անսաստ խառնուածք ունին, բայց սովորաբար հնազանդելու կըրթուած են, զորոնք մարդ աւելի դիւրաւ կրնայ կեցընել, քան թէ սա լեռնաստանին սէզ ու խրոխտ եւ քաջազգի ձիանքը, որոնց միշտ ճշմարիտ ազատութիւն մը կը բերէ՝ սար ու ձոր վազելն ու արշաւելը։

Առաջին մեծ գեղն, ուր որ նոյն օրը հասանք, Աշտարակ կ'ըսուի, եւ Հայոց հիմակուան մեծապատիւ ու ծերունի Ներսէս կաթուղիկոսին ծննդեան գեղն է. ինք, ինչպէս նաեւ իր նախորդներուն մէկ քանին աղքատ գեղացիներու զաւակ էին։ Աշտարակ՝ աղուոր, երեւելի եւ քրիստոնէաբնակ գեղ մըն է, որուն բոլորտիքը շատ պարտէզներ կան։ Աս գեղին դիրքը Հարաւային Արագածոտին վրայ այնչափ բարձր չըլլալով՝ շատ բարեխառն օդաբաժին (կլիմայ), բերրի երկիր եւ առատ ջուր ունի, եւ ամէն կերպ ցորենեղէն, պտուղ ու խաղող կը բուսցընէ։ Պր. Աբովեանին մէկ հին հայազգի բարեկամը՝ Ստեփան Աղա՝ զմեզ հոս հիւրընկալեց եւ ամէն տեսակ կաթնեղէն ու հաւկըթեղէն աղնիւ կերակուրներով զմեզ պատուեց։ Գեղին բնակիչները չափաւոր բարեկեցիկ են եւ իրենց վիճակին վրայ գոհ։ Աւելի բարձր գեղերուն մէջ երկրին պտղաբերութիւնը կը սկսի պակսիլ, եւ ժողովրդեան բնակութիւնն ու կեանքը կը ցուցընէ թէ երթալով աւելի եւս աղքատ են ու հացապակաս։

Արագած Հայաստանին մէկալ լեռներէն դըրեթէ բոլորովին զատուած եւ ինքնագլուխ լերանց խումբ մըն է, չորս գլխաւոր կոնաձեւ կատար ունի, եւ իրեն կերպարանքը՝ ունեցած հովիտներուն ու դարատափներուն շատութեամբը Մասիսէն շատ կը տարբերի։ Մարդ իբրեւ թէ աստիճան աստիճան անոր գա-

բարատափները կ'ելլէ, մինչեւ որ ամենէն մեծը հասանի, որն որ շքեղ լեռնադաշտ մըն է, եւ փարիզէ 6400 ոտնաչափի մօտ ծովէն երեսէն վեր կը բարձրանայ, որով նաեւ Կարնոյ լեռնադաշտէն ալ բարձրագոյն է։ Արագածին չորս կատարներուն վրայ ալ սաանկ լեռնադաշտներ կան թէ արեւմտեան եւ թէ հարաւային կողմանէ։ Հոս ամէն դի հրաբխային ապառաժները շատ աւելի փխրած ու հող դարձած են քան թէ Արարատի վրայ, եւ գետինն ալ աւելի բուսաւէտ ու արգաւանդ է։ Այս երեւոյթին պատճառը ոչ Արագածի ժայռերուն տեսակէն եւ ոչ ալ անոնց աւելի հնութենէն է, այլ աղբիւրներու առատութենէն ու դարատափներու եւ լեռնահովիտներու շատութենէն, որոնց վրայ հալած ձիւներուն, անձրեւին եւ աղբիւրներուն ջուրը կը ժողվի, եւ լուծիչ օդէն հետ միանալով գետնին վրայ աւելի կ'ազդէ։ Ցիւպուա, որ Արագածի վրայ ելած չէ, սխալանօք կը պատմէ թէ հոն վրայ ալ Արարատի պէս ջրի պակասութիւն կայ։ Բայց անոր հակառակ Արագած՝ աղբիւրներու կողմանէ այնչափ հարուստ է, որչափ որ Մասիսու երկու լեռներն աղքատ են, թէպէտեւ աս աղբիւրներուն մեծ մասը Ցորեկուան աղբիւր են, որոնք միայն հալած ձիւներէն կը սնանին, բայց այնպէս որ ջուրը լերան ծակոտ քարերուն մէջէն վար կ'իջնայ, կը զտի ու կը ժողվի, եւ դարատափներու վրայ կը սկսի ցայտելով դուրս ելնել։

Արագածի կողերը ծածկող սեւ ու ջրարբի հողին վրայ աս անհամար տեսակ զքանչելի գեղեցկութեամբ ծաղիկներ կը բուսնին։ Ասոնց մէջ գեղին դոյնը, ինչպէս հրամանունքն է, խիստ շատ էր, տեղ տեղ կար նաեւ լեռնային պերճ ու շառագոյն կակաչներ (լալէ), բող[1], զանգակիկ[2] եւ լուրջ շուշան[3] կերպ

[1] Gentiana. տճկ. ճէնթիանա, Կէնշոր։
[2] Լտ. Campanula.
[3] Լտ. Iris. տճկ. Մուլէ զամպաք։

կերպ կապոյտ երանգներով: Արագածի վրայ ալ ալ-պեան բոյսերը Մայիսի վերջերը կը սկսին ծաղկիլ, եւ Սեպտեմբերի ետքերը ձիւնով ծածկուած կ'ըլլան: Սեւանայ ծովին բոլորտիքը գտած ճճիներուս մեծ մասը հոս դարձեալ տեսայ: Արագածի վրայ ժողված միջատներուս մէջ ամենէն երեւելին էր Գեղուժիկ[1] բզուածը, որն որ միայն Հայաստան կը գտնուի, կապոյտ փայլուն գոյն եւ արտաքոյ կարգի ձեւ մ'ունի, շատ բարձր տեղուանք եւ հատարակօրէն մշտընջենաւոր ձեան քովերը կ'ապրի, ու կ'երեւայ թէ 4000 ոտնաչափէն վար չ'իջնար:

Հայոց Պաղարճուկ գեղն օր մը կեցայ, որպէս զի ասկից Արագած լերան հարաւային արեւմտեան կատարն ելլեմ, որն որ մեծ դարատափին վրայ երբեւ ժայռ մը ցցուած է: Փէտօրով՝ որն որ աս կատարին բարձրութիւնը Երասխի դաշտին վրայէն եռանկիւնաչափօրէն չափեց՝ 12,766 ոտնաչափ կը դնէ: Քարթուան՝ որ Ռուսի ծառայութեան մէջ բովուց պաշտօնատէր էր, Ախուրեան գետին (Արփա չային) կողմը դարձած կատարին վրայ ամբողջ մնացած խառնարան (հրաբխի բերան) մը գտաւ, որն որ 35—40 ոտնաչափ երկանկատուր (տրամագիծ) ունէր: Ան ահագին սեւ մարմարի լաւան, որ Արագածին ստորոտը կը գտնուի, աս խառնարանէն վազած կ'երեւայ: Հոս ալինդ նշանաւոր երկրաբանական դէպքերէն մէկը դիտեց Քարթուն, այսինքն հրաբխային արտաքոյ ապառաժին մէջ ամբաւ հատաքար[2] տեսաւ, որն որ ասչինէն յառաջ գոյացած ըլլալով կ'երեւայ թէ արտաքոյ ապառաժը հրաբխային զօրութեամբ վեր նետուելու ատեն՝ հատաքարն ալ պատռած, փրցուցած ու մէկտեղ վեր բերած է: Ան ժայռերու ճեղքուածին մէջ, ուր մագլցի ելայ, շատ ձիւն կար, իսկ ժայռին կատարն աւելի քիչ: Հայ բնակչաց պատմածին նայե-

[1] Callisthenes. [2] Գղ. Granit. անգ. փաղանդրը բոցը:

լով՝ Արագածին հարաւային կատարներն Օգոստոսի վերջերը ձիւնէ բոլորովին ազատ կ'ըլլան, բայց ճեղքուածներու մէջէն ձիւն երբեք չի պակսիր։

Արագածի մեծ դարատափէն Ապարանի խորաձորին վրայ եղած տեսքը վերջին աստիճանի նկարագեղ է։ Աս սոսկալի ու վայրենի դիրքը Յովհաննավանքէն ամենէն գեղեցիկ կը տեսնուի։ Սեւ խայտակուճը (սօմաքի մերմեր), որ հոս վրայէ վրայ շարուած է, ահագին բարձրութեամբ վերէն ի վար խորաձորը կ'իջնայ գրեթէ պատի պէս շիտակ. աս սարսափելի խոր անդունդը վանքին բնակիչներուն աչքին տակ կարծես թէ դժոխքի մը բաց բերան է։ Ասոր հակառակ՝ անմիջապէս մօտ տեղուանքը կը տեսնես սաստիկ սիրուն երկիր մը զանազան բոյսերու անպատմելի հարստութեամբ։ Ասանկով հոս մարդ երկու իրարու բոլորովին հակառակ պատկեր կը գտնէ. մէկը օրհնութեան ու շինութեան երկիր՝ դալար արօտով, ծաղիկներով, ոչխարներով, գեղերով, մառատուներով, հեշտալուր զանգակներով, ուր ամենայն ինչ այնչափ քաղցր ու զուարթ է, որչափ որ Ալպեան երկրի մը վրայ կարելի է. իսկ քանի մը քայլ անդին զարհուրանաց երկիր մը, բնութիւնը սարսափելի վայրենութիւն մը վրան առեր, խորին անդունդ մը մերկ ու պատառեալ ժայռերով, որոնցմէ դուրս լեռնային գետերը սաստկութեամբ ու խոխոջանօք կը բխեն։ Ասանկ թէ՛ սիրուն եւ թէ՛ ահեղ ու վայրենի պատկերէն բաժնուիլն ինծի դժուար եղաւ։ Մարդիկներս մինչեւ առաջին օթեւան խաւրեցի, իսկ ես իմ ձիս վանքին պարտիզէն ցանկը կապեցի, եւ ժամ մը աւելի աս նկարչական դիրքը կեցայ դիտեցի, որն որ ստուգիւ արժանի էր որ վարպետի մը ձեռք նկարէր իմ հայրենակիցներուս համար, որոնք չեն կրնար անձամբ դէպ ի Հայաստան ճամբորդութիւն ընել։

## ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

*Պազարճուկ գիւղին Հայ բնակչացը վրայ տեղեկութիւն. Ցեղային բերքն ու Հարկը: Հայ Թիկնապահ մը:*

ՊԱԶԱՐՃՈՒԿ գիւղին Հայազգի բնակիչները 1829ին Պայազիտի կուսակալութենէն Ռուսաց սահմանն անցած էին. բայց իրենց սա բնակափոխութեան մէջ շահով չելան: Սոյգ է որ իրենք Ցաճկաստաններն նոյն կողմերը շատ կուսակալներուն կեղեքելէն եւ Քիւրտերուն յափշտակելէն խիստ նեղութիւն կը կրէին, այսու ամենայնիւ անանկ գետնի մը վրայ էին, ուր ազատութենէ սնած, մեծցած ու վարժած էին, ուր օդն աւելի բարեխառն էր, եւ երկիրը մշակութեան աշխատանքն աւելի առատ կը վարձատրէր քան թէ Արարատին բարձր ու լեռնային գաւառը: Իրաւ հիմակ հոս ամէն բան սքանչելի ու գեղեցիկ կ'երեւար, արեւը հեշտ կը տաքցընէր, ամէն կողմ կանաչազարդ էր, այնպէս որ մարդ կ'ուզէր միշտ ասանկ Ալպեան արեգջեր դարաստափի մը վրայ կեանք անցընել, ասանկ համեմահոտ օդի մէջ, ասանկ գետնի մը վրայ, զորն որ ամենաբոյր բոյսերն ու գոյնագոյն ծաղիկները կը զարդարեն: Բայց ասիկայ շատ քիչ կը տեւէ, ինչպէս բարի գեղացիներն ալ՝ երբոր լսեցին որ սա տեղւոյն գեղեցկութեանը վրայ զմայլեր մնացեր եմ, ըսին:

«Հէ՜, պարոն, ո՞ւր է որ հոս միշտ հիմակուան պէս ըլլար. եթէ կը հաճիք՝ մէյ մը ձմեռը մեզի հրամմեցէք, ան ատեն կը տեսնէք որ ձիւներու կոյտին մէջ գրեթէ թաղուած ենք, կրակ վառելու փայտ չունինք, հապա ստիպուած ենք չոր աթար (Թեզէք) վառել, որն որ կրնայ եփել քիչ մը բան, բայց չի կրնար խուց մը տաքցընել: Եօթն ամիս ձիւնը կը պատէ զմեզ ձողաչափ բարձրութեամբ, եւ հազիւ թէ Մայիսին մէջերը կը հալի կ'երթայ, սակայն ան-

կից ալ մինչեւ Սեպտեմբեր շատ հեղ ժամանակը հերիք չ՚ըլլար գարին հասուն ըլլալու: Քիչ անգամ կը պատահի որ հունձքը ցանուածին կրկնապատիկէն աւելի տայ. շատ անգամ բոլորովին կը կորսուի կը փչանայ, ան ատեն մենք ալ կը ստիպուինք՝ մեր ամենէն ընտիր դուարը (ոչխար, եզ, եւ այլն) մորթել եւ միսը ձմեռուան համար աղել, եթէ չենք ուզեր անօթութենէ մեռնիլ: Ամառուան կարճութիւնն ալ թող չտար մեզի որ շատուոր դուար սնուցանենք, ինչու որ այնչափ երկայն ձմեռուան համար բաւական չոր խոտ չենք կրնար գտնել ու պահել: Բայց տաճկայ Ռուս հարկահանը (տուրքը ժողվողը) չիհասկընար, եւ մեր վրայ այնչափ բեռ կը դնէ, որչափ Երասխի քով դաշտաբնակ գեղացւոց վրայ, որոնք ցորենեղէն, բամբակ ու պտուղ առատութեամբ կը քաղեն, ուր որ մենք ամենէն բերքի տարիներն ալ՝ անխոնջ աշխատելէն եւ սակաւապէտ կեանք անցընելէն ետքը՝ ան բարձր տուրքերը վճարելու կարողութիւն չունինք: Թէպէտ կամօք եւ ուզելով Ռուսաստանի մեծ կայսեր հպատակ ենք, արովհետեւ ինք քրիստոնեայ իշխան է, մեր կրօնը, մեր եկեղեցիները կը յարգէ, մեր եկեղեցականները կը պաշտպանէ, եւ աղէկ ու հայրաբար կը հոգայ. եւ թէպէտ Քիւրտերէն այնչափ կը վախնանք, ի վերայ այսր ամենայնի աւելի յօժարութեամբ կ՚ուզենք մեր առաջին բնակութեան տեղուանքն ըլլալ, ուր անօթութիւն չէինք զգար, ուր երկիրն այսպէս ապերախտ չէր, ուր օդը նուազ խստութիւն ունէր, եւ մենք հարկահանները կրնայինք գոհ ընել, ու ծեծ ուտելէն վախ չունէինք, ինչպէս հոս Ռուսաց մէջ ունինք, եւ ընդհանրապէս անանկ դառն թշուառութեան մէջ չէինք, ինչպէս հոս,,:

Առհասարակ թէ Պաղարծուկի բնակչաց եւ թէ Արագածի վրայ ապրող մէկալ Հայ գեղացւոց ըրած

տրամունջներուն էական իմաստն ասիկայ է։ Ես գտայ քանքարաւորները կէս մը իրենք իրենցմէ ըսին, կէս մ'ալ ես իրենց վիճակին վրայ տեղեկութիւն խնդրելով՝ կրցայ իմանալ, բայց ան ալ երկայն ատեն հարցընելէս ետքը, ինչու որ անոնք աստանկ օտարական հիւր մը մէջերնին տեսնելով՝ ի սկզբան կարծեցին, որ Ռուս պաշտօնատէր մըն եմ, սակայն իրենց հետ յաճախ ընտանեբար կենակցելով՝ առաջին վախն ու բնական անվստահութիւնը կորսնցուցին ու բացուեցան։ Աս բարի մարդիկներն իրենց լեռնական առանձնութեան մէջ Երասխայ Թաթարներուն պէս չէին գիտեր որ աշխարհքիս վրայ Նեմչէ ազգ ու երկիր կայ։ Ինչպէս կ'երեւայ, Տրապիզոնէն անդին Նեմչեատանը եւ ոչ անունը կը լսուի։ Խաչակրաց ատեն Գերմանացւոց կայսրներուն Փոքր Ասիոյ մէջ գործածները, Եւգինէոս զօրապետին յաղթութիւնները գրեթէ անհետ ու անյիշատակ եղած են։ Սակայն զիս աւելի ան զարմացուց որ Արարատի Հայերն եւ ոչ Անգլիացիներուն անունը գիտէին, որոնց համբաւը հիմայ բոլոր արեւելք բռնած է։ Աս գեղացիները միայն Ռուսը, Տաճիկն ու Պարսիկը կը կարծէին որ ինքնագլուխ տէրութիւններ են։ Ջանացի որ ասոնց սխալը շիտկեմ, որն որ ինծի շատ դժուար եղաւ։ Պր. Աբովեանին բերնով Եւրոպայի տէրութեանց վրայ երկայն բարակ ստորագրութիւն մ'ըրի, եւ շատ ճգնեցայ որ իրենց գաղափար մը տամ Գերմանիայի գեղեցկութեան, երկրագործութեան ծաղկեալ վիճակին, քաղաքներուն փառաւորութեան ու ասոնց նման բաներուն վրայ։ Բայց այսչափ խօսքերէս ետքը՝ դժկամակութեամբ նոյնը լսեցի, զորն որ Երասխայ քովի Պարսիկ խանն ալ ըսած էր. "Ա՜յ դու, եթէ քու տեղդ այդչափ գեղեցիկ է, եթէ հոն անանկ երջանկութեամբ կ'ապրի մարդ, քու հայրենիքդ ինչո՞ւ չես մնար, ինչո՞ւ մեզի կու գաս, ինչ

բան դէպ կը հրաւիրէ աս մեր անապատը, աս աղքատութեան ու կարօտութեան երկիրը,,։

Պազարճուկի բնակչաց Եւրոպայի վրայ գաղափար չունենալուն համար աւելի եւս զարմացայ, երբոր Հայազգի երիտասարդ մը տեսայ, որն որ ժամանակաւ Պասկեւիչ իշխանին արեւելեան Թիկնապահներուն մէջն է գտնուեր, եւ իր փառաւոր բայց հինցած նշանազգեստը դեռ կը հագնէր։ Ասիկայ նոյն խմբին մէջ երկու տարի ծառայեր է, Վարշաւի մէջ եւրոպական կեանք տեսեր է, եւ իր հայրենակիցներուն ալ շատ բան կը պատմէ եղեր, սակայն՝ ինչպէս ծեր մը զրուցեց, լսողներն ամենուրն չեն հաւտար ու վրան կը ծիծաղին եղեր։ Ասոր պատճառն ան էր որ աս երիտասարդը զինուորական ծառայութենէ դարձած ատեն՝ մէկքանի եւրոպական մոլութիւններ ու թուլութիւններ ալ հետն է բերեր, որով բոլոր համարումը կորսնցուցեր է, եւ ինչ որ կ'ըսէ նէ, սուտ ու մեծաբանութիւն կը սեպեն եղեր. ուր որ եթէ աղէկ ու ըստ պատշաճի վարմունք ունենար, բոլոր գեղին մէջ ինք կ'ըլլար հրամայող։ Ես անոր հարցուցի թէ Վա՛րշաւ չէ նէ Արագած աւելի կը սիրէ, ինք անկեղծութեամբ պատասխան տուաւ թէ "Մարդ հայրենեաց մէջ աւելի յօժարութեամբ կը կենայ քան թէ օտար երկրի մէջ. ստոյգ է որ ապրուստս ու հագուստս այնպէս աղէկ ու փառաւոր չեն, բայց հոգ ալ չունիմ հրացանս փայլեցընելու եւ թիկնոցս մաքրելու. կանչող թմբուկին ձայնը չեմ լսեր, եւ ծեծէ ալ վախ չունիմ, երբոր իմ տնակս ուշ կու գամ",։

# ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

Պարսկաստանէն ու Տաճկաստանէն Ռուսաստան գաղթող Հայերուն պատմութիւնը։ Արագած լերան վրայ բնակած ընդհանուր Հայոց թիւն ու վիճակը։ Արագածի անհամեմատ գեղեցիկ դիրքը։

ԱՐԱԳԱԾ լերան այլեւայլ դարատափներուն վրայ 24 հայաբնակ գիւղ կայ, որոնց մէջ գրեթէ 1700 ընտանիք կը բնակին, սակայն ասոնցմէ զատ՝ կը տեսնուին նաեւ շատ լքեալ գիւղերու եւ փլած եկեղեցիներու աւերակներ։ Այս Հայազգիներուն գրեթէ բոլորն ալ Տաճկաստանէն եկած են, որոնք Ռուսաստանի կառավարութեան յայտնի հրաւիրանքէն ու յորդորանքէն շարժելով՝ ետ դարձող Ռուս բանակներուն հետ ճամբայ ելլան, որովհետեւ Ռուսին աս վախճանի համար հաշտութեան դաշանց մէջ դնել տուած էր որ Տաճկաստանի այն կողման քրիստոնեայ հպատակներն ազատութիւն ունենան՝ ուզած ատեններնին ուրիշ տէրութեանց երկիրները գաղթականութիւն ընելու։ Հիմայ բոլոր Արագած լերանց դարատափներուն եւ ձորերուն մէջ բնակող գաղթականաց թիւը 5—6000 ընտանիք կը հասնի։ Ասոնք հոս մտնալնուն իսկզբան շատ նեղութիւն կրեցին, ինչու որ երկայն ճամբորդութեան մէջ իրենց դրամին մեծ մասը ջընջուած էր. Արագածի վրայ ոչ պատրաստ բնակութիւն կար՝ որ այն սաստիկ ձմեռուան մէջ զիրենք պատսպարէր, ոչ ալ ուտելիք կար՝ որ իրենց սնունդ ըլլար. սակայն անանկ կարօտութիւն մըն էր որ ամենէն դառն ու խեղճ ասորադրութիւններն ալ իրականէն շատ վար կը մնայ։ Նոյնպէս գրագէտը Հայազգի Լազարեւ զօրավարին առաջնորդութեամբ Պարսկաստանէն Ռուսաստան դացող Հայոց պատմութեան մէջ անոնց կրած նեղութիւններն ու դժբախտութիւններն յիշած է, եւ չափազանց բան մ'ըսած չէ հաստատելով, որ Երեւան եւ Նախիջեւան եկող

Հայազգիներուն կէսը խեղճութենէ ու անօթութե-նէ մեռաւ։ Նոյման ինծի հետ մեկտեղ Արագած գալու ըլլար, իր հետաքրքրական պատմութիւնը կա-տարելագործելու առատ նիւթ կը գտնէր՝ աս գաղ-թականներուն պատմածները լսելով, որոնք ինչպէս ըսինք, ըստ մեծի մասին Տաճկաստանէն եկած են, իսկ Պարսկաստանէն եկողները Նախիջեւանի ու Ե-րեւանի կողմերը բնակութիւննին հաստատեցին։

Ռուսաստան՝ գրեթէ միայն Լազարեւ գնդապե-տին (միրալայն) ջանքովը Պարսկաստանէն եկած այն-չափ բազմաթիւ մարդիկը ստացաւ. որոնք իր աւե-րեալ ու ամայի սահմանակողմերը՝ ճարտար, ջանա-սէր, խաղաղասէր, օգտակար, հաւատարիմ քրիստո-նեայ հպատակներով շէնցուցին։ Լազարեւ՝ որ նախ Պասկեւիչ զօրապետին հրամանատարութեանը ներ-քեւ իբրեւ զինուորական, եւ ետքէն Ռուսաց եւ Պար-սից տէրութեան մէջ իբրեւ քաջ խօսնակից երեւելի եղաւ, իրեն Պարսկաստան բնակող ազգակից եղբայր-ներուն (Հայոց) Ռուսի դրօշին պաշտպանութեան ներ-քեւ մտնելը անոնց համար ամենէն երջանիկ բախտ ու վիճակ կը սեպէր։ 1828ին Մարտի մէջերը հաշտու-թեան դաշինքն երկու արքունիքն ալ վաւերագրելէն[1] ետքը՝ Ռուսաց զօրքն Ատրպատականի մայրաքաղա-քը թողուցին ելան։ Աս նահանգէն, որ Պարսկաս-տանի ամենէն գեղեցիկ ու բերրի երկիրներէն մէկն է, սկսաւ Հայոց գեղերուն գաղթականութիւնը, եւ կ'երթար դէպ ի Ռուսաց Գարապաղ սահմանադու-ռը, որուն մէջտեղը կար Շուշայի ամուր բերդը։ Պարսից պաշտօնատէրները զարհուրեցան, երբոր ի-րենց կարծեացը դէմ ամբողջ գեղերուն ու քաղաք-ներուն պարպուիլն ու անմարդի ըլլալը տեսան։ Հայք Լազարեւէն իրենց ազատիչը կը կանչէին ու լիաբերան

[1] Ratifier. Թագաւորական կողմանէ հաստատել. պաշտօ-նական կերպով ստորագրել եւ ընդունիլ։

կը գովէին, եւ աս գաղթականութիւնը ուխտագրական պատմութեան մէջ միակ դէպք եւ սրտից ու Հոգ-ւոց միաւորութիւն կ'անուանէին։ Աբաս Միրզա ապըքայորդին, որուն առջեւ իր կեղեքիչ ու արիւն-ռուշտ պաշտօնատէրները միշտ այնպէս կը պատմէին, որ Հպատակները Պարսից իշխանութեան տակ եր-ջանիկ են, ինչ իրմէ ելաւ։ Ձեռքի տակէն զանազան հնարքներ եղան՝ աս գաղթականներն իրենց ճամբէն արգելելու համար, որոնց վրայ ընդարձակ կը խօսի Էլի Սմիթ իր Խուզարկութիւնք ի Հայաստան[1] ըսուած գրքին մէջ։ Իսկ Պարսիկները Ռուսաց վրայ աս պա-կասութիւնը կը դնէին որ մէկուն մէկալին կաշառ կերցուցած եւ շատերը խաբած ըլլան։

Ամենէն դէշն ան էր որ Պարսից կառավարութիւ-նը՝ գացող Հայերուն անշարժ ինչքը դնելն իր հպա-տակներուն արգելեց, որով հողատէրներուն շատերը ստիպուեցան մնալ, ոմանք ալ իրենց ամէն ստա-ցուածն ու բարեկեցիկ վիճակը թող տուին ելան՝ բոլոր վստահութիւննին իրենց նոր տիրոջը վրայ դնե-լով, բայց գաղթականներուն շատութիւնը շուտով մը սով պատճառեց։ Սալմաստէն, Ուրմիէն, Մարա-ղայէն եւ նոյն իսկ Խազվինէն գաղթականներ եկան, որոնք Մարաղայի քովերը Քիւրտիստանի կողմերէն եկածներուն խմբին հետ միացան, բայց աս վերջին-ներէն շատերը լերանց կիրճերուն մէջ Քիւրտերը սպաննեցին, որոնք գիշակեր անասուններուն պէս անդէն խաշանց ետեւէն ինկած էին։ Ռուս պաշ-տօնատէրները, որոնց յանձնուած էր աս գաղթա-կանաց առաջնորդել, խիստ քիչ ըլլալով՝ զանոնք պաշտպանել չէին կրնար։ Երասխ գետին վրայէն ան-դին անցնելէն ետքը սովը չէ թէ միայն չմեղմացաւ, այլ սաստկացաւ ալ. կայսրմէ եւ Լազարեւէն առ-անձնական քսակէն վեհանձնութեամբ տրուած

[1] Researches in Armenia.

դրամոց գումարը գէթ վերջին աստիճանի զգալի կարօտութիւնները հոգալու ալ ամենեւին բաւական չէր: Գաղթականաց 5000 ընտանիք ունեցող առաջին բաժինը 1828ին Ապրիլի 28ին Երասխէն անդին անցնելու ատեն՝ արդէն սկսան չքաւորութիւն զգալ նաւու, ձիու, բնակարանի եւ հացի կողմանէ: Հայերը թողուցին Ուրմիայ ծովակին բերրի ու աղէկ մշակուած բոլորտիքն ու Խոյ գաւառը, եւ անանկ երկիր մը գացին, որն որ դեռ նոր պիտի մշակուէր, ուր զիրենք ընդունելու համար բան մը հոգացուած չէր: 8000 ընտանեացմէ աւելի մարդիկ 3½ ամսուան մէջ Երասխէն անդին անցան, ասոնց նպաստելու համար միայն 14,000 տուկատ ոսկի տրուեցաւ: Էլլի Սմիթ իբրեւ Դավրէժի Հայ-եպիսկոպոսին բերնէն լսած՝ կը հաստատէ որ բոլոր Ատրպատական գաւառէն 9000 ընտանիք ելան գացին, 2500ի չափ տնուոր մնացին եւ 50—60 ընտանիք ալ նորէն ետ դարձան: Այսանկով Երասխի հիւսիսային կողմը կարգադրելի նոր Հայաստանը գրեթէ 40,000 քրիստոնեայ հպատակներով լեցուեցաւ, որոնք Ռուսի սահմանին վրայ օգտակար ու ամուր պատուար մը կը կազմէին, եթէ իրենց թիւը մահուամբ երեւելապէս չպակսէր:

Տարի մը ետքը Տաճկի Հայաստանէն, այսինքն՝ Պայազիտի, Թօփրագ գալէի, Կարսի, Կարնոյ ու Վանայ կողմերէն եկող գաղթականներն ալ՝ որոնց թիւը Ֆոնթան կը դնէ 14,000 ընտանիք կամ 90,000 հոգի, մի եւ նոյն թշուառութեան մէջ ինկան: Նաեւ ասոնցմէ շատերը զոհ եղան երկայն ճամբորդութեան մը տաժանումներուն, քիւրտերու սպանութեանց, չքաւորութեանց, սովի եւ անօթիութեան, մանաւանդ Ռուսաց երկիրը մանելէն ետքը, ուր երկայն ժամանակ անպատսպարան մնալով՝ կէս մը Արագած լերանց վրայ, կէս մ'ալ Ախուրեան գետին բոլորտիքը կը թափառէին: Աս մարդիկները թէպէտեւ պզտի-

կուց քիչով գոհ ըլլալու, գէշ խրճիթներու մէջ բնակելու, հարստահարութեանց, կարօտութեանց եւ ամէն կերպ չարչարանաց վարժած են, ի վերայ այսր ամենայնի սիրտ ճմլելու խօսքերով ինծի ստորագրեցին թէ առջի տարիներն ինչ նեղութիւններ կրեր են եւ թէ ինչ վշտաց ու դառնութեանց մէջ կ'իյնան եղեր տեսնելով իրենց զաւկըներուն, եղբայրներուն եւ բարեկամներուն վերջին աստիճանի խեղճութեամբ մարիլ ու մեռնիլը: Դժբախտութեամբ Ռուսաց ստորին պաշտօնատէրներն ալ՝ իրենց կառավարութեան բաղձանաց եւ կամացը դէմ՝ սաստիկ արտասուելի թշուառութիւնը մեղմելու համար բան մը չըրին. մանաւանդ թէ անոնցմէ շատերն ան աստիճանի անամօթացան որ քիչ մը շարժական ինչք ունեցող քանի մը գաղթականաց ձեռքէն՝ նոյն փոքր մնացորդն ալ կողոպտեցին առին: Աս բարի, անմեղ ու գործասէր Հայազգի գեղացիները 14 տարի Արագածի վրայ բնակելէն ետքը դեռ չկրցան քիչ մը հողի առնել, եւ շատ անգամ հնձոց անյաջողութեան հանդիպելով՝ ծանր տուրքերու տակ կը հեծեն եւ ողբալի վիճակի մը մէջ են: Ստուգիւ արժանի են ասոնք որ Տփղիսի ընդհանուր կուսակալն անոնց գտնուած վիճակին վրայ մինչեւ հիմակ եղածէն աւելի հոգ ու խնամ տանի:

Հայաստան իմ տեսած Ալպեան երկիրներուս մէջ Արագածի մեծ դարատափը պինտ գեղեցիկն է: Ռուսի Կաւկասին վրայ չկայ ուրիշ տեղ մը, որ ծաղկըներուն պէսպիսութեամբն ու շատութեամբը, աղբիւրներուն առատութեամբն ու ամառնային օդին քաղցրութեամբը հաւասար ըլլայ Արագածի: Հայաստանին երջանիկ ատենները մեծամեծ մարդիկ, եկեղեցականներն ու ժողովուրդն աս սիրուն տեսքին եւ զով ու զօրացուցիչ օդին յարգն աւելի աղէկ կը ճանչնային: Շատ ամայի վանքերն ու շատ գեղերու

աւերակները կը ցուցընեն թէ ժամանակաւ հոս ինչ խիտ բազմութիւն կար։ Պարսիկ կուսակալներն ալ հոս սիրուն գիւղական բնակութիւն մ'ունէին, ուր ամառուան սաստիկ տաքերը կը փախչէին, երբոր Երասխայ դաշտերուն վրայ Յուլիսի տապն ամէն տըն-կերը կը չորցընէր եւ Երիւանի բոլորտիքն ալ տենդ կը յաճախէր։ Աս լերանց օդաբաժինը վերջին աս-տիճանի առողջ է, եւ ձմեռուան խստութեան վրայ այնպէս դժգոհացող գեղացիներն ալ իրենց բնա-կութեան աս պարծանքը յիշատակելու չմոռցան։ Հոս ոչ տենդ կայ, ոչ ժանտախտ հասած է երբեք աս բարձրութեան եւ ոչ ալ ուրիշ տարափոխիկ հիւանդութիւններ։ Թէպէտ ամէնքն ալ անանկ խիստ պահք կը պահեն ու այնչափ ողորմելութեան մէջ են, այսու ամենայնիւ զօրաւոր ու ջղոտ տեսք ունին։ Ինծի դժուար եղաւ աս առողջ, զով ու ամառուան մէջ սաստիկ զուարթ ու ծաղկեալ լեռնադաշտը թողուլ եւ նորէն իջնալ Արաստանի հովիտներուն մէջ տապակին օդ շնչելու։

## ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

Արագած լեռներէն մինչեւ Կումրի երկրաբանական քննու-թիւն։ Նոր Կումրի կամ Ալէքսանդրուպոլիս քաղաքին ստո-րագրութիւնն ու բնակչաց թիւը։ Կումրիի բերդին ամրու-թիւնն ու մեծութիւնը։ Գլխաւոր տեղեաց իրարմէ ունե-ցած մղոնական հեռաւորութիւնը։ Դարձ ի Արաստան։ Կում-րիի մօտ երկրին բոյսերը. փայտի պակասութիւն։ Հարմալը դեղ։

ԱՐԱԳԱԾՈՒ դարատափին հիւսիսային կողմէն վար իջայ դէպ ի Կումրիի լեռնադաշտը, բայց աս ահա-գին լեռնաստանին այլեւայլ գեղեցիկ տեսքերը դի-տելու համար շատ տեղ կը կենայի։ Սայդ Արագած հրաբխային լերանց զատ խումբ մըն է, սակայն հիւ-սիսային արեւմտեան կողմանէ անկար կապակցութիւն մ'ունի ան լերանց գօտւոյն հետ, որն որ Ախալցխէ (Ախըսխա) քաղաքէն սկսեալ՝ զանազան շետկութեամբ

յատակէն կու գայ եւ Արագածի պէս ան լերանց հետ կը միանայ, որոնք Սեւանայ ծովը կը պատեն։ Արագածի վերջին ծայրերուն ու Սեւանայ ծովէն լերանցը մէջ միայն Ապարանի ձորը կայ, որն որ նեղ ու բարակ սահման մը կը կազմէ։ Կումրիի լեռնադաշտէն Արագածու միայն երկու հիւսիսային կոնաձեւ կատարները կ'երեւան, որոնցմէ Ախուրեան գետին կողմը դարձածը փոքր Արարատին կը նմանի։ Աստ տափարակ կատարը Յուլիս ամսոյս մէջն ալ գեռ թանձր ձիւնեղէն վերարկու մը ծածկած էր, ուր որ Արագածի մէկալ կատարներուն վրայ ամէն տեղ մերկ ու մոխրագոյն արատոտ քարը ճերմակ ծածկութին մէջէն գլուխը դուրս հանած կը նայէր։ Հրաբխային ահեղ կազմութիւնները մինչեւ Կումրիի լեռնադաշտը կը տարածուին, ու շատ զարմանալի կերպով երեւան կ'ելլեն Ախուրեան գետին քովերը, ուր լեռան ահագին վազած ու ծածկած է խայտակուռը (օսմանլը մէրմէրը), որն որ Արագածը, ինչպէս նաեւ Հայաստանի ամէն լերանց գօտիներն ու նոյն իսկ Կումրի քաղքին յատակը լեցուցած բռնած է։ Կումրիի դաշտերուն հողը շատ բերրի է, իսկ վրայի բլուրներուն նիւթն է հրաբխային փշրաքար [1], ասոր վրայ շինուած է նաեւ Նոր Կումրի կամ Աղեքսանդրուպոլիս քաղաքը հոյակապ բերդովը, որուն պատերը, Ռուսաց աղուոր եկեղեցին եւ քաղքին բոլոր շէնքերը նոյն փշրաքարէն շինուած են։ Յայտնի կ'երեւայ թէ աս նշանաւոր փշրաքարը ջրի զօրութեամբ ձեւացած է եւ կամ հրաբուխներէն վազած տղմալից հոսանքները բերած են, որովհետեւ իր գլխաւոր նիւթն է փշրած որձաքար [2]։ Թէ որ հոս աս դիւրաւ կոփելու եւ շէնքի շատ յարմար փշրաքարը չգտնուէր, Ռուսաց խիստ դժուար ու վերջին աստիճանի բաղ-

[1] Գղ. Tuf. տճկ. Այաք թաշը։
[2] Գերմ. եւ Գղ. Feldspath.

մածախ կ՚ըլլար Աղէքսանդրուպոլսին անանկ հոյակապ բերդը շինել, ինչու որ սեւակուճ կամ երկաթակուճ[1] տրասատոյ եւ ուրիշ խիստ ապառաժ քարերը կոփելն ու գործելը շատ դժուար է: Արարատի ու Սեւանայ ծովին քովերն ալ փշրաքարին եւ ոչ փոքր նշմարանքը տեսայ:

Պտոյտներս լմնցընելէն ետքը՝ ինծի բաւական հանգստեան տեղ եղաւ Նոր Կումրի կամ Աղէքսանդրուպոլիս, ինչպէս որ Ռուսերն ուզեցին անուանել: Ասիկայ միայն պատերազմի նկատմամբ երեւելի եւ ամուր դիրք է, բայց վաճառականութեան եւ արուեստից կողմանէ նշանաւորութիւն մը չունի, եւ Ռուսաց նոր քաղաքներուն կը նմանի, այսինքն կատարեալ կանոնաւորութիւն, ուղղագիծ եւ ընդարձակ փողոցներ, զօրանոցներու նման շէնքեր, մեծամեծ հրապարակներ, եւ ամենայն ինչ օդբանուկ, բաց ու միակերպ: Բնակչաց թիւն է գրեթէ 6000 հոգի, որոնց մեծ մասը կը կացուցանեն Տաճկաստանէն գաղթող Հայազգիները, որոնք հոս ձեռագործէ ու խանութպանութենէ կ՚ապրին:

Կաւկասի ասդիի ու անդիի կողման նահանգներուն մէջ Ռուսաց շինած բերդերուն ամենէն երեւելին ու հրաշակերտը Կումրիինն է: Սեւ ու Կապոյտ ծովերուն եզերաց վրայի բերդերն ամրութեան եւ ընդարձակութեան կողմանէ ամենեւին չեն կրնար ասոր հետ համեմատուիլ: Ասիկայ փշրաքարէ բլրի մը վրայ շինուած է, քաղքին վրայ կը տիրէ. իսկ իր բոլորտիքն եղած ժայռերը թէ կէս մը պատի տեղ կը բռնեն, եւ թէ անոր բնական ամրութիւնը կ՚աւելցընեն: Հոս մարդ կը տեսնէ ընդարձակ եւ հաստաբեստ զօրանոցներ, ընդերկրեայ խցեր, մթերանոցներ, նկուղներ, հիւանդանոցներ, որոնց ամէն մէկը կրնայ մտածուիլ իբրեւ զատ զատ ամրոց: Վերջա-

[1] Գղ. Basalte.

պէս Սեբաստուպոլիս (Սեւաստոփոլ) քաղաքէն զատ՝ ինչ որ Ռուսաց պատերազմական շէնք տեսայ նէ, Կումրիի բերդէն շատ վար կը մնայ։ Պոնտոսի քով Ռուսաց ամրոցներուն վրայ տեսնուած անհոգութիւնը ու վերիվերոյ գործելը չիտեսնուիր Ախուրեան սահմանաբերդի ճարտարապետին վրայ։ Հոս շէնքը հանգստեամբ գործուեցաւ եւ կամաց կամաց յառաջ գնաց. 1846ին լմնցած պիտի ըլլար, ու թնդանօթներով եւ ամէն պատերազմական մթերով լեցուած։

Աս Ախուրեան բերդը 60,000 հոգւոյ բանակ կրնայ ընդունիլ, եւ յանկարծական պատերազմի կամ յարձակման ատեն բոլոր քաղաքին ու գեղերուն բնակչացը համար ալ բերդին մէջ տեղ կայ։ Բերդին բնական ու արուեստական սաստիկ ամրութեանը նայելով՝ քանի մը հազար բերդապահներ ալ բազմագունդ թշնամեաց դէմ երկայն ատեն կրնան պաշտպանել։ Ռուսի Հայաստանին մէջ ասոր հետ մէկտեղ ուրիշ երկու երեւելի դիրք ալ կայ, որ պատերազմի ատեն իբրեւ դուրս ելլելու դուռ կրնան մտածուիլ, այսինքն Սարդարապատի կիրճը Խոշավանքի վրայէն, եւ Արարատին այն կիրճն որ Պայազիտի հիւսիսային կողմն է։

Ճամբորդներուն դիտութեանն ու դիւրութեանը համար հոստեղաց ու Տաճկի Հայաստանին քանի մը երեւելի տեղերուն իրարմէ ունեցած հեռաւորութիւնն ալ դնելն աղէկ է։ Կումրիէն մինչեւ Կարս է 65 ռուսական մղոն (վէրսթ, որն որ հասարակ քալելով գրեթէ 17—20 րոպէի ճամբայ է). Կարսէն մինչեւ Քէթէնլի 25 ռուս. մղոն։ Ասկից երկու ճամբայ կայ՝ Երասխայ քովի Կերպիկեւ ըսուած տեղը հասնելու, որոնց մէկը կ'երթայ Տէլի-Մուսա-Փէրունին վրայէն եւ 80 ռուս. մղոն է, մէկալը Ջիրիքի վրայէն 100 ռուս. մղոն։ Աս երկու ճամբան ալ Կերպիկեւ կ'երթան կը միանան. հոսկից մինչեւ

Հասանգալէ 15 ռուս. մղոն. անկից ալ ինչուան Կարին (Էրզրում) 40 ռուս. մղոն. աս մղոններուն ամէնը մէկտեղ այսինքն՝ Կումրիէն մինչեւ Կարին կ'ընէ 225—245:

Կումրիի եւ Տփղիսի մէջ Ռուսերը դեռ շիտակ կառուղի (կառք անցնելու համար լայն ճամբայ) շինած չեն: Ով որ կ'ուզէ օթեւանով (փոշթով) ճամբորդութիւն ընել, կը պարտաւորի ճամբէն շատ շեղել ու Տիլիշան կրճին վրայէն երթալ, ուր Երեւանի արահետը կը հասնի: Բայց ես կէս մը՝ պարզած երկիրներու մէջ մ'ալ անցնելու յօժարութիւն չունենալով, կէս մ'ալ Ռուսաց սայլակառքին (Թելեկային) ահագին ցնցումներէն սոսկալով՝ Ճէլալ-Օղլուին ու Լալուար լերան վրայէն Վրաստան դարձայ: Աս վախճանաւ Կումրի հինգ ձի բռնեցի եւ առաւուանց կանուխ ճամբայ ելայ Ռուսաց աս սահմանաքաղաքէն, որն որ թէպէտ առողջ օդ ունի, բայց Ռուս պաշտօնատէրներէն իբրեւ աքսորանաց տեղ մը կ'առնուի, ինչու որ ձմեռը սաստիկ ու երկարատեւ է եւ փայտ գտնելն ալ դժուար: Աս լեռնադաշտն ամառը կը զարդարուի պարարտ խոտերով եւ սիրուն ծաղկըներով, սակայն ան հասարակ անտառ կը պակսի: Հոս նոյն իսկ մշակեալ եւ ընտանի ծառերուն միայն ան տեսակները կրնան ձմեռն անվնաս անցընել, որոնք ծովէն երեսէն գրեթէ 5000 ոտնաչափ բարձր տեղեր կ'աճին եւ 25—30 Ռէ. ցրտութեան աստիճանին կրնան դիմանալ: Աս ծառերու պակասութիւնն ու գետնին մերկութիւնը Կումրիէն մէկ օրուան ճամբայ հեռու ալ կը շարունակէ:

Աստոյգ է որ ամէն տեղ հիւթալից խոտերուն կանաչ եւ գոյնզգոյն ծածկոյթն ու գեղեցիկ ալպեան ծաղիկներն աս լեռնադաշտին երեսն ու բոլոր լերանց կողերն ու հովիտները շքեղ ու զուարճ կը զարդարեն, ամառնային արօտն ալ շատ ընտիր

եւ սքանչելի է, սակայն պարապ տեղ մարդուս աչքը կը փնտռէ բարձր ծառերու անտառ մը հողմաշարժ ու վարսաւոր ճիւղերով, որուն տեղը չեն կրնար բռնել ամենագեղ ալպեան ծաղիկներն ալ. Նոյն իսկ վայրենի վարդի թփերն անգամ, որոնք հազիւ թէ գետնէն վեր կանգուն մը կը բարձրանան, դժուարագիւտ են: Իսկ ցած ու կարճ տնկերուն կ'երեւայ թէ հրաբխային փշրաքարին հողը շատ օգնութիւն կ'ընէ, ինչու որ ասիկայ օդին, ջրին ու տնկոց հիւթերուն ազդեցութեամբը շուտով կը փխրի ու կը մանրի, եւ փտտած բոյսերուն հետ խառնուելով՝ մութ ու պարարտ հող կ'ըլլայ: Այս փշրաքարը Կումբիէն մինչեւ Համամլը գեղէն անդին կը տարածուի: Բայց կ'երեւայ որ հոս անտառ չգտնուելուն աւելի պատճառ եղած է մարդիկներուն քանդիչ ու ապականիչ ձեռքը քան թէ օդաբաժնին խստութիւնը: Համամլը գեղին մէջ ծերունի մը ինծի պատմեց որ իր տղայութեան ատեն հոս բարձր եղեւին (չամ) եւ ոփի (կոյըն աղաճը) ծառերու շքին ներքեւ կը խաղայ եղեր. զորոնք հետզհետէ շէնքի ու վառելու գործածելով՝ ընդարձակ տեղւոյն բոլոր անտառներն ալ ջնջեր ու արմատաքի են խլեր: Այս պզտիկ Համամլը գեղին բոլորտիքը արտաքոյ կարգի ձեւերով ժայռեր կան: Կումբիէն ելլելէս ետեւ առաջին գիշերօթս հոս ըրի, ուր եկեղեցական մը տեղւոյն առողջ օդը շատ գովելով՝ հաստատեց որ իրենց մէջ 110 եւ անկից ալ աւելի տարուան ծերեր շատ կ'ըլլան, ու բնակչաց մեծ մասը կը տեսնէ իր երրորդ մինչեւ չորրորդ սերունդը:

## ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

*Հատուեղաց ձիերուն գերազանցութիւնը։ Գըշլախ գեղն ու անտառները։ Հանքային ջուրը։ Տէրգէր գեղն ու Լալուար լերինք։ Ռուսի Հայաստանին բնակչաց թիւը։*

Աս տեղուանք ձիով ճամբորդութիւնը մարդուս ստոյգ բերկրութիւն կը բերէ։ Կումրիի քաղաքապետին գրով տուած հրամանը մեզի ամէն տեղ պատրաստ ձիանք ճարեց. ասանկով միշտ կանուխկեկ կը հանէինք ան տեղն ուր որ գիշերօթել կ'ուզէի, եւ չմթընցած՝ երկրաբանական մուրճը, տնկացոյցն ու միջատ բռնելու ցանցը հետս առնելով՝ չորս դին մէյ մը պտըտելու ժամանակ կ'ունենայի։ Կումրիի եւ Վրաստանի մէջ եղած լեռնագաւառին ձիերուն ցեղը շատ ազնիւ էր, եւ նոյն իսկ Գարապաղին ուժեղ ձիերն ու Երասխայ դաշտին կրակոտ երիվարներն ալ արտաքին գեղեցկութեամբ, շուտութեամբ ու տոկացողութեամբ կը գերազանցէ։ Ամենէն ողորմելի գեղերուն մէջն ալ բուն հասարակ գրաստներն անգամ ձեւերնուն կողմանէ անանկ զարմանալի աղուորութիւն ունին, եւ անանկ սէգ, ազնիւ ու ամէն մէկ շարժման մէջ սիրուն են եւ միանգամայն այնպէս զօրաւոր, խրոխտ եւ վառվռուն՝ որ կարծեմ թէ նոյն իսկ Շթութկարթի տիեզերահռչակ արքունի ձիատաններուն մէջ Հայաստանի աս կողման գեղացւոց ձիանքն ալ շատ աղէկ կը փայլէին։

Ինծի կ'երեւայ որ Գերմանացի ձիավաճառի մը համար դէշ առուտուր չէ՝ հոսկից ձի տանելու փորձ մ'ընել։ Նոյն իսկ Կումրիի մէջ խիստ գեղեցիկ որձ ձի մը քիչ անգամ 60 արծաթ ռուբլիէն (ֆուրշուօ-վռանցէն) աւելի կ'արժէ։ Անկից մինչեւ Տրապիզոն 16—18 օրուան մէջ ձին հանգիստ կրնայ բերուիլ, ասկից ալ ինչուան Թրիեստ գրեթէ նոյնչափ ատենուան մէջ շոգենաւով կը հասնի։

Գումրիէն ելլելէս երկու օր ետքը Հայոց Գըշլախ գեղին քով առաջին անտառներուն տեսքը զիս շատ ուրախացուց։ Ով որ երկայն ատեն մերկ ու լերկ լեռնաստանի մը վրայ կեցած է նէ, կրնայ իմ ուրախութիւնս իմանալ։ Ճուտ մը չուն կեցուցի, ըռուերը վար առնել տուի, եւ աղուոր ոփի ծառի մը շքին ներքեւ բարձր խոտի վրայ հանգչեցայ։ Մարդիկներս խռիւ ու չոր ճիւղեր ժողվելով՝ ուրախաբար խարոյկ մը վառեցին, որուն ծփեալ բոցերն ու ճայթիւնը մեծ զուարճութիւն տուին ինծի։ Բայց իմ Իւան Խազախս փայտին ճայթող բոցերն այնչափ չզուարթացուցին, որչափ կաթսային մէջ շառաչող եղն ու փիլաւն ու հաւը։ Աս զով շքին մէջ հանգչելէն եւ կերակրով կազդուրելէն ետքը՝ նորէն ճամբայ ելանք Տէրգէր հասնելու համար։ Եւ որովհետեւ աս կողմերը խումբ մը Թաթար աւազակներու պատճառաւ վտանգաւոր կը համարուէին, Խազախներուն մօտաւոր պահականոցէն (խօ-ըլօ-խէն) ուղեկիցներ առի։ Գըշլախին Հայազգի բնակիչներն ալ քանքատեցին որ շատ հեղ իրենց գեղը կու գան կը կողոպտեն, այսու ամենայնիւ տեղւոյն Ռուս վերակացուն հրաման չէտար որ իրենց ապահովութեանը համար քովերնին հրազէն ·պահեն։

Ցարասի[1], ոփի ու ցախի (տէշղու-փագ) ծառոց անտառակներու քովէն ճամբանիս յառաջ տանելով՝ Բամբակ ըսուած կրճէ մը անցանք ու կամաց կամաց վեր ելանք մինչեւ ալպեան դաշտաներու բարձրութեան, ուր ծառերը կը սկսին ցանցառ երեւալ եւ երթալով կարճաբերձ կ՚ըլլան, եւ հետզհետէ բոլորովին կը դադրին, ու անոնց տեղը կը յաջորդեն պարարտ ալպեան բոյսեր։ Հոս գեղեցիկ տունկ մը գտայ, զորն որ Բարտլինգ բնապատումը Հինայ Վագներեան (Alcanna Wagneri) անուա-

[1] Bouleau. Ղուշ աղաճը։

նեց . սակայն հոս 6000—6500 ոտնաչափ բարձրութեան վրայ առատ կ'աճի: Կրճէն վեր ելլելու առեննիս հանքային ջուր մը տեսայ՝ Սելթերսեան[1] ջրին նման, սակայն աւելի հաճոյական, սիրուն ու աղն ալ քիչ, բայց ստուգիւ ածխոյ թթուն ալ նուազ: Մեր Հայ ուղեցոյցը հաստատեց որ այս աղբիւրը 1827ին գետնաշարժէն ետքը բխելու սկսաւ. յառաջագոյն աս կողմերն ասանկ հանքային ջուր եւ ոչ գիտեին եղեր: Տփղիսի մեծամեծներուն ամառուան չոր ու տաք ատեն այս աղբիւրը թէ իբրեւ զովութեան եւ թէ առողջութեան միջոց կրնայ ծառայել:

Տէրգէր անուն պզտիկ գեղին մէջ զինուորականներ բնակութիւննին հաստատած են, ասկից քանի մը ժամ ձիավարելով՝ մարդ կը հասնի Ճելալ Օղլու ըստուած գեղեցիկ հովիտը, որն որ Բամբակի կրճին հիւսիսային կողմն է: Հոս լեռնաբնակ աւազակ Թաթարներուն յարձակման վախը կը դադրի, անոր համար ես ալ հեռու եղած զինուոր ուղեկիցներուն ճամբայ տուի չնչին պարգեւ մը տալով: Աս Տոնաւխեան խազախները հաւատարակօրէն իրենց ծառայութեան փոխարէն շնորհակալութիւն կամ վարձք ընդունելու տեղ՝ խիստ ու նախատական խօսքեր լսելու անանկ վարժած են, որ ամենէն փոքր պարգեւն ալ զիրենք շատ կ'ուրախացընէ եւ խոնարհական շնորհակալութիւններ ընելու կը շարժէ: Ճելալ Օղլու հովտին քովերը դարձեալ ուրիշ գաղթականութիւն մը կայ, ուր սպասաւորս (ծառայութիւննին լմնցուցած) զինուորները կը բնակին. ասոնք Տէրգէր բնակողներէն աւելի բազմամարդ են, եւ երեւութին նայելով՝ վիճակնին ալ աւելի հանգիստ ու բարեկեցիկ է: Մենք

[1] Սելթերս Գերմանիայի մէջ Նասաուի դքսութեան մէկ գեղն է, ուր շատ անուանի ջերմուկներ կան, որոնք ամէն տարի $1\frac{1}{2}$ միլիոն շիշ հանքային ջուր ասդին անդին կը խաւրեն:

հոս տեղւոյն ամենէն ունեւոր Հայուն քով օթեւանեցանք, որն որ Սահակեան կ'անուանուէր եւ մեզի մեծ հիւրընկալութիւն ցուցուց։

Ճ՛ելալ Օղլուէն ճամբաս շիտակ դէպ ի Վրաստան ուղղեցի, եւ առանց տեղ մը կենալու օրուան մէջ երկայն ատեն կը ձիավարէի։ Աս վերջին օրերը գրելու բան մը չպատահեցաւ։ Քաթարինէն-ֆէլտ (Կաթարինեայ դաշտ) ըսուած գերմանական գաղթականութեան հարաւային կողմը կան Լալուար լերինք, որոնց ամենէն բարձր կատարին վրայ Վրաստանի տնկերուն պինդ վերին սահմանը կամ Ալպեան [1] գաւառը հասայ։ Հոստեղաց տնկերն ու միջատները Հայաստանին ալպեան գաւառիններուն հետ նոյն են. բայց Կովկաս լերանց այսչափ բարձրութեան վրայ ուրիշ տեսակներ կան։ Լալուարին անծառ կատարէն շուտ մը տերեւաբեր տնկերու անտառները հասանք իջանք, ուր ամէն կողմ կանաչազարդ ու ծաղկաւէտ էր, օդն ալ համեմահոտ բուրմունքով լի։ Հարաւային երկիրներու մէջ ասկից գեղեցիկ տնկոց աճում չէի տեսած։ Լալուարին կողերն ու անոնց կից լեռները Վրաստանի բնակչաց համար դեռ դարերով փայտի պաշար ունին։ Բայց երկրիս աս շքեղ նախանտառներուն ալ, որոնց մէջ շատ յաղթ ու երկնաբերձ հացի, ոփի ու թեղօշ ծառեր կան, կու գայ ջնջուելու ժամանակ, երբոր Ռուս փայտահարներուն (անտառ կտրողներուն) տապարը Կուր գետին քով եւ Տփղիսի հիւսիսային գին ալ աւրելու եւ կտրելու բան չիգտներ։ Ասկից ես Տփղիս իջայ հանգչելու բնապատմական հաւաքումներս կարգի դնելու եւ Հայաստան ըրած ճամբորդութեանս պատմութիւնը գրելու համար։

* Լերանց վրայ Ալպեան գաւառը կը սկսի ծովին երեսէն 6000—10,000 ոտնաչափ բարձրութեան մէջ, ուր ծառերը կը պզտիկնան ու երթալով կը մնան թուփ, խոտ ու մամուռ։

Հոս կը գտնենք Պր. Վաղներին Ռուսի Հայաստանի բնակչացը վրայ տուած վիճակագրութիւնը, բայց՝ ինչպէս յայտնի է՝ Ռուսաստանի Հայերուն միայն մէկ պզտիկ մասը Ռուսի Հայաստանի մէջն է. իսկ իրենց բուն բազմութիւնն է անկից դուրս, այսինքն Վրաստանի կողմերը, Խրըմ, Լեհաստանէն Ռուսի ձեռք անցած գաւառներուն մէջ, Տոն կամ Տոնաւիս գետին քովերը (Նոր Նախիջեւան), Աժտէրխան եւ Ռուսաց կայսրութեան ուրիշ ներքին կողմերը, որոնց ամէնը մէկտեղ 500,000ի մօտ կը համարուի։

Ռուսի Հայաստանը երեք գլխաւոր նահանգ ունի, որ են՝ Երիւան, Նախիջեւան եւ Որդուպատ կամ Աստապատ. ատոնց մէջ 1841ին կար 164,450 հոգի. որոնցմէ 122,968 հոգի Երիւան նահանգին միայն, 30,507 Նախիջեւանին, 10,975 Որդուպատին։ Կրօնական կողմանէ նայելով՝ աս բնակիչները գլխաւորաբար երկու կը բաժնուին, այսինքն 82,377 քրիստոնեայ, եւ 81,749 մահմետական. իսկ Եզիտիներն են 824ի չափ. Հրեայ ամենեւին չկայ։ Եզիտիները 67 թափառական ընտանիք են, մահմետականաց մէջէն կայ 1344 թափառական ընտանիք, եւ 14,734 ընտանիք հաստատուն բնակութիւն ունին. իսկ քրիստոնէից ամէնն ալ հաստատաբնակ եւ ամէնն ալ Հայազգի է։ Աս Հայազգի բնակչաց թիւը յառաջագոյն էր 4428 ընտանիք՝ 25,151 հոգւով. բայց 1828ին եւ 1829ին Պարսկաստանէն 8036 ընտանիք 35,560 հոգւով եւ գրեթէ նոյն ատենները Տաճկաստանէն ալ 3682 ընտանիք՝ 21,666 հոգւով[1] եկաւ. ատով Հայազգի բնակչաց առաջին թիւը գրեթէ երեքպատիկ եղաւ։

[1] Աս հաշիւը Ռուսաց խօսքին պաշտօնատէրը կու տայ, իսկ Ֆոնթօն՝ որ ան կողմերը գացող բանակին մէջն էր, կը դնէ 90,000 միայն Տաճկաստանէն եկած Հայազգի. նոյնպէս ամենք Պարսկաստանէն եկածները մինչեւ 80,000 կը հանեն. աս վերջին հաշիւներով Ռուսի Հայաստանին

Այս բնակիչներէն 20,377 անձինք մայրաքաղաքաց մէջն են, այսինքն 11,463 Երեւանին, 2599 Նախիջեւանին եւ 3444 Որդուպատին մէջ. այս վերջին նահանգական մայրաքաղաքը նոր դրուեցաւ։ Իսկ 24,906 տուն այս երեք նահանգին մէջ երկրագործութեան կը պարապին։ Ցեղով հատուածոց բնակիչներն էին 10,413 Քիւրտ, 6807 Այրումը, 1935 Թաթար, 1000 Մուղանլը, 6473 Խանչէրլի, որոնք իրենց խաժ աչքովը ու խարտեաշ մազովը շատ նշանաւոր են. ասոնցմէ զատ կային նաեւ զանազան ազգաց ժողովուրդներ։ Չինկեանէներէն 157 տնուորի չափ կար, ոմանք քրիստոնեայ (որոնք Հայոց մէջ Բոշայ կ'ըսուին), ոմանք ալ մահմետական։ Բայց Հայաստանին այս մասը Ռուսի ձեռք անցնելէն ետեւ՝ այս խառնիճաղանճ ազգերը կամաց կամաց ուրիշ տէրութեանց երկիրները քաշուելով՝ պակսեցան եւ դեռ կը պակսին, որով քրիստոնեայ բնակչաց թիւը միշտ կը շատնայ։

Հայաստանի բնակչաց թիւը շատ կ'աւելնայ, բայց գուցէ խոլերն այնչափ հազարներով մեռածներուն թիւը հանած ըլլայ։



## ՎԵՑՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ[1]

Լերանց գեղեցիկ տեսարան։ Գուդօշ, Սաւկաւ, Ծաղկեալ ու Ցանուտուած լերինք։ Ասոնց հրաբխային նիւթերը։

ՌՈՒՍԻ Հայաստանը 1843ին գարնան պտըտելու տեսնելս՝ կ'ուզէի Ցաճկաստանի ու Պարսկաստանի մօտաւոր սահմաններն ալ տեսնել, բայց զանազան պարագաները, մանաւանդ վերջին աստիճանի տօթը ու երկայն քառասնօր (կարանթինա) պահելու վախը զիս արգիլեց։ Ջրհեղեղեան լերան միայն հիւսիսային կողմը քննած էի, ու հոն շաբաթ մը կեցեր էի տաքը՝ նորէն դէպ ի հիւսիս դարձայ որ քիչ մը ատեն Արագած լերան վրայ կենամ, վասն զի ասիկայ իր դրացւոյն (Արարատին) համեմատութեամբ խիստ քիչ քննուած էր։ Ասկէց տարի մը վերջը Պերլինի Թագաւորական ճեմարանին ձեռնտուութեամբը կարող եղայ նաեւ Օսմանեան Հայաստանին ալ այցելութիւն մ'ընել եւ Մասիսը մինչեւ հիմնակ անծանօթ եղած հարաւային կողմանէ զննել։ Ուստի 1844ին Յունիսի 17ին վաճառականաց կարաւանի մը հետ Կարինէն (Էրզրումէն) ճամբայ ելայ որ Պայազիտ քաղաքն երթամ։ Կարաւանը ծանր ճամբորդութիւն կ'ընէր, եւ հաստատակօրէն առաւօտուն Ցերեկը ժամուն կը հանգ-

[1] Պր. Վակներ իր գրքին մէջ աս ու վերջէն եկող երեք գլուխները մասնաւորապէս գլխէն յատուկ անցուցած է ան մտածմամբ որ թերեւս աս վերջին չորս գլուխները տարի մը առջի եղած ճամբորդութեան ստորագրութիւնն է, բայց իրենց նիւթը 9—10 գլուխներուն մէջ գրուած Արարատայ զննութեանցը կը վերաբերի, ուստի եւ քովէ քով դրուելով աւելի դիւրաւ կրնայ ունեցուիլ ամբողջ ու ամփոփ տեսութիւն մը Արարատի վրայ. բայց մենք պատմութեան թելը չկտրելու համար՝ վերջէն եղած բանը մէջը խառնել չուզեցինք, ուստի եւ առջինէն եղածը թողուցինք։ Կարծենք թէ աս փոփոխութիւնը Մասիսու կողմնութեան վրայ ամբողջ գաղափար ունենալ ուսող-ներուն արգելք մը չ'ըլլար։

չէր, ասով տատ ժամանակ կ'ունենայի երկրաբա-նական մուրճը (չէ+էճը) ձեռքս՝ պտըտիլ Հայոց լեռ-ներուն վրայ եւ եռացման կէտին միջնորդութեամբն այլեւայլ բարձրութիւնները չափել։

Ոմանք կ'ըսեն թէ Տէլի Պապա գեղին քովերէն Արարատ լեռը տեսնուելու կը սկսի, բայց ստոյգ չէ, որովհետեւ Սուկաւ լերան (Քէօսէ տաղի) չորս դին եղած բարձր լեռները Տէլի Պապային արեւելեան կողմն կենալով՝ Արարատայ կատարներուն տեսքը կը գոցեն։ Ես Տէլի Պապայէն 7 ժամ դէպ ի արեւելք երթալէս ետքը՝ Մասիսու մէկ կատարը տեսայ, որն որ Սուկաւ լերան մօտերէն կ'երեւար։ Մութ եւ ան-ձրեւն լերանց ետեւէն ան հին սառած հրալեռը իբրեւ ահագին ճերմակ բուրգ մը կը բարձրանար կ'ելլէր յստակ, անամպ ու անծուխ օդի մը մէջ եւ մարդոց աչուըներուն պերճ տեսիլ մը կը պարգեւէր։ Հոս սկսաւ սիրտս ուրախութեամբ բաբախել, ինչպէս կը պատահի հին սիրելի բարեկամ մը տեսնելու ատեն։ Ա՛ 30 ժամէն աւելի հեռաւորութեան մէջ Արարատ միայն՝ իր բարձրութեանը հասնող նախանձաւոր մը չունենալով ճերմակ հսկայ գլուխը կը վերցընէ եւ աւելի շքեղ կ'երեւայ քան թէ Երեւանի քովէն։ Աս հեռաւորութենէն՝ կատարեալ կանոնաւոր կոնի մը կը նմանի մի միայն սուր ծայրով մը, եւ իր այլ-եւայլ կատարներուն լայնութիւնը չիտեսնուիր։ Նշա-նաւոր տեսք մը աս է որ Սուկաւեան շղթային լեռ-ները քանի որ Արարատայ կը մօտիկնան, այնչափ ցած կ'երեւան. եւ ամենէն ցած երեւցածին քով մէ-կէն ի մէկ յառաջակողմեան Աօխայրին պինտ հզօր հսկան (Արարատ) ինք զինքը ցուցընելով՝ սքանչելի ընդդիմապատկեր մը կը ձեւանայ։

Յունիսի 22ին կարաւանը Թօփրագ գալէ քաղաքն իջաւ։ Հոս լերանց ընդարձակ ու գեղեցիկ տեսարան մը կը բացուէր։ Մեծ Արարատին ճերմակ բուրգը

# ՎԵՑՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ [1]

*Լերանց գեղեցիկ տեսարան։ Գոռող, Սուկաւ, Ծաղկեայ ու Ցանասուտակ լերինք։ Ասոնց հրաբխային նիւթերը։*

ՌՈՒՍԻ Հայաստանը 1843ին գարնան պտըտելու ատենս՝ կ'ուզէի Ցաճկաստանի ու Պարսկաստանի մօտաւոր սահմաններն ալ տեսնել, բայց զանազան պարագաները, մանաւանդ վերջին աստիճանի տխուր ու երկայն քառասնօր (կարանթինա) պահելու վախը զիս արգելեց։ Ջրհեղեղեան լերան միայն հիւսիսային կողմը քննած էի, ու հոն շաբաթ մը կենալէս ետքը՝ նորէն դէպ ի հիւսիս դարձայ որ քիչ մը ատեն Արագած լերան վրայ կենամ, վասն զի ասիկայ իր դրացւոյն (Արարատին) համեմատութեամբ խիստ քիչ քննուած էր։ Անկէց տարի մը վերջը Պերլինի Թագաւորական ճեմարանին ձեռնտուութեամբը կարող եղայ նաև Օսմանեան Հայաստանին ալ այցելութիւն մ'ընել և Մասիսը մինչև հիմակ անծանօթ եղած հարաւային կողմանէ զննել։ Ուստի 1844ին Յունիսի 17ին վաճառականաց կարաւանի մը հետ Կարինէն (Էրզրում) ճամբայ ելայ որ Պայազիտ քաղաքն երթամ։ Կարաւանը ծանր ճամբորդութիւն կ'ընէր, և հասարակօրէն առաւօտուան Ցերորդ ժամուն կը հանգ-

[1] Պր. Վակներ իր գրքին մէջ աս ու վերջէն եկող երեք գլուխները մետասաներորդ գլխէն յառաջ անցուցած է ան մտածմամբ որ թերեւս աս վերջին չորս գլուխները տարի մը ետքն եղած ճամբորդութեան ստորագրութիւնն է, բայց իրենց նիւթը 9—10 գլուխներուն մէջ գրուած Արարատեայ զննութեանցը կը վերաբերի, ուստի և քովէ քով գրուելով աւելի դիւրաւ կրնայ ունեցուիլ ամբողջ ու ամփոփ տեսութիւն մը Արարատի վրայ. բայց մենք պատմութեան թելը չկտրելու համար՝ վերջէն եղած բանը մէջը խառնել չուզեցինք, ուստի և ամենէն ետքը թողուցինք։ Կարծենք թէ աս փոփոխութիւնը Մասեաց կազմութեան վրայ ամբողջ գաղափար ունենալ ուզողներուն արգելք մը չ'ըլլար։

չէր, ատով առատ ժամանակ կ'ունենայի երկրաբանական մուրճը (չէքիճը) ձեռքս՝ պտըտիլ Հայոց լեռներուն վրայ եւ եռացման կէտին միջնորդութեամբն այլեւայլ բարձրութիւնները չափել։

Ոմանք կ'ըսեն թէ Տէլի Պապա գեղին քովերէն Արարատ լեռը տեսնուելու կը սկսի, բայց ստոյգ չէ, որովհետեւ Սուկաւ լերան (Քէօսէ տաղին) չորս դին եղած բարձր լեռները Տէլի Պապային արեւելեան կողմն ըլլալով՝ Արարատայ կատարներուն տեսքը կը գոցեն։ Ես Տէլի Պապայէն 7 ժամ դէպ ի արեւելք երթալէս ետքը՝ Մասիսու մէկ կատարը տեսայ, որն որ Սուկաւ լերան մօտերէն կ'երեւար։ Մութ եւ անձիւն լերանց ետեւէն ան հին սպառած հրաբուղխը իբրեւ աշխարհին ճերմակ բուրգ մը կը բարձրանար կ'ելլէր յստակ, անամպ ու անծուխ օդի մը մէջ եւ մարդուս աչուըներուն պերճ տեսիլ մը կը պարգեւէր։ Հոս սկսաւ սիրտս ուրախութեամբ բաբախել, ինչպէս կը պատահի հին սիրելի բարեկամ մը տեսնելու ատեն։ Աս՝ 30 ժամէն աւելի հեռաւորութեան մէջ Արարատ միայն՝ իր բարձրութեանը հասնող նախանձաւոր մը չունենալով՝ ճերմակ հսկայ գլուխը կը վերցընէ եւ աւելի շքեղ կ'երեւայ քան թէ Երեւանի քովէն։ Աս հեռաւորութենէն՝ կատարեալ կանոնաւոր կոնի մը կը նմանի մի միայն սուր ծայրով մը, եւ իր այլեւայլ կատարներուն լայնութիւնը չի տեսնուիր։ Նշանաւոր տեսք մը աս է որ Սուկաւեան շղթային լեռները քանի որ Արարատայ կը մօտիկնան, այնչափ ցած կ'երեւան. եւ ամենէն ցած երեւցածին քով մէ-՝կէն ի մէկ յառաջակողման Ասիային պինտ հզօր հսկան (Արարատ) իւր գլուխը ցուցընելով՝ սքանչելի ընդդիմապատկեր մը կը ձեւանայ։

Յունիսի 22ին կարաւանը Թօփրագ գալէ քաղաքն իջաւ։ Հոս լերանց ընդարձակ ու գեղեցիկ տեսարան մը կը բացուէր։ Մեծ Արարատին ճերմակ բուրգը

նաեւ ճամբուն վրայ ալ կը տեսնուէր. "Մասիս նայեցէք" պոռացին կառավարին ձիապանները, որոնց աչուըներն ուրախութենէ կը փայլէին ա'ս սուրբ լեռը տեսնելով՝ զոր ոչ մեծապէս կը յարգեն: Հարաւային դին իր արծաթափայլ գլուխը կը ցուցնէ Գողոզ[1] լեռը (Սեյղան տաղը), որն որ Վանայ ծովին՝ բարձր լուսատու աշտարակ մը կ'ըլլայ: Ասիկա Թօփրագ գալէին հարաւային կողմն եղած տարահարթ լերանց վրայ կը բարձրանայ, եւ յայտնապէս անոնց միացած լերանց շարունակութիւնն է, որն որ նաեւ Վարնոյ լեռնադաւառին հարաւային կողմը կը պատէ եւ անկից կ'երթայ դէպ արեւելեան հարաւ: Գողոզ լեռը հօս շատ կողմանէ զատուած կ'երեւայ. իր կոնի ձեւը Մասիսու երկու կատարներուն չափ ճիշդ չէ, ծայրը շատ լայն ու տափարակ է, եւ ամբառ ձիւնապէզ ունի վրան: Իր ձեւը նման է Աֆրիկէի Ատլաս լերանց Ջուրջուրային: Մինչեւ հիմա միայն Պրանդ՝ Անգղիացւոց Վարնոյ հիւպատոսն եղաւ, որ Գողոզ լերան վրայ ելաւ ու երկրաբանօրէն զննեց: Նոյն լերան վրայէն Պրանդին բերած քարետեսակներն էին արատաւոր սեւագագնդ[2], շէջաքար եւ մրրախառն լաւա: Անտարակոյս կ'երեւայ որ Գողոզ լեռն ալ ժամանակաւ Արարատի պէս գործունեայ հրաբուխ մ'եղած է, բայց իր բերանը Վանայ ծովին բոլորտիքը պատահած քանդիչ երկրաշարժներով փլած ու գոցուած պիտի ըլլայ: Պոնտոսէն մինչեւ Երասխայ հովիտը Հայաստանի բարձրադաւառին բոլոր լեռներուն մէջ Գողոզ լեռը Մասիսէն ու Արագա-

[1] Աս Սեյղան տաղը Հայաստանի զարմանալի լեռներէն մէկն է իրեն ձեւովը, բարձրութեամբը, վրան ունեցած ձիւնովը եւայլն: Եւրոպացիք աս լեռը քննած են եւ դեռ կը քննեն ու տաճկերէն անուամբ Սեյղան տաղը կ'անուանեն. մեր քննութիւններն անանկ ցուցուցին որ ասիկայ Գրիգոր— կամ "Նեբրովթեայ լերանց մէջ Գողոզ լեռն եղած ըլլայ:

[2] Mélaphyr.

ծէն ետքը սառուցին ամենէն վեհ լեռն է, եւ Պոնտոս ծովին երեսէն առ նուազը 12,000 ոտնաչափ բարձր եղած պիտի ըլլայ։ Բայց բարձր Հայաստանին աս երկու սահմանապահ վսեմ լերանց շքեղ տեսարանէն զգացած ուրախութիւնիս դժբախտութեամբ երկայն ատեն չտեւեց, ինչու որ քիչ մը վար իջնալնուս պէս՝ մառասուր լերանց գօտիները զանոնք ծածկեցին։

Թօփրագ գալէի լեռնադաշտը Հասանգալէի լեռնադաշտէն կը զատուի լերանց գօտիով մը, որն որ Կարնոյ, Հասանգալէի ու Թօփրագ գալէի հիւսիսային կողմը կը շրջապատէ։ Աս կողմնակալն գօտւոյն վրայ եղած ամենէն բարձր անբոյս լերան անունէն առնելով՝ հիմա բոլոր գօտին աշխարհագրողներուն վրայ Քէօսէ տաղը (Սուկաւ լեռ)[1] կը կոչուի։ Աս գլխաւոր գօտիէն ուրիշ աւելի ցածկեկ լերանց ճիւղ մ'ալ կ'երկըննայ, եւ Թօփրագ գալէն կը բաժնէ Պայազիտի լեռնադաշտէն, որն որ մինչեւ Մասիսու հարաւային ոտքը կը տարածի կը հասնի։

Կիւրտերուն Տիատին գեղին մօտ Եփրատայ արեւելեան ճիւղին քովէն դէպ ի վեր դացի ու նոյն գետին աղբերակունքը մօտիկցայ, որն որ Ծիւնաւէտ Ծաղկաց լերան (Ալատաղ) ստորոտին վրայ է։ Անկէց ետքը մէկ Տաճիկ վարոցաւորի (հօճ հօճ) ու երկու Քիւրտ ձիաւորի ուղեկցութեամբ Պայազիտի լեռնադաշտը հասայ, երբոր կարաւանը դեռ Տիատինէն ժամ մը հեռու կը հանգչէր։ Տիատինին մօտերը Եփրատայ երկու կողման եզերացը վրայ տաքուկ ջուր կիր (ջէրմ) կայ, որն որ մինչեւ Արարա-

[1] Աս լերանց Քէօսէ տաղը անունը ոմանք իրենց քարց ու լերկ ըլլալէն առնուած կը կարծեն, բայց Հայ բանասէրներն աւելի յարմար կը սեպեն՝ աս Քէօսէ անունը Սուքիասանց Քօշէյ անունէն յառաջ բերել, որոնք աս լերան վրայ բնակեցան։

տակաւ կը հասնի։ Պայազիտին արեւելեան կողմը 2 ժամ՝ հեռու բուն առաջին մեծ լաւայի զանգուածները կ'երեւան. վասն զի թէպէտ Սեւ ծովէն մինչեւ Ատրպատական գաւառը զանազան նշաններէն կ'իմացուի որ հոս երկայն ատեն հրաբուխ լեռները գործած են, բայց բուն հրաբխի բերք ինչպէս են մրրախառն լաւա, վանակատ, ճերմակ չեչաքար եւայլն, խիստ քիչ կը գտնուի։ Իսկ հոս Օսմանեան Հայաստանին աս վերջին լեռնադաշտին վրայ մէկէն ի մէկ ահռելի մեծութեամբ երեւան կ'ելլեն երկայն ատեն բռընկող հրաբուխներուն ահագին բերքերը, եւ կը ցուցընեն թէ ան հսկայ հրաբուխը (Արարատ) մօտ է, որն որ վերջին դժբախտութեան օրը դաշտին վերջին ծայրը կեցած ու իր արծաթի կատարը ճերմակ ամպերու մէջ ծածկած էր։ Հոս լաւաները վրայէ վրայ դիզուած են ու զանազան մեծութեամբ բլուրներ կը կազմեն. ամենէն բարձրները 200 ոտնաչափէն աւելի են։ Քանի որ մարդ նոյն լեռնադաշտին վրայ յառաջ կ'երթայ, լաւայի եւ բլուրներուն տարածութիւնն ու բարձրութիւնը կ'աւելնայ։ Բայց լաւայի հոսանքը Մասիսէն չէր, հապա Տանտուրակ ըսուած բարձր լեռնէն, որ Մասիսէն դէպ ի հարաւ 6 ժամ հեռու է։ Տանտուրակ ան հինգ մարած հրաբուխներէն մէկն է, որոնք աս կողմանէ Հայաստանի բարձրագաւառին սահմանը կը պատեն։ Աս լեռը երկու կատար ունի. բարձրագոյնը սրածայր է, իսկ ցածագոյնը տափարակ ու հրաբխի բերնի ձեւով։ Լերան բոլորտիքը կան ամբաւ հրաբխային նիւթեր, մանաւանդ մրրախառն լաւա, ձիւթաքար եւ աղտոտ ճերմակ գունով չեչաքարի բլուրներ։ Կարաւանի Հայ ճամբորդները չեչաքարէն խել մը առին իրենց դանակներն ու հրացանները մաքրելու եւ փայլեցընելու համար։ Հոս լաւայի քարերն անանկ մեծ են որ ջրերու հոսանքները չեն կրնար առնել տանիլ ու դաշ-

տերու վրայ տարածել։ Բայց Պայազիտ քաղաքէն գրեթէ ժամ մը հեռու սա լաւայի բլուրները կը դադրին։ Նոյնպէս Արարատայ լաւային հոսանքն ալ Պայազիտ քաղաքին տեղը հասած չէ։

## ԵՕԹՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

*Պայազիտ քաղաքը։ Լերանց կիրճ ու երկրաբանական դիտողութիւնք։ Աւազակ Քիւրտերու վրայ մէկքանի ծանօթութիւններ։*

ԹԷՊԷՏ այսօրուան օրս Պայազիտ քաղաքը փլած ու աւերած է, թէպէտ իր կէս Հայ ու կէս Քիւրտ բնակիչները վերջին աստիճանի խեղճութեան մէջ են, այսու ամենայնիւ ճանապարհորդներու համար տեսնելու արժանի քաղաք մըն է։ Սեպ ու ժայռուտ դահաւանդի (ապաղաքարի) մը վրայ ունեցած ահեղ ու նկարակերպ դիրքը, եկեղեցիներուն եւ բերդերուն աւերակները, իր լեռնաբերդը[1], որն որ յանդուգն ու հրաշակերտ շէնք մըն է այնպիսի տեղերու վրայ հաստատուած, ուր բազէներն ու անգղները (ակ դղապաները) հազիւ թէ կը համարձակին բոյն դնելու, գմբէթաւոր բոլորակաւ Մահմուտ փաշային շքեղ՝ բայց անբնակ մնացած պալատը, որուն՝ մեծութեան, հարստութեան ու գեղեցկութեան կողմանէ՝ հազիւ թէ նմանը կը գտնուի բոլոր Օսմանեան տէրութեան մէջ, աս ամէն բաները, կ'ըսեմ, խիստ նշանաւոր են ու բազմօրեայ քննութեան մը արժանի։ Երկրաբան մը քաղաքին մօտակայ տեղուանքը արտաքոյ կարգի ղար-

[1] Սուլթան Մուրատէն շինուած աս լեռնաբերդին աւերակներուն բանտերէն մէկուն մէջ դեռ ան սոսկալի խաւարը կը տեսնուի, որուն մէջ Մահմուտ փաշան Պարոն Ժոպեր (Jaubert) Գաղղիացին երկայն ատեն արգելեց, որպէս զի Նաբոլէոնէն Պարսից թագաւորին խաւրուած ընծաները կարող ըլլայ իրեն սեփականել։ Բայց երբոր Մահմուտ ու իր յաջորդը ժամանակէն մեռան, Պր. Ժոպեր իր բանտապանին մեծամեծութեամբը նորէն ազատեցաւ։

մեծնալի բնական նիւթեր կը գտնէ, որոնց քննութիւնը մարդը լաւ կը վարձատրէ, թէպէտ աս անպատմելի տեսակ քաղաքին մէջ երկայն ատեն կենալու պատրաստուած ըլլայ: Թօփրագ գալէին ու Տիատինին քով երեւան ելած բաց գունով կիրը (+էշէճը) նաեւ Պայազիտի քով Արարատին դիմացը կարգ մը ուհապին կայլին լեռներ կը ձեւացընէ, որոնց մէջ շատ քարացեալ կենդանիներ կան: Աս կրաքարը հասարակօրէն շատ պինդ, գորշ (մօխ), ճերմակ, խեցուտ եւ գերմանական յուրայեան[1] խիտ կրին շատ նման է:

Շատ տեղեր աս կիրը կարմրկեկ է ու մարմարի նման, ուր որ Պայազիտի անանկ անշուք խրճիթներուն աղէկ նիւթ կը մատուցանէ, բայց ափսոս որ գործածուած չէ: Աս խիտ կրին մէջ եղած քարացեալ կենդանիները գլխաւորաբար են սատափ կամ կամ սանտրակ[2], նետաքար[3], ծակաքար[4] եւ ուրիշ խեցեւոր ժժմունք: Կիրը սաստիկ պինդ ըլլալով՝ աս քարացեալներուն հանել ժողվելը թէպէտ ըստ ինքեան խիստ դժուար է, բայց աւազակ քիւրտերն ալ աւելի եւս վտանգաւոր կ'ընեն: Աս կողմերուն քիւրտերն աւելի վայրենի ու յելուզակ են քան թէ Կարնոյ մօտ բնակողները: Օգոստոսին վերջերը երբոր Պարսկաստանէն Արարատի հարաւային կողմերն եկայ՝ երկայն ժամանակ հոն կենալու համար, երկրաբանական պտոյտ մ'ըրած ատենս երեք քիւրտ աւազակներ վրաս յարձակեցան: Ասանկ պարագաներու մէջ քարացեալներու հարուստ հաւաքում մը կարելի չէր: Աս կիրը խիստ շատ տեղ շկտուտ ու խաւ խաւ (գոլ

[1] Յուրա երկրաբանութեան մէջ շատ երեւելի է Յուրայեան կիրը կամ Յուրայեան յօրինուածը, որուն անունն առնուած է Զուիցերիի ու Գաղղիայի մէջ եղած Յուրա լեռնէն: Ասոր վրայ տես Բնական պատմութիւն, Բ. Հատոր, Վիեննա 1844, Երես 198:

[2] Լտ. Pecten. տճկ. Թարաք: [3] Գղ. Bélemnite. [4] Գղ. Térébratule.

կողմը եւ Երասխին ընդարձակ դաշտին վրայ սաստ եւ ոչ փոքր նշմարանքը կը տեսնուի։ Արարատ պտըտող բնակոյցները, ինչպէս են Դուանըրֆոր, Բաւազ, Պեհակըլ եւ Ցիպուա նոյն կողմերը քարացեալ մը չգտան։

Արարատայ սա երկրորդ անգամ այցելութիւն ընելէս քանի մը ամիս առաջ երբոր Ռուսիոյ ծովակին կողմանէ Սալմաստին վրայէն Տաճկաստանի սահմանները դարձայ, աւազակ Քիւրտերուն վտանգն աւելի սաստկացեր էր։ Հունձքը կորուած դաշտերուն արօտը ճարակուած լմնցած ըլլալով՝ Քիւրտ հովիւները լերանց վրայ կը թափառէին ու կարաւաններու եւ ճամբորդներու դարանակալ կ՚ըլլային։ Պարսից վերջին տեղւոյն վերակացուն Գուլ Խան աւազակներու վրայ չափազանց պատմութիւններ պատմելով՝ զիս աւելի վախցընել ուզեց, որպէս զի հետս շատ զօրք առնելու ստիպուիմ ու իրեն ալ մեծկակ պարգեւ մը տամ։ Բայց ես միայն քանի մը զինեալ ձիաւոր մէկտեղ առնելով՝ նեղ ճամբէ մը սկսայ յառաջ երթալ, որն որ շիտակ Պայազիտ կը տանէր, եւ ուսկից որ երբէք կարաւան անցած չէ։ Լերան տափարակ ու դեռ կանաչազարդ գլխուն վրայ ձիավարելով գացինք խել մը սեւ վրաններու (չադըրներու) առջեւէն, որոնց մէջ հաստեղաց ամենաչար Քիւրտ աւազակները կային։ Ասոնք յառաջագոյն գիտնալու ըլլային, որ աս՝ Եւրոպացւոց դեռ չկոխած ճամբուն վրայէն մենք կու գանք, հաւանական է թէ իմ ու իմ քիչուոր պահապաններուս վրայ կը յարձակէին։ Մեզմէ ժամ մը հեռու ձիաւոր ու սպառազէն Քիւրտերը կարաւանի ճամբուն վրայ դարանած էին, որոնց ընկերները հոս լերան գլուխը վրաններն ու ոչխարներն արօտի վրայ կը պահպանէին։ Իրենց ձիերը լերանց դարվար տեղերուն վրայ ցրուած՝ խոտ կ՚ուտէին. զանոնք ժողվելն ու թամբելը գոնէ

մէկ ժամու գործք էր. ասոր համար մեր ետեւէն իյնալու խորհուրդը մէկդի թողուցինք: Երբոր ամենաբարձր կատարը հասանք ու անկից դէպ ի Պայազիտ կ'իջնայինք, մեր առջեւը լերանց սխրալի տեսք մը բացուեցաւ: Հոս քառորդ մը կեցայ՝ լերանց աս պերճ ու մեծվայելուչ տեսարանին մէջ աչուըներս պարարելու համար. սակայն հարիւր ոտնաչափ մը վար իջնալէն ետքը՝ նոյն նկարական գեղեցկութիւնը կորսնցուցինք:

Երկայն ատենուան աշխատանքէն ու ուղղակնե-րու վախէն առողջութեանս վիճակն այնչափ աղէկ չէր, անոր համար մեծ Մասիսին հարաւային զառիվայրը քննելու այնչափ յօժարութիւն չէի զգար: Սակայն հանգստեան ատենները երբոր Ռիդդէրին երկրագրութեան մէջ Արարատայ ստորագրութիւնը կը կարդայի, տեսնելով որ աս մեծ աշխարհագիրը զօրաւոր խօսքերով նոյն լերան հարաւային կողման դեռ չքննուած ու անծանօթ ըլլալը կը ցուցընէ, ինծի նորէն քաջասրտութիւն ու փափաք եկաւ: Ըստ ինքեան հրապուրիչ բան է Անծանօթ Երկիր մը պտըտիլ, անանկ տեղւոյ մը մէջ շարժիլ ուր մարդ կարող ըլլայ ըսել. Հոս ես առաջինն եմ որ եկայ իրմէ յառաջ հոս գիտուն ճամբորդ մը կամ աշխարհաշրջիկ մը դեռ ամենեւին ոտք կոխած չէ: Աս պատճառաւ ես ալ իմ տկարութեանս միտ չդնելով՝ քաղքին փաշային աղաչեցի որ ինծի մէկքանի ուղեկից զինուոր տայ. եւ իրմէ ընդունեցայ երկու հատ քաջ, վարժ ու նոյն կողմերուն հմուտ Քիւրտեր, որոնք որոշեալ օրը սպառազինած ու գեղեցիկ ձիերու վրայ հեծած՝ բնակութեանս առջեւն եկան կայնեցան: Ես ատրճանակներս աղէկ մը լեցուցի, որովհետեւ Քիւրտերուն վերջին յարձակումը զիս աւելի զգոյշ եւ կասկածոտ ըրած էր. նոյնպէս Յովհաննէս Սարեմպա Լեհ ծառաս թամբի վրայ չե-

լած՝ իր կրկնափող հրացանը քանի մը անգամ լեցուց պարպեց ցուցընելու համար որ ամէն բան պատրաստ է։ Իսկ Պիլուշ մեր հայազգի ձիավարը հանդարտ ու անդէն մեղի հետ կու գար՝ պատահական յարձակման մը առեն մեր զէնքերուն վրայ վստահելով։ Հետս առկից աւելի բազմութիւն առնելը այնչափ խոհեմական բան չսեպեցի, ինչու որ շատ Քիւրտերու մէջ կրնայ դիւրութեամբ գտնուիլ նաեւ այնպիսի չարագործ մէկն ալ, որն որ աւելի՝ ճամբորդին բոլոր ինչքը քան թէ անոր տալու պարգեւը ձեռք բերելու բաղձալով՝ մութին մէջ սպանութեան խորհուրդ մը դնէ եւ մէկնողներն ալ իրեն գործակցութեան հրապուրէ։ Իրմէ յառաջ ալ զարհուրելի կողմերը աւազակներուն դժբախտ դէպքեր կը մտածէի, ինչպէս Ծոպեր, զորն որ իր բազմաթիւ Քիւրտ ուղեկից զինուորները Մահմուտ փաշային. գաղտնի հրամանաւ յարձակելով բռնեցին, կապեցին, եւ լեռնաբերդին խաւարչուտ բանտը նետեցին. դարձեալ Շուլթ ու Պաւուն, որոնց երկուքն ալ իրենց պահապան Քիւրտերէն դաւաճանութեամբ սպաննուեցան։ Երկու Քիւրտի դէմ ես ու Լեհ ծառաս կրնայինք պատերազմիլ. իսկ աս երկուքին հաւատարիմ մնացած ատենը աւելի մեծագոյն խմբէ մը վախնալու բան չունէինք։ Քիւրտ աւազակները ճամբորդի մը միայն չեն ըներ, երբ որ կը տեսնեն թէ անոր ուղեկիցներն ու պաշտպանները Քիւրտերն են։ Հին առածը կ'ըսէ. Ագռաւ զագռաւու աչս ոչ բրէ։

## ՈՒԹԵՒՏԱՄՆԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

*Մուրատաշէր գետակ։ Մասիսին հարաւային կողման քարերը։ Քրդաց ամառուան ու ձմեռուան կեանքը։ Արարատայ վերջին ժայթքմանը վրայ նորէն քանի մը ծանօթութիւն։ Արարատայ փորն ու վրայի ամայութիւնը։*

ՊԱՑԱՋԻՑԻՆ հիւսիսային կողմը ժամ մը երթալէն ետքը Մուրատաշէր գետակը հասանք, որն որ Արարատի հարաւային կողման ստորոտը պատելէն ետեւ՝ դէպ արեւելք կը վազէ ու Մակու գետին հետ կը խառնուի։ Մուրատաշէրին վրայ բաւական հաստատուն կամուրջ մը կայ, որն որ լաւաջ քարերէ շինուած է եւ շատ հին կ'երեւայ. գոնէ Քիւրտերը չկրցան ինծի աւանդութիւն մը տալ անոր շինուած ժամանակին վրայ։ Հոս Մասիսին դուրս տուած հրաբխային քարերուն հարաւային ծայրն է, որոնք միաշար բլուրներ կը ձեւացընեն. ասոնց մէջի քարի շառաշէղները կամ հատորները մինչեւ 100 ոտնաչափ ու աւելի ալ կը հասնին եւ Տանտուրակ լերան հրաբխային քարերուն շատ նման են, միայն աս տարբերութեամբ որ Մասիսի լաւային բուն զանգուածը սեւակուճ կամ երկաթակուճ[1] է, եւ մէջն ալ շատ տեղ վանակն կամ ակնվանի[2] ցրուած է, իսկ Տանտուրակին հրաբխային նիւթերն աւելի փրփրանման ու պղպջակաւոր են եւ վանակն ալ չունին։ Հաւանական է որ Տանտուրակ լերան լաւան աւելի սաստիկ տաքութեամբ եւ աւելի հեղուկ վազած ըլլայ քան թէ Արարատինը. չեչաքարն (փոմզա [illegible]) ալ Տանտուրակին քով Մասիսին ունեցածէն շատ աւելի է։ Նաեւ յայտնի նշաններ կան որ ժամանակաւ հասատեղաց հրաբուխները հեղեղներով աւազ ու տիղմ ալ դուրս են տուեր, զորոնք լերան վրայէն վազած ջուրը հետը վար բերած է։ — Արարատայ բոլորտիքը ջրհեղեղէ ժամա-

[1] Գղ. Basalte, տճկ. [illegible]։

[2] Գղ. Cristal, տճկ. [illegible]։

նակէն քարացեալ նիւթեր կամ գործարանաւոր մարմնոց մնացորդներ դեռ գտնուած չեն։

Մուրատաշիրն անցնելէն վերջը լերան հարաւային արեւելեան ստորոտը ձիով պտըտեցայ, ու Քիւրտերուն Քանիկուրդ, Չիթլիք եւ Տեմիրգափը լքեալ ու անբնակ գեղերուն այցելութիւն ըրի, որոնց խեղճութիւնը խելքէ մաքէ դուրս բան մըն է։ Պզտիկ տնակները միայն չորս պատ ունին, զորոնք լուսոյ կտորները վրայէ վրայ դիզելով շինած են, եւ որոնց մէջ միայն ձմեռը բնակութիւն կ'ըլլայ։ Քիւրտերը նոյն ատեն գրեթէ սողալով անոնց մէջ կը մտնեն, պատերուն ծակերը աղմով եւ ապառաժով կը ծեփեն ու կը գոցեն, վրանին իրենց ոչխարենի մորթերը կ'առնուն, եւ աթարէ ալ կրակ մը կը վառեն՝ ցրտէն պաշտպանուելու համար, որն որ հոս սաստիկ է, եւ Փետրուարին մէջ սովորաբար 20—25 աստիճանի կը հասնի։ Դուարը (փալչարը) ձմեռուան ժամանակ պէտք է որ ձեան տակէն իր ճարակը փնտռէ գտնէ, որովհետեւ Քիւրտերը խար (չոր խոտ) կամ ոչինչ կամ քիչ կը պահեն. իսկ ձիանք քիչ մը գարի կ'ընդունին։ Ցայտնի է որ ասանկ պարագաներու մէջ Պայազիտի (Սըւխվանցի) Քիւրտերն այնչափ խաշնաւէտ չեն կրնար ըլլալ։ Արարատի շրջակայ տեղերուն .ձիւները հասարակօրէն Մարտի վերջը հալելու կը սկսին. Ջուրը լերան տափարակ կատարին մէկ մասը կը կոխէ, վտակներն ու գետակները շատ կը բարձրանան, եւ Մակու գետին առատ ջրեղէն ընծաներ կը խառնեն։ Բայց նիհարցեալ ու կարօտ դուարը հազիւ թէ Ապրիլի վերջը գեղեցիկ կանաչ արօտը կրնայ վայելել։ Նոյն միջոցները սովորաբար գարի կը ցանուի։ Քիւրտը ցորեկ ատեն իր ծխալից քարէ խրճիթէն կ'ելլէ, որպէս զի ոչխարները հեշտ արեւու մէջ ամենէն ընտիր արօտներու վրայ արածէ։ Գարնան զով օդը հոս աւելի շուտով ամառուան կիզիչ

տապին կը փոխուի քան թէ Կարնոյ լեռնադաշտին վրայ։ Ցունիսի վերջերուն մօտ Մասիսու բոլորտիքն եղած խոտերը կատարեալ այրած ու տոչորած կ'ըլլան։ Քիւրտն ալ տանէն իր ձմեռուան բնակարանը բոլորովին կը թողու, իր ոչինչ տնտեսանքը ձիերու վրայ կը դնէ, կնոջմով, տղոցմով ու դուարով համ-մանակից լերանց ծայրը կ'ելլէ. հոն թափառելով կը պտըտի, եւ լեռնամէջի մը խոտը լմննալուն պէս՝ իր սեւ վրանը կ'ամփոփէ՝ ուրիշ տեղ կ'երթայ։ Արարատ ամառը՝ հինգ ժամանակը դուրս հանելով՝ բոլորովին անմայր ու անմարդի է. իր ստորոտին ու ղառխմայլին վրայ երկու օր պտըտեցայ ու Քիւրտ մ'ալ չտեսայ։ Հասարակօրէն Սեպտեմբերին կէսէն ետեւ անձրեւները կը սկսին. ալ տանէն չորցած կանաչեղէնները նորէն կը զուարթանան։ Քիւրտը Հոկտեմբերին կուհով ու ընտանեօք իր ձգած խրճիթը կը դառնայ. ձիւնն ալ կանոնաւոր կերպով մը աս ամսոյն մէջ կու գայ։ Ասանկով Արարատայ օդային հանգամանքն ընդհանրապէս Հիւսիսային Գերմանիոյ հետ կը միաբանի, թէպէտ աս երկու երկիրներուն մէջ 16 լայնութեան աստիճանէն աւելի տարբերութիւն կայ, այսինքն Արարատ Հիւսիսային Գերմանիայէն 16 աստիճան աւելի դէպ ի հարաւ է. միայն Գերմանիոյ մէջ ան ամառուան չորութիւնը չկայ։

Արարատայ հարաւային արեւմտեան ստորոտը դարձեալ Քիւրտերուն քանի մը պզտիկ ու անբնակ գեղերուն այց ելայ, որոնք կ'ըսուին Ղօղլու, Ջելայ, Օրտուլու, Կորական, Ցակկլէք եւ Գարադուլաղ։ Վերջին գեղին մէջ որն որ Ռուսաց սահմանէն միայն երկու ժամ հեռու է, ձմեռը մէկքանի Քիւրտեր կը բնակին, որոնք յառաջագոյն Ակոռի գեղին հայազգի բնակչացը քով իբրեւ հովիւ կը ծառայեն եղեր եւ 1840ին վտանգէն ապրեր են։ Աս Քիւրտերուն մէկուն Պայազէտ քաղքին մէջ հանդիպեցա

եւ անոր բերնէն Ակոռիի կործանման ընդարձակ պատամութիւնը լսեցի, որն որ էական բաներու մէջ Հայազգի Սաղաթիէլ Խոջայեանին նկարագրութեանը համաձայն էր: Քիւրտը՝ Տիրոջօ ոչխարները լերան վրայ արածելով՝ Ս. Յակոբայ ձորին արեւելեան կողմը կեցած էի, ըսաւ, մէյ մ'ալ անդիէն սոսկալի բոմբիւն ու որոտում մը ձորէն դուրս թնդաց, ահագին կարմրաշողի ամպ մը վեր ելաւ, եւ վարէն օդի մէջ սաստիկ խոշոր քարի կտորներ կը նետուէին, որոնք վանքն ու գեղը ճզմեցին ու ծածկեցին եւ անկից ալ անդին դէպ ի դաշտ կը թռչէին: Ներքին դղրդիւնը, շոգիներուն վեր բուրելը, քարերուն, հողին ու տղմին նետուիլը լման ժամ մը տեւեց, անկից ետքը ամենայն ինչ հանդարտեցաւ: Քիւրտը խոստովանեցաւ որ Ակոռի գեղին ու իր տիրոջը կորուստը ստոյգ իմանալուն պէս՝ ոչխարներն առաւ Տաճկի սահմանն անցուց ու իրեն սեպհականեց: Աս բանիս ես իրաւունք ալ ունէի, կ'ըսէր, որովհետեւ տէրս ինծի մէկքանի ամսուան վարձք պարտական էր եւ բնական ժառանգ մը չունէր:

Հոս տեղերը ձիւնաջրէ յառաջ եկած սակաւաջուր վտակ մը կայ, որն որ պզտիկ ջրվէժ (շաղշաղան) մը կը ձեւացընէ. սակայն 30 ոտնաչափ բարձրութենէն ու ստոյգ սեւ քարերու վրայէն կը հոսի. քովիններուս հոս կենալ ու վրանս կանգնել տուի: Քիւրտ ուղեցոյցներս աս տեղը Ձիրք անուանեցին: Արարատի վրայ տեսած մի միայն ջրվէժս աս է: Արարատի ինչպէս հիւսիսային կողմը, նմանապէս հարաւային կողին ու ստորոտին վրայ ալ աղբիւրի պակասութիւն կայ. ասիկա նշանաւոր երեւոյթ մըն է, զորն որ արդէն յառաջագոյն յիշեցի: Ասով հաւանական կը տեսնուի թէ աս ծեր հրաբերան ներսի պարապ միջոցը ձիւնաջրով լեցուն ըլլայ, եւ հրաբխային կերպով լեռնէն դուրս օդ ու շոգի բորբոքալը շատ դիւրաւ կը

մեկնուի՝ ենթադրելով որ աս ջուրը բուն խորունկ հրաբխային կրակին մէջ հասած ըլլայ։ Արագած, Ահմանկան եւ Ծաղկաց լեռներն ու Կեավալուր տաղըն Արարատի պէս ապառաժ խայտակուճ քարէ բաղկացած են, բայց խիստ շատ աղբերակունք ու վտակ ունին, թէպէտ իրենց կատարին վրայ այնչափ առատ ձիւն ալ չկայ։ Ասկից դիւրաւ կ'իմացուի թէ Արարատին ամառն անբնակ կամ անբնակելի ըլլալուն պատճառն է անջրդութիւնը, որով նաեւ բոյսերը չեն կրնար յառաջ գալ։ Արարատի ինչպէս հիւսիսային, նոյնպէս հարաւային կողմն ալ երբ որ մինչեւ լերան վրայի ձիւներուն սահմանն ելլայ, աս ամայութեան երեւոյթը վրաս տխուր զգածմունք մը բերաւ։ Հետս եղած մարդիկներուն երեքը, այսինքն Լեհը, Հայն ու Քիւրտը ջրվէժին քովը մնացին ճամբու ախերով, իսկ երկրորդ Քիւրտը հազար ոտնաչափ մը անոնցմէ վեր ձիուս քովը կը կենար, որովհետեւ անկից վեր չկըրցայ ձիով ելլել։ Հոս քամենելի լռութիւն մը չորս դին կը տիրէր, եւ նոյն իսկ թռչունները կ'երեւայ թէ կը փախչին աս տեղէն, ուր հազիւ թէ ամենանուազ սնունդ մը կրնան գտնել։ Լերան կէսէն աւելի վեր ելայ ու չորս կողմը յայտնի կը տեսնէի։

## ԻՆՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

Արարատ ճշմարիտ հրաբուխ է։ Լերան գլուխն ելլելու փափաք։ Արարատայ հարաւային կողման ծաղիկները, ծառերն ու կենդանիները։ Պայազիտի քովէն Հայաստանի լերանց անհամեմատ ահեղ տեսքը։ Հայաստանի հին ու նոր հրաբխային վիճակին վրայ խորհրդածութիւններ։

ՍՈՒԳԳԵՐ անուանի աշխարհագիրը կը կարծէ որ Արարատ հրաբխային սկիզբէ յառաջ եկած չըլլայ, հապա երկրիս ներքին հրային զօրութեան հանդարտ ընթացքովը կամ որ նոյն է՝ Պղուտոնեան ճամբով գոյացած ըլլայ, որովհետեւ, կ'ըսէ, Արարատի վրայ

ոչ խառնարան (հրաբխի բերան), ոչ ալ ճշմարիտ լաւայի հոսանք գտնուած է։ Այսու՝ ամենայնիւ կոնաձեւ ու զառանկոց Արարատին հրաբուխ ըլլալն այնպէս յայտ է, ինչպէս Վեզուվ ու Էթնա լեռներուն դեռ այսօրուան օրս հրաբուխ ըլլալը։ Մասիսին ստորոտներուն չորս դին անանկ քարի տեսակներ կը գըտնուին, որոնք միայն հրաբուխներէն կ՚ելլեն։ Դարձեալ յայտնի կ՚երեւան ան կողմնական խառնարանները, որոնցմէ լաւա վազած է. բայց լերան կատարին վրայ եղած մեծ խառնարանին մնացորդները հաւանական է որ մշտնջենաւոր ձեան տակ ծածկուած ըլլան։ Իսկ եթէ լաւայի հոսանք փնտռենք, լերան ռուսական ու օսմանեան կողմանցը վրայ ակներեւ ու ամբաւ կը գտնենք։ Հօս լաւայի ամենամեծ հոսանքը վազած է դէպ ի պարսկական Հայաստանին Մակու քաղաքը. մէկ մասն ալ դէպ ի Պայազիտ մինչեւ Մուրատչայ վտակը։ Պր. Պեհակլ Գերմանացին կարծեց որ նոյն իսկ Ս. Յակոբայ կիրճը՝ զորն որ ինք Արարատայ 1840ին ժայթքումը չեղած տեսաւ, Մասիսու մէկ խառնարանին մնացորդն ըլլայ։ Բայց անտարակոյս կ՚երեւայ որ ինչպէս գրեթէ ամէն հրաբուխներուն, նոյնպէս Արարատայ ալ գլխաւոր խառնարանը բուն վերին կատարին վրայ եղած ըլլայ, ուր հիմա յաւետենական սպիտակ քողը՝ լեցուած անդունդին մնացորդը կը գոցէ։

Երկու սառնատար կամ սառնալեռ[1] տեսայ, որոնք լայն ճեղքուածի մը մէջէն դէպ ի հարաւ կ՚իջնէին։ Լերան վրայ կեցած ատենս՝ երբոր անոր

[1] Ասոր վրայ 102 երեսին ծանօթութեանը մէջ խօսած ենք. միայն աս կ՚աւելցընենք որ շատ անգամ սառնալերանց միայն յատակը հալելով՝ ջուրերուն մէջ կը սկսին սահելով շարժիլ ու մզոններով յառաջ երթալ, եւ ձորին երկու կողման լերանց քարուտ երեսն ալ սաստիկ զօրութեամբ քսուելով կը շփեն, կը մաշեցընեն, կը փայլեցընեն ու նաեւ գիծ գիծ կ՚ընեն։

երկու երկնաբերձ գլուխներուն նայեցայ, որոնք ծո-վէ 8000 ոտնաչափ վեր դէպ ի վճիտ կապոյտ երկինքը կը բարձրանային, վրաս նորէն րոպէական փափաք մ՚ եկաւ որ մինչեւ գլուխն ելլեմ։ Պահլուլ փաշան երբ որ դեռ Պայազիտի մէջ էր, ինծի ըսաւ որ Հայրս Մահմուտ փաշան շատ անգամ զանազան մարդիկներով նոյն գործքին ձեռք զարկաւ, եւ չկրցաւ յաջողցընել. Թէպէտ մեկուն մեկալին շատ սատակ խոստացաւ, սակայն լերան կատարն ելլող մը չգտնուեցաւ։ Բայց Ակոռիին բնակիչներն ալ արդէն Բառողին սաստիկ ըսած էին, որն որ աս խօսքով իր նպատակէն ետ չկենալով՝ պանծալի կերպով մը գլուխ հանեց։ Զիս ոչ դժուարութեանց վախը, ոչ ալ լերան անելանելի ըլլալը ետ կեցուց, ինչու որ թէպէտ ճամբորդութեան աշխատանքներէն տկարացած ու հիւանդագին էի, սակայն քաջասըրտութիւնը, համբերութիւնն ու հաստատուն յառաջադրութիւնը գուցէ ամէն բան կը յաղթէին. միայն թէ մտքիս մէջ ես ինծի հարցուցի. ի՞նչ պարծանք, ու գիտութեան համար. ի՞նչ օգուտ կը բերէ այնպիսի լերան մը ծայրն ելլելը, որուն կատարն արդէն ելած ու բարձրութիւնը թէ՛ ծանրաչափօրէն եւ թէ՛ երկրաչափօրէն խմացած են։ Միայն սնապարծութեան ու “Ես Մասիսու գլուխն ելած եմ„ ըսել կրնալու համար՝ պէտք չէ առողջութիւնն ու կեանքը վտանգի մէջ ձգել։ Աս մտքով լերան կատարն ելլելու պարծանքն ուրիշ երրորդի մը թողուցի։

Արարատին աս կողմը ժողված տնկաբանական ու կենդանաբանական հաւաքումս այնչափ երեւելի չէր։ Հրաբխային աւազին վրայ մինչեւ պզտիկ ջրվէժին բարձրութիւնը ստուգիւ շատ ծաղիկներ կը բուսնին, բայց տեսակնին այնչափ շատ չէ։ Ամառուան վերջերուն մօտ հազարտերեւուկները[1] դեղին ծաղիկնին

[1] Լտ. Achillea. տճկ. ճիվան փերչեմի։

բացած էին, քօսաքաղուկները[1] ճերմակ, եւ կերպ կերպ բոյսեր ալ՝ կարմիր, որոնք ամենքն շատ էին։ Այլ-եւայլ տեղեր անանկ սակաւաջուր գետնին վրայ ծաղիկներու այնչափ առատութիւնը տեսնելով սաստիկ ապշեցայ, բայց ատոնց ամէնն ալ նեղ տերեւներով էին, ինչպէս որ աւազուտ երկիրներու վրայ կ'ըլլայ։ Սակայն սա ծաղիկներու առատութեան քով կենդանեաց համար խիստ քիչ խոտ կար, այնպէս որ դաշտային ծաղիկներն ամէն կանաչները ծածկած էին։ Ստոյգ է որ շատ տեղ Կովկասի ու Նաեւ գերմանական մարգերու վրայ ծաղիկներու բազմագոյն գլուխը՝ խոտերուն ու բոյսերուն կանանչ մասերը կը գոցէ, բայց երկիրս վրայ տեղ մ'ալ անանկ ընդարձակութեամբ չտեսայ, ինչպէս Արարատ։ Լերան սա կողմը ծառ ամենեւին չկայ. ան ցարաքի ծառերուն որոնք պզտիկ Մասիսու վրայ անտառակ մը կը կազմեն, հոս եւ ոչ նշմարանքը տեսայ։

Հայաստանի բոլոր անտառները, զորոնք Հայոց լեռնադաշտաւորին վրայ տեսայ, գլխաւորաբար ան ծառերն ունին, որոնք միջին ու հիւսիսային Եւրոպայի մէջ կը բուսնին։ Ոփի, կաղնի կամ թեղօշ, աղոցի (փալամուտ կամ ֆիւրնար աղաճը), սօս (ակ եօղ աղաճը), հացի (ըէնտիէլան աղաճը), եղեւնի (սամուէլար աղաճը) եւ ուրիշ ատոնց նմանները ալինա շատերն են։ Իսկ հարաւային բոյսեր սա դաշտ ու հողմուտ լեռնադաշտի վրայ երբեք չեն տեսնուիր. ասոր համար բնախօսութեան մէկը շիտակ բսաւ թէ Նոյեան տապանին աղաւնին ձիթենւոյ շիւղ մը գտնելու համար Արարատէն խիստ հեռու[2] թռած պիտ'որ ըլլայ։ Իսկ Թիֆլիսէն երկու տեսակ գետոյ, որոնք զարմանալի կերպով մը լերան վրայի ձիւներուն սահմանին

[1] Լտ. Scabiosa.

[2] Իւ սակայն ստոյգ է որ Հարաւային Հայաստանի վերջին սահմանները մէկտալ Հարաւային ածկերէն շատ ձիթենի ալ կայ։

ժառ բուսած էին, այսինքն՝ Ցխրտ[1] ու Սերկեւլի շլոր[2]։ Ալպեան բոյսերը Մասիսու վրայ աւելի բարձր տեղուանք կ'աճին քան թէ Կաւկասի վրայ, բայց բոյսերուն նկարագիրն բաւ ամենայնի նոյն է. Ալպեան աստղ[3], Քարբեկ[4], Կաւկասեան անիճան[5], Ամենագեղ տերեփուկ[6] բոյսերն ինչպէս Կաւկասի, նոյնպէս Արարատայ ալ բարձր տեղերուն զարդերն են։ Ընդհանրապէս խօսելով չկայ Արարատայ վրայ բոյս մը, որ Զուիցցերիի Ալպեան լերանց վրայ իր երեսփոխանը չունենայ։ Մասիսու ալ կողման մեծ ու պզտիկ կենդանիներն ալ միջին Եւրոպայիններուն կը նմանին։

Արարատի հարաւային կողմն վրայ երկու օր կենալէն ետքը Պայազիտ դարձայ, եւ անկից ալ շիտակ Կարին։ Սուկաւ լերան բարձրութենէն վերջին անգամ Նոյեան լեռը տեսայ, ու իմ մշտնջենաւոր հրաժարական ողջոյնս տուի։ Բարձր Հայաստանի սահմանագլուխներուն վրայ ընդհանրապէս բնական ձեւերը շատ վեհ ու շքեղ են, բայց Մասիսու մօտակայ բոլորտիքը նոյն նկարագեղ դիրքերն այնչափ բազմաթիւ չեն։ Ապագայ ճամբորդներուն իբրեւ վերջին աստիճանի զարմանալի ու նկարելու արժանի՝ կը յանձնեմ այն տեղը, որն որ Պայազիտի ու Քիլիսէ քէնթի մէջ եղած լերան բարձրութենէն կ'երեւայ։ Թէպէտ չորս ամսէ ի վեր Հայաստանի ալպեան լեռներուն նայելէն բոլորովին կշտացած էի, այսու ամենայնիւ Արարատայ հակից երեւցած կողմն անհնարին դաժան տեսքը վրաս անանկ ազդեցուցիչ

1 Լտ. Juniperus Oxycedrus, որն որ գի (ոտրըն՞ ողայիը) ծառին մէկ տեսակն է։

2 Լտ. Cotoneaster uniflora.

3 Լտ. Aster alpinus.

4 Լտ. Saxifraga.

5 Լտ. Pyrethrum caucasicum. անգ. Նիւպալլի օճառ։

6 Լտ. Centaurea pulcherrima. անգ. (Սուրբ) Գոնֆլորիկս։

ազդեցութիւն մ՚ըրաւ որ երկայն ատեն չկրցայ նոյն տեղէն բաժնուիլ։ Մարդիկներուս հրամայեցի որ կենան ու ձիանքը դալվար տեղերուն վրայ ճարակի թողուն, ես ալ վերին ապառաժին վրայ նստեցայ։ Աս բանիս համար՝ հեռու եկող Պարսիկ ձիաւորները խիստ կը զարմանային, որովհետեւ աւազակ Քիւրտերուն սահմանէն դեռ դուրս չէինք ելած, եւ տեղացիք ալ չէին կրնար ըմբռնել թէ ինչպէս կրնամ անանկ դիրքի մը վրայ ապշիլ մնալ, որն որ իրենց հանապազատես բան մըն էր։ Մեր առջեւը դէպ ի վեր կը բարձրանային երկու ճաքթռտած, լերկ ու դորշ կրաժայռներ, որոնք Պայազիտ քաղքին վրայ կը նայէին. մեզմէ վար կը փայլէին լերան կարմիր մարմարի նման կողերը. այս երկու գոյներուն մէջտեղը կեցած էր զարմանալի քրդաքաղաքը (Պայազիտ) իր աստիճանաձեւ ու դար դար տներովը, որոնց վրայ բարձրէն կը նայէին Փաշային ահեղ դղեակն ու Մուրատին՝ լերան ճեղքուածին վրայ շինուած սքանչելի պալատը։ Մեծն Մասիսէն քիչ մը հեռու սեւ ու բրգնաձեւ պզտիկ Մասիսը կար, որն որ թէպէտ իր բարձրութեամբը Զուիցցերիի Եո՛ւնկֆրաու (Կոյս) ըսուած լերան կը հասնէր, եւ ծովին երեսէն չափելով՝ Եւրոպայի ամենէն բարձր Մոնպլան լերան գրեթէ կը հաւասարէր, սակայն իր հսկայ ու 16,000 ոտնաչափ բարձր դրացւոյն քով նկուն կերպարանք մ՚ ունէր։ Հիւսիսային արեւմտեան կողմը Մեծ Արարատին ու իր գօտւոյն մէջտեղէն կը նայէր մութ ու մռայլ Արագած հրաբուխը՝ գլուխը չորս բաժնուած ժայռէ պսակ դնող հսկայի մը պէս։ Հարաւային դին ամբարտակի պէս կ՚ամբառնային Տանտուրակ լերան վայրենի ու գրեթէ անձիւն ապառաժներն ու Ծաղկեցյ լեռը, որմէ Եփրատ կը բխէ, եւ որուն կատարին վրայ լայնատարած ճերմակ (ձեան) դաշտերը հանդարտ նստած էին։

Մինչեւ հիմակ Եւրոպայի, Ափրիկէի ու Ասիոյի մէջ ինչ տեղեր ու նկարագրեր դիրք որ տեսած էի, Հայաստանի սա լեռնային հովտակայ տեսարանին հետ երբեք չեն կրնար բաղդատուիլ, եւ նոյն իսկ կա-կառ պէտք է որ ետ քաշուի: Աս աշխարհին լաւոյն ամենապատուին տեսքը հիմակուընէ տասնապիկ աւելի պի-տի եղած ըլլայ անտառներները, երբոր նորէն հրային զօրութիւնները երկրին երեսը շարունակ կը պա-տռէին, խառնարաններուն որոտումը հիմակ տասնակ տարուր միացած լեռնադաշտին վրայ կը մնչէր, չորս դին հակայաձեւ հրաբուխներուն անդունդներէն սեւ սեւ շոգւոյ սիւներ դուրս կը ժայթքէին, Արարատի բոցերը մշտնջենաւոր ձիւնն ու սառցը կը մերժէին, եւ այն ամբաւ ու հիմակ սեւ փրփրի նման տասած լաւայի զանգուածը աուլելով, դառնալով, ծխելով լեռն ի վայր դետի պէս կը վազէր, եւ բոլոր դաշտը կը դառնար կ'ըլլար մեծանիստ ու փայլուն հրածով մը: Ան հին վառարանը, որմէ հազարաւոր տարիներ յա-ռաջ սա տխրատեսան ու պարծանքը լեռնակոյն եղած են, դեռ կենդանի է, եւ իր գոյութիւնը ցոյց կու տայ յաճախ դետնաշարժներով, ընդերկրեայ բոմբիւննե-րով, եւ ներսի օդերուն ու շոգիներուն դուրս ելլե-լու ջանալովը, որոնք խորին անդունդներու մէջ շղ-թայի զարնուած կը մռնչան:

Հայաստանին սա կողմերը դեռանկաչարժէ պատ-ճառած աւերները սոսկալի են. Պայազիտին կործա-նումն ալ ասոնցմէ կը կարծուի, վասն զի ասիկայ Արարատի ամենէն մօտիկ քաղաքն է: Հոս ամենէն հաստատուն ու հզօր շէնքերն ալ մէկ օրուան ա-պահով գոյութիւն չունին: Քանի մը տարի յառաջ Մահմուտ Փաշային վեհ դղեակը կը դողդոջար, հաստ ու ամուր պատերը պատռեցան փլան, որոնց կոր-ծանման թնդիւնը հասաւ մինչեւ այն խոր գե-րեզմանը, ուր նոյն ծեր բռնաւորը ճերմակ փայ-

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՆՊԱՍՏ

## Ի ԲՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԲԱՐՁՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ

# ՅԱՒԵԼՈՒԱԾ
# ՆՊԱՍՏ
# Ի ԲՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ԲԱՐՁՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ

---

## Ա. ՕԴԻ ԲԱՐԵԽԱՌՆՈՒԹԻՒՆ:

Բարձր Հայաստանի օդին Միջերկրեայ ու Պոնտոսի օդին հետ բաղդատութիւնը: Տաքութիւնն ու ցրտութիւնը: Տարւոյ եղանակները: Բերքերուն ու պտուղներուն հասնելու ատենները: Ցեղացմունք: Հայաստանի օդին առողջականութիւնը:

Բարձր Հայաստանի օդին վրայ մինչեւ հիմայ երկայն ու ապահով քննութիւններ չեն եղած: Եւրոպացի բնախօսները նոյն երկրին զանազան կողմերը պտըտեցան, բայց ամենէն նշանաւոր տեղերն ալ հազիւ թէ մէկերկու ամիս մնացին: Ոչ Ռուս պաշտօնատէրներուն, ոչ ալ Օսմանեան Հայաստանի քաղաքները նստող Եւրոպացի հիւպատոսներուն մէջ անանկ մարդիկ եղան, որոնք ատանկ դիտողութեանց հարկաւոր գործիքներով մէկտեղ բաւական տեղեկութիւն եւ յօժարութիւն ունենային, որպէս զի ծանրաչափին ու ջերմաչափին վիճակը, եղանակն ու օդին խոնաւութիւնը, հովերուն ընթացքն ու ասանց նման բաները շարունակ քննէին: Ասիկայ շատ բաղձալի է, քանզի որ Հայաստանի լեռնադաշտն իր դրացի Ատրպատականէն, Պարսկաստանէն, Միջերկրեայ եւ Պոնտոսի օդէն զարմանալի տարբերութիւններ ունի. եւ եթէ աս զննուելու ըլլայ, դուցէ ան ատեն կը մեկնուէին քանի մը տեղւոյն նորանշան տնկերը, բուսոցն ու կենդանեացն աշխարհագրական տարածութիւնը; եւ մանաւանդ Սեւ ծովուն [illegible]

մըրիկները։ Միայն կարին նստող Անգղիացի Պրանդ-հիւպատոսն եղաւ որ Տրապիզոնի հիւպատոսին հետ մէկտեղ քանի մը ամիս օդի վրայ համեմատական դիտողութիւններ ըրաւ, եւ ասով Կարնոյ լեռնադաշտին բարձրութիւնն առաջին անգամ, ճիշդ գտաւ։ Ս. Պետերբուրգի ճեմարանը Ռուսի Հայաստանի մէջ աս բանիս համար հաստատուն տեղ մը չորոշեց, ինչպէս որ տէրութեան ուրիշ կողմերը կան, որոնք այնչափ օդերեւութական երեւելի դէպքեր չունին, որչափ Արարատայ կողմերը։ Եւ Երեւանի, Կարնոյ, Պայազիտի, Կումրիի, Գանձակայ կամ Եղիսաբեթպոլի եւ ուրիշ քաղաքաց հիւպատոսներէն եւ բժիշկներէն միշտ ատոր վրայ տեղեկութիւն առի, սակայն աս ծանօթութիւնները բնաբանական գործիքներով շարունակ դիտուած ու հաստատուած չեն, անոր համար մենք ալ միայն ընդհանուր ծանօթութիւններ կու տանք։

Բարձր Հայաստան շատ խիստ ու ցուրտ օդ ունի, բոլորովին հակառակ է ասոր Միջագետքին ու մեղմ Պոնտոսին, որոնց մէջ ինք իբրեւ լեռնակղզի մը կը բարձրանայ։ Ասպիրէն Մուսալէն եղելով՝ Տիգրիսի վրայէն դէպ ի վեր եկող ճամբորդն օդի ու երկրի վրայ մեծ փոփոխութիւններ կը տեսնէ։ Նախ Մուսալի քովերը կը թողու երկինքը վճիտ ու պայծառ, դաշտերը կարճ կարճ եւ արեւուն տապէն այրած ու տօչորած խոտերով։ Երկու օր ճամբորդութիւն ընելէն ետքը՝ երբոր Հայաստանին լեռները կը մօտենայ, ամենայն ինչ կերպարանափոխ կ՚ըլլայ։ Միջագետաց դաշտերուն խեղդիչ տաքութեան տեղ կը գտնէ դեռ ձմեռնային ցրտութիւն. երկինքը դեռ ամպոտ, որուն մէջ արեւը միայն մէկ երկու ժամ գլուխն ամպերէն դուրս կը հանէ. ինք երեսը ծածկելուն պէս ցուրտ ու յորդահոս անձրեւ կը տեղայ. աս ատեններն օդն ալ շատ փոփոխական կ՚ըլլայ, այնպէս որ երբեմն ճամբորդը կէսօրուան արեւէն ինք

զինքը պատսպարելու համար պէտք է հովանոց բանալ, ու քիչ մը վերջը ցրտէն պահպանուելու համար մուշտակի մը փաթթուելու է։ Ապրիլի մէջ սա լեռնադաւառին բոյսերը Տիգրիսի վարի դաշտերուն նայելով շատ ետք են։ Ցորեն ու գարի հասարակօրէն Ապրիլին վերջերը կը ցանուին. պտղոյ ծառերը Մայիսէն յառաջ ծաղիկ չեն բանար. լեռնային անտառաց ոփիներուն տերեւները հազիւ թէ ցցուելու կը սկսին, թեղօշները (մեշխները) դեռ անտերեւ են, գետափինը կանանչ է, բայց խոտերը շատ կարճ. Հաստատաբնակ Հայոց պաճառը զուարթ կը խայտայ արօտի վրայ, իսկ թափառական քիւրտերը դեռ հարաւային երկիրներու վրայ կը մնան։ Հայաստանէն մէկ քանի օրուան մէջ դէպ ի Պոնտոս գալով կը տեսնէ ճամբորդն որ նշենիները ծաղիկնին թափեր, անտառաց ծառերը կանաչազգեստ զարդարուեր են. Սեւ ծովուն հարաւային եզերաց ամենէն գեղեցիկ ծաղիկները՝ Պոնտոսի լեռնավարդն [1] ու Պոնտական վարդածառն [2] իրենց պերճ բաժակն են բացեր եւ ջերմաչափին տաքութիւնն է 18—20° Կեղսիոսի [3]։ Ապրիլի մէջ Պոնտոսի Տրապիզոն, Կերասուն, Սինոպ, Սամսոն, Հերակլէ քաղաքներուն բոլորտիքը բուսերն ու ծաղիկները շատ յառաջ գացեր եւ շքեղ կերպարանք մը առեր էին, իսկ Բաբերդ (Պայպուրթ) քաղաքին քովերը Մայիսի մէջ միայն անանկ տնկեր գտայ, որոնք գարնան առաջին սկիզբն ու օդոց քիչ մը մեղմանալը կ՚աւետեն, այսինքն են լուրջ շուշան կամ թրաշուշան [4], ձիւնածաղիկ [5], հրանունկ, մկնասոխ կամ բծեծ [6] եւ քրքում։

1 Լտ. Azalea pontica.
2 Լտ. Rhododendron ponticum.
3 Տես Օդերեւութաբանութիւն, Երես 8—9.
4 Գղ. Iris. Glaïeul. տճկ. Մավի զամպագ. գուռղգուան գուլլէ։
5 Լտ. Primula. Գղ. Primevère.
6 Լտ. Scilla. տճկ. Ադա սօղանը։

Ըստանկով Միջագետքէն եկող ճամբորդը Մուսուլ կը տեսնէ որ բնակիչներն ամառուան տօթագին առաջէն պաշտպանուելու համար գետնափոր բնակարաններ կը պատրաստեն. իսկ Կարնոյ փողոցներուն մէջ թանձր ձիւն, պատուհանները ամբողջ խծկուած (Ըղխնուած) եւ բնակիչք դեռ վառարանին բոլորտիքը ժողված։ Եդեսիոյ լեռնադաշտին վրայ մինչեւ Արտաշատականին սահմանը քիչ անգամ կը պատահի որ Մայիսէն յառաջ ցորեն ցանուի, իսկ Արաղածի բարձր դաշտաւայրին վրայ եւ Սեւանայ ծովուն կողմերը շատ հեղ արտերը Մայիսի կէսէն ետքը կը հերկուին. ցորենին հասունքը հոն անստոյգ բան մըն է, եւ տարի կ'ըլլայ որ դաշտին չի հասուննար։ Գաւառն ու պտուղը նոյն իսկ Ասորիքին հիւսիս ընկնին ճամբաքը ձիւներու մէջէն քերելով դուրս կը հանեն. ծառերը դեռ կանաչութիւն չեն ունենար։ Մինչդեռ որ Հայաստանի մէջ այնտեղ յառաջ գարուն կ'աւետէ, միայն շատ տաք տարիներուն Ասորիքի մէջ օրուան կապոյտ գունով հալող ձիւներուն քով գետինը կը զարդարէ։ Այս ատեն Միջագետաց բնակիչներն արդէն հասուն կեռաս ու ծիրան կ'ունենան։ Վերջապէս եթէ մարդ Ասորիքին Պոնտոսէն դէպ ի հարաւ շատով ճամբայ ընէ, միայն մէկ շաբթուան մէջ կրնայ տարւոյ երեք եղանակներուն ազատութիւններն ու ծանրութիւնները զգալ։ Սեւ ծովին քով կը թողու գեղեցիկ գարուն մը, դալար անտառներ ու ծաղկաւէտ մարգեր։ Կարնոյ լեռնադաշտին վրայ կը գտնէ խիստ ձմեռ մը, տխուր ու լայնատարած տափափայր մը, ուր ամենայն ինչ ձեան ու սառոյցի մէջ թաղուեր է։ Իսկ Միջագետաց արօտարաններուն վրայ կը տեսնէ որ հասկերն արդէն ատոքացեր եւ խարտեշ գոյն են առեր. գեղացին անդաստաններու մէջ ջրի ճամբայ կը բանայ որ չըլլայ թէ չոր տաքը հունձքը փչացընէ։ Միջագետքը Ասորիքի վերջի խոտերն այն-

պէս այրած կ'ըլլան, ինչպէս Կոստանդնուպոլսի նե-
ղուցին քով Յուլիսի վերջերը: Մուսուլի շուկային
մէջ Ապրիլին արդէն սառոյց ծախելու կը սկսին:
Այսչափ քիչ տեղւոյ մէջ նոյն երեք դրացի երկիր-
ներուն այդչափ իրարու հակառակ բարեխառնու-
թիւնը ստուգիւ զարմանալի բան է: Անտարակոյս
սա է որ օդը փոփոխական կ'ընէ եւ ան փոթորիկ-
ները կը ծնանի, որոնք Սեւ ծովի վրայ նաւորդները
միշտ մեծամեծ վտանգաց մէջ կը ձգեն:

Բարձր Հայաստանի մէջ բուն ձմեռը հաստատօ-
րէն ութ ամիս կը տեւէ, այսինքն Հոկտեմբերէն
մինչեւ Մայիս. գարունն ու աշունը մէյ մէկ ամիս
են: Իսկ ամառը մէկէն ի մէկ կը սկսի: Կարնոյ մի-
ջին բարեխառնութիւնն է Մայիսի մէջ 6—8° կեդ-
րոնաձ. Յունիսին 16—18° կ., Յուլիսին 22—24° կ:
Բայց տաքը ալ կը փոխուին: Ժօպէր Գաղղիացին
անձամբ տեսնելով կը պատմէ որ Յունիսի 17ին Կար-
նոյ մէջ առատ ձիւն կու գար: Ես ալ Յունիսի 12ին
գետնի ջերմուն երեսը բարակ սառոյց կապած տե-
սայ, եւ բրիտանական հիւպատոսարանին մարդիկը տաք
կրակարանին բոլորտիքը ժողված էին: Բայց Ան-
գղիայի հիւպատոս Պրանտ հաստատեց որ Յունիսի
մէջ սովորաբար սաստիկ ցրտութիւն չ'ըլլար: Տապա-
գին տաքութիւնը Յունիսի ցրտութեան շուտով կը
յաջորդէ եւ արեւը գետնին մութ անկիւններուն
վրայ անանկ սաստիկ ազդեցութիւն կ'ընէ որ երկու
ամսուան մէջ ցորենը կատարելապէս հասուն ու տաք
կ'ըլլայ: Երբոր ես Կարնոյ լեռնադաշտը Յունիսի մէջ
թող տալով գացի նէ, ցորենի ցօղունները ու
գարւոյ ոճերը հազիւ թէ երկու մատ բարձրացած
էին, բայց Օգոստոսի 20ին Պարսկաստանէն դար-
ձած ատենս՝ ամէն մարդ հնձելու պատրաստուած
էր: Աս երկու ամառուան տաք ամիսներուն մէջ
խիստ ցանցառ անձրեւ կու գայ, ուստի եւ գեղջուկ-

կը ծածկէ։ Երասխայ հովիտներուն վրայ ցրտի երես չըռնող տնկեր չեն գտնուիր, բայց տար հակառակ Երիվանի մէջ Օգոստոս ամսոյն կիզիչ տապը Պոնտոսի մեղմ երկինքէն լման ամիս մը յառաջ կը խայծէ, կ'եփէ ու կը հասունցընէ խաղողը։ Բարձր Հայաստանի հարաւային կողմերը, ինչպէս Վան ու Մուշ, կ'երեւայ թէ Երիվանի հետ համացեղ օդավիճակ մ'ունին, վասն զի այս երկու երկիրներուն մէջն ալ խաղող, թութ եւ նոյն պտուղները յառաջ կու գան։ Եփրատայ ու Երասխայ բխած երկիրներուն վրայ երկարատեւ ձմեռը վերոյիշեալ պտուղներուն մշակութիւնն անկարելի կ'ընէ, ու միայն ցորենի վարուցան կը շնորհէ։ Բայց Կեաւուր տաղը [1], որմէ արեւմտեան Եփրատը կը բխէ, իր հիւսիսային կողերուն վրայ մէկէն ի մէկ օդի մէջ մեծ փոփոխութիւն կ'ընէ։ Կարնոյ պարտէզներուն մէջ պտուղ չ'երեւար, այլ միայն կաղամբ ու աղազուն խաւարտներ եւ նեղատերեւ վարդեր. իսկ Թորդումի ձորին մէջ՝ որ հովերէն պատսպարուած է, Յունիսի վերջերը կեռասենիք կարմիր պտուղներով կը զարդարուին, զորոնք Հայազգի գեղացիք՝ ինչպէս նաեւ ուրիշ շատ պտուղներ ու գեղեցիկ աղցաններ Կարնոյ վաճառանոցը կը բերեն։

Աս երեք դրացի երկիրներուն մէջ շրջող թռչուններուն գարնանային գալուստն ու աշնանուան ընակութիւնը մտադրութեան արժանի է եւ նոյն երկիրներուն բարեխառնութեան հետ կը միաբանի։ Ծիծառը Մուսուլի մէջ կ'երեւայ Մարտի սկիզբը, Տրապիզոն Ապրիլի սկիզբը։ Իսկ Կարնոյ առաջին գարնանաբեր ծիծառը հասարակօրէն Ապրիլի վերջերը կը տեսնուի։ Ուստի կ'երեւայ թէ Ապրիլի սկիզբը հարաւէն հիւսիս եկող ծիծառները շուտով բարձր Հայաստանին վրայէն կ'անցնին ու չեն կենար։

[1] Կարծենք թէ ասիկա Հորջինոր լեռն է։

Բարձր Հայոց տեղացմունքն (անձրեւ, ձիւն, կարկուտ) ալ Միջագետաց եւ Պարսկաստանին արտաքոյ կարգի երաշտութեան (չորութեան) համեմատութեամբ շատ տարբեր է։ Կարին Պր. Պրանդէն եւ ուրիշ հոն կեցող Եւրոպացիներէն լածիս նայելով՝ աս կողմերուն տեղացման չափը նոյն աստիճանի ներքեւ գտնուող ուրիշ երկիրներունէն շատ աւելի է։ Սեպտեմբերի վերջն անձրեւի եղանակ կը սկսի. իսկ Նոյեմբերէն մինչեւ Մարտ շատ թանձր ու 3—4 ոտնաչափ բարձր ձիւն, անանկ որ շատ հեղ հաղորդակցութիւնը կ'արգելուի ու դրսէն ներս դժուարաւ բան կու գայ։ Կարնոյ 40,000 կարծուած բնակիչները ձմեռը գրեթէ պաշարման վիճակի մը մէջ կը գտնուին. եւ փայտ, ածուխ, միս եւ ուրիշ պիտոյքը սովորաբար չորս ամսուան համար կը գնեն։ Ամառուան ատեն ամենէն շատ կը փչէ արեւելեան ու հարաւային արեւելեան հով, գարնան՝ արեւմտեան հով, ու ձմեռը հիւսիսային արեւելեան հովեր ու հողմայոյզեր։ Բարձր Հայաստանի ծառերուն գագաթը հասարակօրէն դէպ ի հարաւային արեւմուտք ծռած է, որմէ կը տեսնուի թէ այն ձմեռուան հիւսիսային արեւելեան սաստիկ հովերը՝, որոնք Կաւկասի եւ Ուրալի մէջէն կը փչեն եւ Ասիայի ներքին անապատներէն գալով՝ առանց լեռնային արգելքի մը հանդիպելու Սեւ ծովը տակն ու վրայ կ'ընեն, նաեւ բարձր Հայաստանի մէջ կը ցուցընեն իրենց ուժը, եւ զօրութեամբ ու տեւողութեամբ մէկալ հովերը կը գերազանցեն[1]։

Հայաստանի օդն ընդհանրապէս շատ առողջ եւ զօրացուցիչ է, միայն քիչ տեղերը դուրս հանե-

[1] Ցիւպուա կը հաստատէ որ Երիւանի այն սաստկաշունչ հովերն որ նոյն իսկ տները կը սասանեցընեն, հասարակօրէն Արագածի կողմէն (հիւսիսէն) գալով՝ Երասխայ դաշտերը կ'իջնան եւ առողջարար կը համարուին։

լով, զոր օրինակ Երեւան [1] ու Երասխայ մէկ քանի կողմերը, ուր ամառները շատ գէշ տենդ (սըթմա) մը կը տիրէ ։ Զարմանալի բան է որ Հայաստանայն-չափ բարձր դիրք ունենալէն ետեւ՝ ազատ չիմնար զանազան տարափոխիկ տիեզերական ախտերէն, ինչ-պէս են ժանտախտ ու մաղձայոյզ կամ Թալկա-Թանչ (քօլէրա)։ Նոյն իսկ բարձրադիր Կարնոյ մէջ ահագին կոտորածներ կ'ընէր ժանտամահը ։ Տեղա-ցւոց հաստատածին նայելով՝ ժանտախտը միշտ Մի-ջագետքէն կու գար, եւ ոչ թէ Պարսկաստանէ կամ Ասորւոցմէ կամ Պոնտոսէ ։ 1841էն մինչեւ հիմա Կարնոյ մէջ ժանտախտ պատահած չէ ։ Հնդկային Թալկաթանչը նոր ատեններս Հայաստանի երկու ան-գամ սոսկալի այցելութիւններ ըրաւ. առաջին. հեղ 1830ին ամառը գլխաւորաբար Երասխայ քովերը սարսափելի մարդամահ պատճառեց. երկրորդ ան-գամ 1847ին գարնան, ամառն ու աշնան ։ Առան-ձնական նամակ մը, զորն որ քանի մը օր յառաջ Ե-րեւանէն ընդունեցայ, մաղձամահին ըրած ջարդն իբրեւ ստուգիւ զարհուրելի բան մը կը ստորագրէ, որն որ անոր համար աւելի զարմանալի է որ Հայք ընդհանրապէս սակաւապէտ կ'ապրին ու գրգռիչ խմելիքները շատ չափաւոր կը ճաշակեն ։ Աս կող-մանէ Եւրոպայի ալպեան գաւառներն աւելի անվնաս մնացին. 1831էն մինչեւ 1837 Տիրոլ եւ Զուիցցե-րի մաղձայուզէն բոլորովին զերծ եւ ազատ էին ։ Ընդհատ տենդը [2], որ Սեւ ծովին քով, բոլոր Պարսկաստանի եւ Միջագետաց մէջ եւ մանաւորա-պէս Կաւկասի կողմերը խիստ վնասակար ախտ մըն

[1] Երեւանի օդաբաժինը բոլոր յառաջակողման Ասիայի մէջ ամենա անառողջներէն մէկն է ։ Հայք իբրեւ առակ կ'ըսեն. „Ցփղիսի մէջ երիտասարդները ծերերէն չեն զանազանուիր. Երեւանի մէջ կենդանիները մեռելներէն„ ։

[2] Գղ. Fièvre intermittente. Տճկ. Արա վէրէնի սըթմա ։

է, բարձր Հայաստանի մէջ խիստ քիչ կը պատահի, եւ գրեթէ միայն Երասխայ դաշտերուն մէջ ամփոփուած է։ Երեւանէն Կումրի բերուած ջերմնոտները շուտով կ'առողջանան։ Կարնոյ լեռնադաշտին գլխաւոր հիւանդութիւններն են հօդացաւ [1] եւ հարբուխ։ Թոքացաւութիւն կամ հալեւմաշ (վէրէմ) միայն անոնք կ'ունենան, որոնք տաք երկիրներէն՝ ինչպէս Միջագետքէն՝ հոս կու գան կը բնականան։ Նոյնպէս Խափշիկները կամ սեւամորթները Հայաստանի խիստ, առողջ եւ զօրացուցիչ օդը չեն կրնար վերցրնել. գրեթէ ամէնն ալ հալեւմաշ կ'ըլլան ու կը մեռնին. այսպէս ալ Արաբացիք։ Կարին գտնուող 5000 Օսմանեան զօրաց մէջ միայն 80 հիւանդ կար, անոնք ալ իրենց յանցանքովը ախտաւորած էին։ Տեղացիք աս լեռնագաւառին մաքուր օդին մէջ շատ պարարտ ծերութեան կը հասնին։ Հարիւր տարուան մարդիկ շատ հեղ կը գտնուին։ Արագածի լեռնադաշտին վրայ 110 տարուան Հայազգի մը տեսայ, որն որ դեռ բաւական առոյգ էր եւ արօտի վրայ գուար կ'արածէր։

[1] Գղ. Rhumatisme. տճկ. ռէ'հի խասթալը։

## Բ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՐԿՐԱԲԱՆԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ։

*Երկրի մը ձեւն իր լեռներէն է։ Հայաստանի լերանց Կաւկասի հետ բաղդատութիւնն ու նմանութիւնը։ Հայոց լեռներուն լայնանիստ դիրքն ու լեռնադաշտերը։ Ջրոց տատանութիւն։ Հայ լերանց շիտկութիւնն ու կրծներուն բարձրութիւնը։ Սպերէն մինչեւ Խնուս լերանց չորս գօտի ու անոնցմէ բխած գետերը։ Գետերուն իրարու հակառակ շիտկութիւնը։ Քիչ լեռնային լճեր։ Հայաստանի լերանց վրայ մշտնջենաւոր ձեան գծին բարձրութիւնը։ Սառնասար։ Հանքային աղբիւրներու շատութիւն։ Հայաստանի լեռնադաշտերուն հորիզոնական շիտկութիւնն ու Ծակոտկէն բնութիւնը։ Հրաբխային լերանց նիւթը. Հատաքար. Խայտակուճ. Կիր։ Կիւմիւշխանէի ու Բալախոսի մէջ զարմանալի երեւոյթ։ Պայլեղի հող։ Հրաբուխներու երկարատեւ գործողութիւն։ Սխծիկ զարմանալի լեռը։ Ցանտուռակ, Արարատ եւ Ահմանկան լերանց հրաբխային նիւթերն ու անոնց անհամաս տարածութիւնը։*

Երկրի մը կերպարանքն ու բնական որպիսութիւնը կախում ունի գլխաւորաբար անոր լեռներուն շիտկութենէն, շէնքէն ու ձեւէն, որոնք նոյն երկրին մէջ կան կամ անոր սահմանները կը պատեն։ Այսպէս Իտալիա իր զարմանալի բնական ձեւն առած է Ապեննեան լեռներէն, որոնք հիւսիսային արեւմտեան կողմանէ սկսելով՝ դէպ ի հարաւ կ՚երթան եւ երեք ծայր բաժնուելով կը դադրին։ Ափրիկէի լերանց գօտիները ծովեզերաց քովէն շարունակ յառաջ երթալով՝ անոր ձեւն ու սահմանը կ՚որոշեն. նոյնպէս Ամերիկա իր երկայնութիւնն ու շիտկութիւնը կ՚առնէ իր գլխաւոր լեռնէն, որն որ հիւսիսէն սկսելով՝ դէպ ի հարաւ մինչեւ Հրոյ Երկիր կամ Հրաստան[1] կը հասնի։ Նոյնը կրնանք ըսել թէ Կաւկասեան պարանոցին եւ թէ փոքր Ասիայի վրայ, որուն նշանաւոր թերակղզիական ձեւը ճշդիւ կ՚որոշուի Տաւրոսի եւ Հայաստանի լերանց շարքովը։ Տաւրոսի լերինք՝ որոնց մէջ մենք Հայաստանի լերանց գօտիներն ալ կը համրենք, ընդհանրապէս նոյն շիտկութիւնն ունին Կաւ-

[1] Գղ. Terre de feu. Անգղ. Fire - Land.

կասեան շղթային հետ, որն որ Շիրվանի դաշտա-ձեւ երկրին մէջ մէկէն ի մէկ վեր բարձրանալով՝ հարաւային արեւելքէն դէպ ի հիւսիսային արեւ-մուտք կը յառաջանայ մինչեւ Կերչի կիրճը։ Կաւ-կաս Վրաստանի լերանց հետ կը կապուի, որոնք կողմնական բազուկներով Հայաստանի ու Տաւրոսի լերանց հետ անանկ յայտնի կը միանան, որ աս եր-կու լերանց շարքն իրարմէ բաժնել ուզելն անձնա-կամ գործ մը կ՚ըլլայ։ Հայաստանի ալպեան լեռներն ինչպէս շինուածոցը, նոյնպէս կազմութեան կողմանէ Կաւկասեան Ալպերուն հետ ակներեւ նմանութիւն մ՚ունին։ Աս երկու գօտիներուն ալ գլխաւոր քարն է խայտակուռ (ռօմանէ մէրմէր) զանազան հանքային բաղադրութեամբ եւ որուն մէկ էական մասն ալ է ապակենման որձաքար։ Մասիսու երեսի լաւային տակ մէջի պինդ ժայռը նոյն քարէն է, որմէ փրցուցած կտորներս հանքային բաղադրութեան կողմանէ ըստ ամենայնի կը նմանէին անոնց, զորոնք Կաւկասի լեռ-ներէն առած բերած էի։ Միայն աս տարբերութիւնը կայ որ Մասիսու աս պայծառագոյն քարին վրան իբրեւ վերարկու կը ծածկեն քանի մը տեսակ մթա-գոյն քարեր, որոնք Կաւկասի երեսը մինչեւ հիմայ գտնուած չեն։

Կաւկասու եւ Հայաստանի լերինք մի եւ նոյն ատեն գոյութիւն առած են, աս զանազանութեամբ որ Հայաստանի լեռները գետնին մէջէն դէպ ի վեր ելլելէն բարձրանալէն ետքն ալ՝ իրենց ներքին հրա-բխային վառարանը դեռ կենդանի մնացած ու գոր-ծած է, եւ խառնարաններ (բերաններ) բացած է, որոնցմէ մութ զանգուածներ՝ ինչպէս սեւակուռ վազելով՝ տակի պայծառագոյն ապառաժին երեսը ծածկեր է, ուր Կաւկասի վրայ կ՚երեւայ թէ լեռ-ները մէյ մը գետնէն դուրս նետուելէն ետքը՝ ընդ-երկրեայ վառարանը գոցուեր է, ինչու որ հոս (Կաւ-

կասի վրայ) մինչեւ հիմակ ոչ խառնարան եւ ոչ բուն լաւայի հոսանք գտնուած է։

Հայաստանի լերանց մէկ երեւելի յատկութիւնն ալ սա է որ աւելի տարածուած, տափարակ ու լայնանիստ դիրք ունին։ Ասոր պատճառն ան է որ Հայաստանի գետնին մէջ բուն նախնական կազմութիւնները պօսիդոնական[1] կամ ջրային ըլլալով՝ կակուղկեկ էին, եւ ըստ մեծի մասին կիր (քիրէճ) ու սալաքար կամ թերթաքար[2]. ուստի եւ նոյնքան գետնին տակէն հրաբխային զօրութեամբ հալած զանգուածները դուրս նետուած ատեն՝ ան յառաջուան կակուղ կազմութիւնները դիւրաւ տեղի տուին, եւ անոնց տարածուելուն օգնեցին. ուր Կաւկասի կողմերը յառաջուընէ պինդ քարեղէն գոյացութիւններ ըլլալով՝ հրաբխային նիւթերուն այնչափ տեղի չտուին, եւ անոնցմէ այնչափ շատ չպատռեցան ու չճղուեցան, ուստի եւ հոնտեղաց լեռներն ալ աւելի նեղ ու ցից կերպարանք մը առացան։ Ռիդդէր անուանի աշխարհագիրը շատ ճահաւոր ըսաւ թէ Հայ-Տաւրոսեան լերանց գօտիներուն սեպհական նկարագիրն ան է որ գրեթէ իրարու զուգահեռական են, եւ դար դար ու աստիճան աստիճան կը բարձրանան ու շատ լեռնադաշտեր ունին եւ ասով ալ մեծապէս կը տարբերին Կաւկասեան դրացի լեռներէն։ Հայաստանի մէջ երբեք չկան բոլորովին չելլուելու լեռներ, եւ եթէ լերանց վրայ ցից ու սեպ տեղեր ալ կան նէ, քիչ կը տեւեն, այլ ամէն տեղ կը տեսնուին ընդարձակ լեռնադաշտ, դարատափ ու սարատափ, նաեւ հովտէ հովիտ կամ լեռնադաշտէ լեռնադաշտ անցնելու համար ամէն կողմ անթիւ կիրճեր կան, որոնք մշակելի ու բնակելի տեղուանքը միշտ իրարու հետ հաղորդակցութեան մէջ կը պահեն։ Ստոյգ է

[1] Տես 143 Երեսին ծանօթութիւնը։

[2] Գղ. Ardoise. տճկ. Գայաղան թաշը. Նուղուր պօղուր։

որ Հայաստանն ու դարատափներու եւ սարատափներու կողմանէ Պարսկաստանի, Կիլիկիայի ու փոքր Ասիայի լերանց հետ նմանութիւն ունի, բայց անոնցմէ ալ բոլորովին կը զանազանի իր ջրին ու գետերուն առատութեամբը, որոնք լեռները պատելով՝ իրենց ճամբայ կը բանան ու կ'անցնին, ամէն կողմ կ'արձակուին եւ ամէն հովիտներն ու դաշտերը կ'իջնան, որով կ'ըլլայ Հայաստան բազմաճիւղ ու բազմանդամ երկիր մը եւ ամէն մասն իրարու հետ կապուած եւ դիւրաւ հաղորդելի։

Ասիայի մէջ լերանց ընդհանուր ընթացքն ու շղթայութիւնն է հարաւային արեւելքէն դէպ ի հիւսիսային արեւմուտք. այսպէս է Հիմալայա, այսպէս են Երկնից լերինք, Հնդուկուշ, Էլպուրս, Կաւկաս եւ ըստ Հումբոլդայ նաեւ Ալթայի։ Հայ-տաւրոսեան լերանց գօտիներն ալ ըստ ամենայնի մի եւ նոյն շղթայութիւնն ունին։ Հումբոլդ այս զարմանալի երեւոյթը տեսնելով՝ ան կարծեաց միտեալ է որ՝ հիւսիսային ու հարաւային Հայաստանի եւ Ատրպատականի լերինք շարունակութիւն մը եղած ըլլան երկրիս ան ճեղքուածին, որմէ դուրս ելան Հիմալայա ու Հնդուկուշ լերինք։ Իսկ Ուրալ լերանց գօտիներն ու Մալապարեան լերինք վերիններուն հակառակ շղթայութիւն ունին, բայց կ'երեւայ թէ ասոնք Հիմալայէն ու Հայաստանի լեռներէն ետքը գոյացած են։ Հումբոլդ կը կարծէ որ Հայաստանի լերանց բարձրանալու տեղն՝ Ասիայի արեւմտեան ծայրը վար իջած եւ ընկղմած ըլլայ։

Հայաստանի լեռնադաւառը թէ Պոնտոսի, թէ Վրաստանի եւ թէ Պարսկաստանի կողմանէ ելլելու համար եղած կիրճերը (լերանց մէջի անցքերը) զարմանալի կերպով գրեթէ մի եւ նոյն բարձրութիւնն ունին, այսինքն 6—7000 ոտնաչափ։ Ասոր հաւասար են Հայաստանի ներքին լերանց կիրճերուն բարձրու-

Թիւնն ալ, որոնք արեւմտեան Եփրատին ողբերակուն-քէն մինչեւ Ատրպատական եղած լեռնադաշտերն ի-րարմէ կը բաժնեն։ Կարնոյ քով Սուկաւ (Չիլլէ-փօլուօլ, Քէօսէ տաղը) լերանց կիրճը, ուսկից կարաւանները կ'անցնին՝ Հասանղալէէն Թօփրագղալէ երթալու հա-մար, եւ եւացման ճամբով 6400 ոտնաչափ բարձր դառայ։ Ուրիշ կիրճ մը, որ Սուկաւ լերանց քովէն կ'անց-նի ու Մօլլա Սիւլէյման գեղէն շիտակ Տէլի պապա կը տանի, աւելինէն 200 ոտնաչափ ցած էր։ Նոյնպէս ուրիշ անցուանք ասոնց նման դառայ։ Հայաստանի լե-րանց կրճերուն բարձրութիւնը լերանց բուն բարձրու-թեան հետ բաղդատելու ըլլանք, Պիւրենեան լերանց նման կը գտնենք։ Հայոց լեռնադաշտին ան մասին մէջ, ուսկից որ Եփրատ, Երասխ եւ Ճօլխ գետերը կը բխեն, լերանց միջին բարձրութիւնը, կիրճն ու կատա-րը հետեւեալ կերպով իրարու հետ կը համեմատին։

| | |
|---|---|
| Միջին բարձրութիւն . . . . . | 7—8,000 ոտնաչափ. |
| Վերին բարձրութիւն կամ Կա-տար, ինչպէս Բիւրակնեան (Պին-կէօլ) եւ Ծաղկաց (Ալատաղը) լե-րանց վրայ . . . . . . . . . | 9,500—10,000 ,, |
| Կրճերու բարձրութիւն . . . | 6—7,000 ,, |

Հայաստանի լերանց մէջ չիտեսնուիր կեդրոնա-կան գօտի մը, որուն ամէն մէկալ լեռները վերա-բերին, ինչպէս որ ուրիշ տեղեր (Կաւկասի, Պիւրե-նեան լերանց վրայ) կը գտնուի, այլ գրեթէ $1^1/_2$ աշխարհագրական աստիճան միջոց ունեցող Սպեր եւ Խնուս գաւառներու մէջ չորս լերանց գօտի կայ, որոնք գրեթէ իրարու զուգահեռական են եւ չորսը մէկտեղ Հայաստանի մեծ ջրաբաշխը կը կազմեն։ Թէ աս չորս գօտիներէն որն է ամենէն բարձրը, յայտնի չէ։ Նոյն չորս գօտիներուն կատարն ալ մշտնջենաւոր ձիւնը կը ծածկէ, որոնց առաջինը կամ ալինտ հիւսիսայինը կ'իյնայ Կարսի եւ Սպերի մէջ, հարաւային արեւելքէն դէպ ի հիւսիսային արեւ-

մուտք կ'ընթանայ եւ Հայաստանը Լազերուն երկրէն կամ հին Խաղտեացմէ կը բաժնէ։ Այս լերանց գօտւոյն հիւսիսային երեսին վրայ ամենէն բարձր կատարին մօտ կը բխէ Կուր գետ, որն որ դէպ ի հիւսիսային արեւելք քալելով՝ Վրաստանէն կ'անցնի։ Ես աս գետին բխած տեղն անձամբ չտեսայ։ Վրաստանի մէջ բաւական մեծ ու սրընթաց գետ է, ջուրն ալ հասարակօրէն աղտոտկեկ, բայց աւազէ ըլլալուն համար՝ աւելի սիրով կը խմուի Տփղիսի մէջ, քան թէ հորի տենդաբեր ջուրը։

Կուր գետին աղբերակունքէն կէս աստիճան մը դէպ ի հարաւ կը բարձրանայ Հայաստանի Ալպեան լերանց Երկրորդ գօտին, ուր Եփրատայ խանձարուրը կան։ Կարնոյ հիւսիսային կողմն ու հիւսիսային արեւմտեան դին աս գօտւոյն պինտ բարձր լեռներն են Ղօղալար, Սարչամ, Պեպուհ, Կեավուր տաղը եւայլն։ Ինչպէս նախընթաց գօտւոյն, նոյնպէս աս ալ ամենաբարձր կատարներուն վրայ եւ վիհերուն մէջ մշտնջենաւոր ձիւն կայ։ Եփրատ (Ֆը–րաթ սույու)՝ որուն սկզբնական վտակը Սեւ ջուր (Գարա սու) կը կոչուի, Կեավուր տաղը յին Հուրբա–այէն դարադաֆին վրայ կը բխէ, որ Սեւ ծովին երեսէն 7510 ոտնաչափ բարձր է։ Թէպէտ աս հսկայ գետը զանազան վտակներուն իրարու հետ խառնուելէն կը շատնայ, բայց գլխաւորն է Սեւ ջուր, որն որ իր բխած տեղէն գրեթէ դահավէժ կը վազէ կ'իջնայ Կարնոյ լեռնադաշտը, ու Ջովուկ ջերմուկի (Սողուք ջերմուկի) մօտ մէկէն ի մէկ կը խորունկնայ ու հանդարտահոս կ'ըլլայ, ջուրն ալ կը պղտորի։ Հոս այլեւայլ կողմերէն ջրեղէն հիւքեր կ'ընդունի եւ մանաւանդ Սարչամայ գետը, որն որ թէպէտ Սեւ ջրէն աւելի ջուր ունի, բայց մինչեւ Սեւջուր քալած տեղը շատ կարճ ըլլալով՝ Եփրատայ ակունքը չէկրնար բռնել, ինչպէս Անգղիացի ճամբորդ մը սխալմամբ կը հաստա-

տէ, ուստի եւ Եփրատայ ակնավտակը կը մնայ Սեւ Ջուր, որն որ Սարչամու գետոյն ընդունելէն ետքը դարձեալ ընթացքը կը շուտցընէ, եւ Կարինը թող տալով՝ կը մտնէ Երզնկայի լեռնադաշտը։ Եփրատին բխած լերան հակառակ կողմէն ուրիշ ջրեր ալ կը բխեն, այս ինքն Կեռավուր տաղըյին հիւսիսային դարաւանջին վրայ կը բխէ Թորթումայ ջուրը (Թորթում չայը), որն որ ազնիւ ու ախորժելի ջուր եւ համեղ ձկուներ ունի, ուր որ Եփրատայ ակիզբը միայն ճահճային ու շամբային ձկուներ կը բերէ։ Թորթումայ ջուրը դէպ ի հիւսիս կը հոսէ, ճամբուն վրայ պզտիկ լիճ մը կը լեցընէ, որուն վրայ աշխարհագրագէտները յիշատակութիւն մը չեն ըներ, եւ նոյն լճէն դուրս ելլելու ատեն յառաջակողմեան Ալփային ամենէն շքեղ ջրվէժը[1] կը կազմէ, որն որ իր նկարչական գեղեցկութեամբը մեր եւրոպական ամենէն հռչակաւոր ջրվէժներն ալ կը յաղթէ։ Կարճ ընթացքէ մը ետքը կը մտնէ Ճորոխ ըսուած մեծ գետը, որն որ մի եւ նոյն երկրորդ գօտւոյն Կոփ տաղը լեռնէն կը բխէ, Հայոց ու Խաղտեաց լերանց ճեղքուածէն իրեն ճամբայ կը բանայ եւ արշաւելով Պոնտոս կը հասնի։ Ճորոխին Սեւ ծով մտած բերանը խիստ ջրաշատ է եւ իր աղտոտ դեղին գոյնը կէս մղոնէն աւելի ծովուն կը հաղորդէ։

Կարնոյ լեռնադաշտին հարաւային ծայրը կը բարձրանայ լերանց երրորդ գօտին ալպեան բարձրութեամբ, որուն արեւելեան շարունակութիւնն են Հասանղալէի, Թօփրագղալէի եւ Պայազիտի լեռնադաշտերը մինչեւ Արարատական։ Աս երրորդ գօտւոյն ամենէն բարձր լեռն է Ծաղկոց կամ Ծաղկէոց լեռան (Ալա տաղ), որուն հիւսիսային արեւելեան 8300 ոտնաչափ բարձր զառատափէն արեւելեան Եփրատը (Մուրատ չայըն) կամ Արածանի կը բխէ ու

[1] Գղ. Cataracte, Chute. տճկ. Ջաղլայան։

վար կը թափի։ Աս տեղեկութիւնքը Տիատինէն քա-նի մը մղոն դէպ ի հարաւ կ'իյնայ։ Ես կարաւանով Պարսկաստան գացած ատենս Ծաղկաց լերան բարձր ձիւնապատ դարատափին այցելութիւն մ'ըրի։ Ար-ածանիոյն ակունքներն աւելի բազմաթիւ են քան (արեւմտեան) Եփրատինը. Նմանապէս Արածանի Տիատինի քով իր նեղ ձորէն աւելի յորդաջուր կ'ելլէ, քան թէ նոյն երկուորեակ գետին մէկալ բազուկը, որուն խանձարուրքը Կեավուր լերան վրայ է։ Արածանի մէկ քանի ժամու ընթացքին մէջ շատ ձիւնավտակներ ընդունելով՝ անանկ վայրագ, աղ-շաւաւոր ու խորին կ'ըլլայ, որ բոլոր տարւան միայն երկու ամիսներն երաշտ (Օգոստոս ու Սեպտեմբեր) ամիսներուն անվտանգ կրնայ անցնուիլ։ Արածանի Թօփրագգալէի լեռնադաշտէն սուր ու ծուռ ըն-թացքով հարաւային արեւմուտք կը դիմէ, երբեմն երկայն ձորերուն մէջէն կ'անցնի, երբեմն ալ լերանց ճեղքուածէն ահագին խախուջանօք կը վազէ ու վեր-ջապէս Կապան Մատէնի ըսուած անուանի բովին քով արեւմտեան Եփրատին հետ կը միանայ։

Հայաստանի լեռնադաշտին չորրորդ ու ամենէն աւելի հարաւային գօտւոյն պիտոյ բարձր լեռներէն մէկը կ'երեւայ թէ Բիւրակնեան (Պինկէօլ) լեռն է։ Ես աս լեռն անձամբ չելայ, այլ բարձր տեղէն դի-տեցի, եւ որովհետեւ Բիւրակնեան լեռը Կարնոյ քովի Շէյթան տաղըյէն երեւելապէս վեր է, կար-ծեմ թէ իր բարձրութիւնը 10,500 ոտնաչափ պիտի եղած ըլլայ։ Աս չորրորդ գօտին կողմնական բազուկ-ներով երրորդ (Ծաղկաց լերան) գօտւոյն հետ կը կապուի, նմանապէս Վանայ ծովուն հիւսիսային կող-ման լեռներուն՝ այսինքն Գրգուռ լերանց (Նէմրութ-տաղըյին) ու աւելի զատ կեցող Գուռող լերան (Սէյ-պան տաղըյին) հետ կը միանայ. եւ մանաւանդ թէ արեւելեան սահմանին վրայ կարծես թէ իր զատու-

թիւնը կը կորսնցընէ։ Ուստի Հայ-Տաւրոսեան լերանց շարքը՝ Հումբոլդին ստորագրութեան նայելով՝ Ամերիկայի Անտեան լերանց պէս անկանոն է, այսինքն երբեմն երեք գօտի ունի, երբեմն չորս, երբեմն հինգ ու ամէնն ալ նեղ կողմնական բազուկներով իրարու հետ միացած։ Յիշեալ աղբիւրաշատ Բիւրակնեան լեռն ուրիշ գլխաւոր եւ բուն Հայ գետի մըն ալ՝ որ է Երասխայ՝ գոյութիւն կու տայ։ Զարմանալի երեւոյթ մըն է որ աս գետը Սեւ ջրէն կամ Արեւմտեան Եփրատէն կէս աստիճան աւելի հարաւային կողմն իյնալով, անոր բոլորովին հակառակ շիտկութեամբ կ'երթայ՝ յառաջ դէպ ի հիւսիս, վերջէն հիւսիսային արեւելք, եւ երկու հիւսիսային լերանց գօտիները թափանցանց պատռելով՝ իր ճամբան յառաջ կը տանի։ Հասանղալէի լեռնադաշտին վրայ՝ ուր Երասխ լերանց գօտւոյ մը ճեղքուածէն անցնելէն ետքը կու գայ, դեռ անանկ պզտիկ գետակ մըն էր, որ ձիով կրնայի անցնիլ, բայց անկից անդին Երասխ կը սկսի սրավար ալիքներով արշաւել, եւ Տէլի պապային հարաւային կողման գօտին ալ ծակելով՝ երբոր հսկայ Արարատին առջեւը կ'ելլէ եւ զանիկայ իր կարկաջներովը բարեւելով կ'անցնի, արդէն հզօր գետ մը ձեւացած կ'ըլլայ։

Մ՚ինչեւ հոս նշանակուածներէն յայտնի կը տեսնուի որ Հայաստանի լերանց չորս գօտիներուն ամենեւին մէկը չիկրնար գլխաւոր ջրաբաշխ ըսուիլ, ինչու որ անոնց ամէն մէկէն այլեւայլ գետեր կը բխեն ու իրարու հակառակ շիտկութեամբ կը քալեն։ Եփրատին երկու բազուկներն անանկ գօտիներէ կը յորդեն, որոնք Բիւրակնեան լեռնէն աւելի հիւսիսային կողմն են, այսու ամենայնիւ ճամբանին հարաւային կողմը կը շիտկեն, ուր Երասխն որ ամենէն աւելի հարաւային գօտիէ մը կը բխէ, նախ դէպ ի հիւսիս ու ետքէն արեւելք կ'ընթանայ։ Գետերուն

շիտկութեան ու նորանշան անկանոնութեանը քով Կաւկասու ճիշդ ընդդիմապատկեր մը կը ցուցընէ։ Հոս մեծ ու պարզ կենդրոնական գօտին անդրդուելի թումբ մը կ'ըլլայ եւ գետերուն սահմանը վերջին աստիճանի որոշ խրամէ կը բաժնէ։ Իր Հիւսիսային արեւելեան կողերուն վրայ բխած ամէն աղբիւրներն ու վտակները դէպ ի Ռուսաց տափաստանը[1] կը վազեն, իսկ Հարաւային արեւմտեան կողմանէ ելածները Կաւկասու ասդիի կողման գետերը կը մեծցընեն։

Հայ-տաւրոսեան լայնատարած լերանց այսչափ բազմաթիւ դարատափներուն ու լեռնահովիտներուն վրայ բնականապէս շատ լեռնային լճեր ալ ըլլալու էին, բայց անանկ չէ։ Վանայ ու Սեւանայ ծովակներէն զատ՝ Հայաստանի մէջ ուրիշ քիչ լեռնային լճեր կը գտնուին։ Ասոր պատճառը յայտնապէս սա է որ գետերն ամէն կողմ լեռները ծակելով՝ ճամբայ կը գտնեն ու դիւրութեամբ Սեւ ու Կասպից ծով եւ դէպ ի Միջագետս կը վազեն կ'երթան։ Իսկ Վանայ ու Սեւանայ խորին ծովակներն ալ հրաբխական զօրութեամբ կազմուած են, ինչպէս որ իրենց եզերքը քննելով՝ կ'իմացուի։ Եւրոպական Ալպերուն ստորոտին վրայ եղած այնչափ լճերը՝ Հայաստանի լերանց հիւսիսային ու արեւմտեան ստորոտներուն վրայ բոլորովին կը պակսին, վասնզի դէպ ի ծով մէկէն ի մէկ ցից ու շեղ վար կ'իջնան կամ դէթ ընդարձակ դաշտերով ծովեզերքէն չեն բաժնուիր։ Իսկ Հարաւային կողմը թէպէտ տափարակ երկիրներու կը հանդիպի, բայց զոյգ մը երկուորեակ գետերն ամէն մեծ ու պզտիկ ջրերն իրենց հրաւիրելով՝ շատ լճեր գոյանալը կ'արգելեն. ատոնք են Ե-

[1] Շատ ընդարձակ, տափարակ ու անապատի նման երկիրներուն կ'ըսենք, որոնց մէջ միայն խոտ կամ արօտ ու ու առաւելն քիչ մը թուփ կը բուսնի։ Ասոնց Գաղղիացիք Lande կ'ըսեն. Գերմանացիք՝ Steppe.

փրատ ու Տիգրիս [1]։ Եւրոպայի Ալպերուն քով՝ թէ հարաւային եւ թէ հիւսիսային կողմը շատ տափարակ դաշտագետիններ ըլլալով եւ միանգամայն լայն ու խոր ձորեր չգտնուելով՝ երեւելի լճեր կը գտնուին, զոր օրինակ հարաւային դին Լակոյ Մաճճօռէ (Աւագ լիճ), Գոմոյի, Կարտայի ու Լուկանոյի լճերը. իսկ հիւսիսային կողմն են Ճընեւրայի, Նէօշաթէլի, Ցուկի, Ցիւրիքի եւ Պոտընի լճերը։ Կաւկաս ամենեւին լեռնային լիճ չունենալուն՝ շատ նշանաւոր է։

Բառոտ Արարատի վրայ մշտնջենաւոր ձեան սահմանը 13,300 փարիզի ոտնաչափ բարձր գտաւ։ Ասիկա սխրալի ցոյցք մըն է։ Պետրբուրգի ճեմարանին անդամներէն մէկը կ'ըսէ որ Արարատի վրայ ձեան սահմանին Կաւկասի համեմատութեամբ այսչափ աւելի բարձր ըլլալը չենք կրնար այնչափ իր հարաւային դիրքէն մեկնել, որչափ իրեն զատ ու առանձին դիրք ունենալէն։ Բայց այնչափ շիտակ չ'երեւար նոյն գիտնականին մէկալ ըսածն որ իբր թէ Արարատ հրաբուխը դեռ կատարեալ մարած չըլլալով՝ ներքին տաքութիւնը լերան երեսին ալ ազդէ ու ձիւնը մինչեւ երեւելի բարձրութեան աստիճան մը հալեցընէ։ Արարատայ երեսին առանց ստորերկրեայ կրակով տաքնալուն կամ ներսէն դուրս տաք շոգիներ շնչելուն եւ ոչ մէկ նշան կայ։ Անյիշատակ ժամանակներէ ի վեր Մասիս իր հրաբխային գործունէութիւնն ամենեւին շարունակած չէ, այլ միայն իր ներքին զօրութեան գոյութիւնը՝ որն որ նոյն

[1] Պր. Վակնէր գուցէ հոս գլխաւորաբար մեծ Հայաստանի հիւսիսային լերանց ու անոնցմէ բխած գետերուն վրայ խօսելուն համար՝ Հայաստանի մէկալ երկու երեւելի գետերուն վրայ մասնաւոր յիշատակութիւն մը չէ ըրած, այսինքն են Եփրատի պէս Եղջերաւոր Տիգրիս՝ որ Բիւրակնեան լերանց հարաւային մասէն կամ Կորդուաց լեռներէն կը բխէ, եւ Ալիս գետ (Գըզըլ ըրմագ)՝ որ փոքր Հայաստանի կամ առաջին Հայոց գետն է։

տիտանեան հսկան ժամանակաւ վեր վերցուցած է, երբեմն կը ցուցընէ երկրաշարժներով կամ ցուրտ քար ու փրփուր եւ տիղմ ժայթքելով, ինչպէս 1840ին։ Կարելի է որ Մասիսու ձիւներուն մինչեւ այնչափ բարձր տեղ հալելուն պատճառ ըլլայ իր քարերուն հանքային որպիսութիւնն ու իր երեսին սեւագոյն լաւան, որն որ արեւին տաքութիւնը ներս կը քաշէ ու իրեն հետ կը կապէ, նաեւ իր շեշտայանգ կամ կոնաձեւ դիրքը, որն որ թէ արեւուն ճառագայթներն ամէն կողմանէ կրնայ աղէկ վրան ընդունիլ եւ թէ ձիւնաջուրն ալ դիւրաւ վար կ'իջեցընէ։ Ասոնցմէ զատ յայտնի է որ Հայաստանի աս կողման ամառուան տաքութիւնը սաստիկ ու Կովկասէն շատ աւելի է։ Բառօք աս վերջին լերան ձիւնասահմանը 9890 Փարիզի ոտնաչափ բարձր գտաւ։ Փոքր Մասիսն որ ծովուն երեսէն 12,284 ոտնաչափ բարձր է, Օգոստոսի մէջ ձիւնէ բոլորովին ազատ տեսայ։ Կ'երեւայ թէ իր սեպագոյն դիրքն ու մաքուր շեշտայանգ ձեւը ձիւներուն շուտ հալելուն իր լայնանիստ մեծամարմին դրացիէն (աւագ Մասիսէն) աւելի կ'օգնէ։ Հայոց միջնաշխարհին ալպեան լեռներէն շատերը մշտնջենաւոր ձեան սահմանէն վար են, միայն Բիւրակնեան լերան վրան միշտ ձիւնապատ կ'ըլլայ եղեր։ Ինչպէս Արարատայ կղզիական դիրքը, կոնաձեւութիւնն ու քարերուն սեւ գոյնը ձիւներուն հալելը կը դիւրինցընէ, նմանապէս Վանայ ծովակին հիւսիսային կողմն ինկող Գոռոզ լերան (Սէյպան տաղըն) վրայ մտածելու է, որն որ այնչափ (12,000 ոտնաչափէն աւելի) բարձրութիւն ունենալէն ետեւ՝ տաք. եղանակներուն իր կատարին սառնեղէն զրահը կը մերկանայ։ Արագածի 12,766 ոտք բարձր հարաւային ծայրերէն ձիւնն աներեւոյթ կ'ըլլայ, բայց կիրճերուն, խոռոչներուն ու վիհերուն մէջ մեծ զանգուածով կը մնայ։ Կարնոյ հիւսիսային կող-

մը Կեավուր տաղըյին, Սարչամայ եւ իրենց ընկերներուն կատարները 1844ին Սեպտեմբերին բոլորովին անձիւն գտայ, բայց լեռնամէջները լեցուն էին, որոնք անշուշտ այնչափ տարաքդ կարգի շատ աղբիւրները կը սնուցանեն։ Հայաստանի ձիւնասահմանը նաեւ Եւրոպայի հետ բաղդատելով՝ շատ բարձր է։ Սաւոյայի Ալպեան լեռներուն վրայ 8800 ոտք բարձր կը սկսի ձեան գիծը, Դիրոլ 8200, Սախիխա ու Սալցպուրկ 8000, Պիւրենեան լերանց հարաւային կողմը 8600', Հիւսիսային կողմը 7800'։

Հայաստանի մէջ սառնադաշտ[1] այնչափ չկայ, եղածն ալ գլխաւորաբար կը տեսնուի Վանայ ծովուն հարաւային դին Ջուլամէրկի քով Նեստորականաց ու Հաքքեարի Քիւրտերուն բնակած կողմերուն լերանց մէջ։ Բայց տարակոյս չկայ որ ժամանակաւ Հայաստանի մէջ սառնադաշտներ կային ու շատ տեղուանք ալ կ'իջնային. շատ լեռներուն յղկուած ու փայլուն ժայռերն ասիկա բաւական կը ցուցընեն։ Հայաստանի ցուրտ աղբիւրներուն մէծ մասն է Արօրենոյ աղբեր, այսինքն անանկ աղբիւր որ քիչ խորութենէ կը բխէ ու ձիւներուն հալելէն յառաջ կու գայ։ Աս լեռնադաւառին մէջ իմ տեսած աղբիւրներուս ամենէն աւելի զովն էր Կեավուր տաղըյին վրայ արեւմտեան Եփրատին ակունքն որ $2^{3}/_{10}$ աստիճան Կ. ցրտութիւն ունէր։ Հայ-տաւրոսեան լերինք հանքային ջրերուն զանազանութեամբն ու շատութեամբ բոլոր ինծի ծանօթ եղած լեռները եւ նոյն իսկ Կաւկասը կը գերազանցեն, ու աս հարստութիւնը կ'երեւայ թէ աս լերանց արեւելեան կողմերն աւելի կը շատնայ։ Ասոնց խել մը մասն է ջերմուկ կամ ջերմաջուր, որոնց մէջ առատ ածխաթթու կիր, աղ, երկաթ, ծծումբ եւ ուրիշ ասոնց նման հանքային նիւթեր կան։ Պոնտա-

[1] Տես 102 եւ 152 Երեսին աս նիւթին վրայ եղած ծանօթութիւնները։

ու կողմերէն Հայաստան մտնող ճամբորդը մէկէն ի մէկ կ՚ապշի կը մնայ ամէն կերպ հանքային ջրե-րուն արտաքոյ կարգի առատութիւնը տեսնելով: Տրապիզոնի ու Կարնոյ մէջ 60 հանքային աղբիւրէ աւելի կայ, որոնց մեծ մասը խայտակճի մէջէն կը վազէ, եւ երբեմն ալ կրի, հատաքարի ու Թերթա-ռալի մէջէն: Այս ջրերէն շատերուն բոլորտիքը շատ հաստ կիր դիրտի պէս խառ խառնուած է, մանաւանդ Կիւմիւշխանէի քով ու Բաբերդի արեւելեան կողմը: Այս հանքային ջրերն ըստ մեծի մասին Տաճկի Հայաս-տանին մէջն են, որոնց տարրալուծական (քիմիական) քննութիւնը բարձրագոյն դրան մեծապէս միտ դնե-լու բանն է թէ իր զօրաց եւ թէ ժողովրդեան օգ-տին համար: Վասնզի քանի որ անոնց կազմիչ մա-սունքը կամ բժշկական ազդեցութիւնը ծանօթ չէ, աւելի վնաս քան թէ օգուտ կրնան գործել: Տաճ-կաստանի մէջ իւրաքանչիւր հիւանդ ամենէն մօտ ջերմուկն ըստ բախտի կը գործածէ թէ ներքին թէ արտաքին դեղի համար՝ անստոյգ յուսով մը որ անով իր ախտը կը բժշկուի կամ կը մեղմանայ: Տգէտ ու անխիղճ ատանուն բժիշկներն ալ որ նոյն ջրերուն բնութիւնը հիմնովին չեն ճանչնար, իրենց ախտա-ժէտներուն կը հրամայեն որ անոնցմէ խմեն:

Հայաստանի աղբիւրներուն առատութիւնն ու իր հրաբխային հողին տաքութիւն պահող եւ դիւ-րափշուր բնութիւնը բուսոց վրայ շատ ազդեցութիւն ունին: Սեւակուճ[1] ու արաստոյ[2] քարերէն յառաջ եկած հողը խոտերուն ու ցորենեղէններուն մեծա-պէս օգտակար է, որուն հոս մանաւորապէս կ՚օգնէ քարերը լուծող ու փշրող ջրերուն յորդութիւնը, եւ ատոնցմէ կը ծնանի Հայաստանի լեռնադաշտներուն ու լեռնահովիտներուն ալպեան բուսոց ու ծաղ-կանց հարուստ ծածկոյթը, որն որ Թափառական

[1] Գղ. Basalte. [2] Գղ. Trachyte.

Քիւրտերու ալ պարարտ արօտ կը մատուցանէ։ Այլեւ Պետրբուրգի գիտութեանց ճեմարանին տուած տեղեկութեանը մէջ երկու բան շատ շիտակ նշանակեց, մէյ մը Հայաստանի լեռնադաշտներուն Խախահարթն կամ հորիզոնական շերտութիւնը, որով ձմեռուան ձիւնն ամէն մէկուն վրայ հաւասարապէս կը բաժնուի ու հաւասար կը գիզուի. Երկրորդ նոյն լերանց քարերուն ծակոտկէն բնութիւնը, որով ջրերն մէկ մեծ մասը ծածկուելով ու գոց ճամբաներէ վար քալելով իրեն միայն մէկ փոքր բաժինը նորէն շոգի դառնալով օդ կ'ելլէ, ուր որ ցից դիրք ու խիտ քար ունեցող լերանց ջուրը բոլորովին երեսը մնալով աւելի շուտ կը գոլորշանան ու կը չորնան։ Հայաստանի մէջ շատ տեղուանք տանելով ու բոլորովին հանդարտ կերպով առատ ջրեր կը բխեն, զորոնք ընդհանուր անուամբ Սեւջուր կրնանք անուանել՝ բուն Սեւջուր ըսուած գետակները նոյնպէս գոյանալուն համար։ Ասոնք երբեմն երեւելապէս բարձր տեղեր դուրս կ'ելլեն ու կը լճանան, եւ երբեմն դէպ ի տափարակ դաշտը կը վազեն։ Սեւանայ ծովակն որ ծովէն 5500 ոտք բարձր է ու 1126 ռուսի քառակուսի մղոն երես ունի եւ զանազան եղանակներու մէջ Երասխայ դաշտին վրայ այնպէս աղէկ ազդեցութիւն կ'ընէ, տասնեակ լճերէն մէկն է, որ հարաւային ու արեւմտեան կողմանէ զինքը միաշար պատող հրաբուխներէն կը սնանի։ Երեւանին առջեւէն անցնող Զէնկի կամ Հրազդան գետը չնչին վտակ մը կ'ըլլար, եթէ իր հարիւրմղոնեան ընթացքին մէջ Ահմանկան լեռնէն եկող տասնեակ ջրերու հիւրընկալ ու ասպնջական չ'ըլլար։ Երասխին ընդունած երեւելի հոսանքները, զոր օրինակ Ախուրեան, Ապարան, Գառնոյ ջուր, Նախճուանի վտակ, Մրռանայ վտակ, Մակուայ ջուր եւայլն, նոյն հրաբխային ճամբով յառաջ եկած ու լերանց ծակերէն վար իջած ու ժող-

ված Սեւ Ջուրներ են։ Ահա աս գետերն են Երասխայ արջնահող դաշտին ծաղկաւէտ, բուսական եւ աճեցուն կենաց ու պտղաբերութեան բուն երակները։ Աս յորդառատ ջրամբարները հրաբուխներուն անգիր ժամանակներու մէջ ունեցած ժրութեան մէկ պարգեւն են։

Հայ-տաւրոսեան լերանց եզերքը քարերուն կազմութիւնը կերպ կերպ է ու խառնաշփոթ եւ դժուարաւ ճանչցուելու, քան թէ ներքին կողմերը, բայց երկրաբանական նկատմամբ աւելի գերազանց ու հետաքրքրական են նոյն բնական բերդերուն առաջին աստիճանները։ Ծովէն կողմանէ սկսեալ Պոնտոսէն մինչեւ Միջերկրական ծով նոյն լերանց կողերուն վրայ կը տեսնուին խաւ խաւ ընդարձակ ու թանձր կազմութիւններ. իրենց քարերը զանազան ժամանակներու կը վերաբերին ու տարբեր տեսակներով են, թերթաւոր, սոր կամ կոպիճ (չաքըլ Թաշը), շեղջայօդ[1] ու կիր, որոնց ամենուն մէջն ալ բունի փոփոխութիւններու ու խառնակութիւններու յայտնի նշաններ կան։ Ինչու որ ասոնց հնագոյն պլուտոնեան կամ ջրային կազմութեան մէջէն ամէն տեղ պինդ ու վանակնային[2] ժայռեր կ'երեւան, որոնք ընդհանրապէս խայտակուճ են զանազան հանքային մասերով ու զանազան գոյներով։ Աս խայտակուճը բոլոր փոքր Ասիայի, Սեւ ծովէ, Արքիպեղագոսի ու նաեւ Միջերկրական ծովու եզերքն ալ ամէն կողմը կը տեսնուի, ամէն տեղ հին ջրային կազմութիւնները պատռած վեր ելած է, ու կ'երեւայ թէ ինքն է զանոնք խառնակողն ու տակնուվրայ ընողը։ Նոյն երկու կազմութիւններու վրայ նորագոյն ջրային շարքեր նստած են, ինչպէս մառն, կաւ, կիր, փշրաքար եւ աւազ։

[1] Գղ. Conglomérat.
[2] Գղ. Cristallin. տճկ. Նէֆէֆի։

Ինչպէս վերն ըսինք, երկրին առ յեղափոխութեանց յայտնի նշանները կը տեսնուին: Տրապիզոնի քով կաւային թերթաքարներուն հորիզոնական շարքը չէ թէ միայն վեր վերցուած ու ցից տնկուած, տեղ տեղ ճաթռտած, տեղ տեղ ալ մէջէն խայտակուճ անցած է, հապա նաեւ շատ անգամ ալ բոլորովին խառնուած ու անճանաչելի եղած է: Ասիկայ մանաւանդ Տրապիզոնէն Կիւմիւշխանէ երթալու ճամբուն վրայ աղէկ կը տեսնուի:

Ին Պղուտոնական կամ հրային կազմութիւններէն՝ որոնց պինդ գլխաւոր քարերէն մէկն է հատաքարը, ծովուն քով նշան մը չգտայ, այլ ծովեզերքէն 15—20 ժամ հեռանալէս ետեւ՝ առաջին հատաքարի լեռները Կիւմիւշխանէի մօտ՝ Տրապիզոնին ու Կարնոյ մէջ եղած ճամբուն կէսին տեսայ, ուր որ առատ պղինձ ու արծաթ կայ. բայց երկայն ատենէ ի վեր պակասաւոր կերպով հանուելով՝ Դրան երեւելի օգուտ մը չիբերեր: Լերանց տեղ տեղ դուրս ցցուած, մերկ ու կարմրկեկ սեպ կողերն ալ հատաքարէն են: Գերմանիայի մէջ նոյն պնդակազմ քարին ունեցած կլորկեկ գմբեթաձեւ կատարը Հայաստանի մէջ շատ ցանցառ կը գտնուի: Կիւմիւշխանէ քաղաքը նոյն լերկ հատաքարի լերանց ցից ու առլեփ կողերուն վրայ շինուած է: Ասոր հարաւային կողմը հատաքարը շարունակ կը զօրանայ ու բոլոր ուրիշ տեսակ կազմութիւնները կը մերժէ: Իր մէջը կայ գլխաւորաբար որձաքար ու պտկարդ[1]. իսկ փայլար[2] խիստ քիչ: Կարծր հատաքարը խայտակճէն աւելի երկայն ժամանակ օդին քայքայիչ զօրութեանը դէմ կը դնէ, անոր համար ալ երեւան այնչափ փխրած չէ, ու վրայի բոյսը շատ ողորմելի է: Միայն հատաքարի լերանց հովիտներուն մէջ, որոնց վրայ վերէն

[1] Գերմ. եւ Գղ. Quarz. տճկ. ճէգմագլըգթաշ նիշնէքի:
[2] Գղ. Mica. Գերմ. Glimmer.

վազող ջրերը պտղաբեր հող դիզած են, անկերը խիստ զուարթ ու անձեցուն են, եւ գեղեցիկ մրգաստանները կարկաջահոս վտակներուն եզերքը կը զարդարեն։ Հասարակը մինչեւ 7000 ոտք բարձր կ'ելլէ, ինչպէս որ Կարինէն Տրապիզոն դառնալու ատենս Արծաթալերան (Կիւմիւշլիւ-դաղին) վրայ տեսայ։ Բայց Հայաստանի բոլոր քարերուն մէջ կ'երեւայ թէ հասարակարն ամենէն քիչ տեղը կը բռնէ։ Կիւմիւշխանէէն 5 ժամ դէպ ի հարաւ երթալով՝ նոյն քարն աներեւոյթ կ'ըլլայ եւ իրեն տեղ կը սկսին երեւան ելլել խայտակուճ, թերթասալ ու կիր։ Հայաստանի արեւելեան սահմանին վրայ Որմիոյ ծովակին եզերքը՝ որ հիմայ Պարսկաստանի կը վերաբերին, Կիւմիւշխանէէն աւելի առատ հասարակար գտայ։ Ցանկի Հայաստանի հասարակարին իր քովի քարերուն հետ ունեցած դիրքը չկրցայ աղէկ զննել, բայց հոս Ատրպատականի մէջ Որմիա քաղքէն 8 ժամ դէպ ի հիւսիս տեսայ որ նոյն հասարակարը յառաջուան կիրը պատռած, կարգերն ու շարքերն աւրած եւ պատի պէս ցից վեր վերցուցած է։ Ուր որ հասարակար կայ, հոն խայտակուճն աներեւոյթ կ'ըլլայ։ Անտարակոյս խայտակուճն որ ժամանակաւ հասարակարէն առջը գոյացած է, գլխաւորաբար ջրային կազմութիւններուն՝ այս ինքն թերթաքարի ու կրի մէջէն իրեն ճամբան բացած է, գուցէ անոր համար որ աս մեծատարած խայտակուճը չկրնալով կուռ ու պինդ հասարակարը պատռել ու դուրս ելլել, ջրային կազմութիւններն է ճեղքեր, որոնք աւելի կակուղ են։

Հայաստանի լերանց հիւսիսային ու արեւմտեան ծայրերուն կիրն ու թերթաքարը կ'երեւայ թէ քարացեալ (քար կտրած կենդանեաց ու տնկոց մնացորդ) չեն պարունակեր։ Ոչ Տփղիսի եւ ոչ Սեւանայ ծովուն մէջտեղի պայծառադոյն կիրը, ոչ Տրապիզոնի թերթաքարները, եւ ոչ ալ Զմիւռնիայի

քովի ահագին կիրը քարացեալներու նշան մը կը ցուցընէին, թէպէտ եւ շատ փնտռեցի, եւ չեմ գիտեր որ արդեօք ուրիշ երկրագիտաց զննութիւններն աւելի բախտաւոր եղած են։ Աս կողմերը յաճախ տեսնուած պայծառագոյն կիրը մեր Ալպերուն կիրին համեմատ է, որն որ նմանապէս քարացեալ չունի։ Բայց Պարսից Նախիջեւանի մօտ սահմանին վրայ, Արարատայ հարաւային կողմը, Պայազիտի ու Թօփրագգալէի լեռնադաշտերուն մէջ, ինչպէս նաեւ Տիատինի հալիտն եղած թանձր կիրը, զորն որ խայտակուճը պատռած ու մէջէն անցած է, բաւական հարուստ է քարացեալներով։ Ամենէն շատ քարացեալ ան կրալեռը գայ, որն որ Տաճկաց ու Պարսից սահմանին վրայ Պայազիտի լեռնադաշտը Քիլիսէքէնթէն կը բաժնէ։ Սակայն դժբախտութեամբ Ասիայի այնդ վտանգաւոր տեղերէն մէկն է աս կողմս, ինչպէս նաեւ Պայազիտի բոլորտիքը, որոնց երկրաբանական զննութիւնը խիստ օգտակար է ու հետաքրքրական։ Վայրագ ու աւազակ Քիւրտերն աս վայրենի ու լերկ լերանց վրայէն ապահովութիւնը բոլորովին կը վերցընեն։ 1844ին Օգոստոսի 12ին երբոր Պայազիտի քով աղուոր կտրին կամ սանտրակ (Նարտէ) մը ժայռէն փրցընելու կը ջանայի, անդիէն 3 Քիւրտ վրաս յարձակեցան եւ միայն դիպուածով մը մահուընէ պրծայ։ Աս վատաբախտ դէպքին ու անոր վրայ եկած հիւանդութիւնը զիս ստիպեցին, որ Արարատի հարաւային կողմնն զննութիւններուն միտքս դրածէս աւելի շուտով վերջ տամ։ Գտնուած քարացեալ ժժմուկներուն գըլխաւոր տեսակներն են Նէաարդ, սանտրակ եւ ծակորդ կամ ծակափոր։ Կրաժայռը կարծր եւ ժողվելու ժամանակս կարճ ըլլալով՝ քիչ բան կրցայ ձեռք բերել։ Պայազիտի քով գտնուող կրալեռանց շարքերուն քննութիւնը մեծ մտադրութեան ար-

ժանի է, ինչու որ Հրաբխային զօրութեամբ վեր ելած խայտակուճն այլեւայլ տեղ նոյն պայծառագոյն ու խեցեշատ կիրը ճեղքած ու թափ անցած ըլլալուն՝ ով որ Հրաբխային քարերուն կրի վրայ դըպչելու տեղն ըրած ազդեցութիւնը քննել ու իմանալ կ'ուզէ նէ, հոս կրնայ յայտնի տեսնել։ Պայազիտի վերի կողմանց լեռներուն կարմրկեկ ու ծիրանեգոյն երեւոյթը կարելի է որ երկաթի ժանգը ծծելով տոգորուելէն յառաջ եկած ըլլայ։ Հոս խայտաճկճեայ մարմարին Հրաբխային զօրութեամբ վեր նետուիլը կ'երեւայ թէ մեծ սաստկութեամբ եւ ուժգնութեամբ եղած պիտ'որ ըլլայ, վասն զի կրերուն շարքն ու խաւը բոլորովին պատռեր, ապականեր է, ու քարացեալներու հետք մ'ալ չէ թողուցեր։

Անտարակոյս է որ Տիատինի ձորն ու Թոփրագ-գալէի լեռնադաշտին մէջ գտնուած բաց գունով կիրը, որն որ տափարակ խեցիներով կամ խեցեմորթներով լեցուն է, Պայազիտի կրալերան կազմութիւնն ունի. Նոյնը հաւանականութեամբ կրնանք ըսել Ճորոխի վերին ձորէն մինչեւ Բաբերդ (Բայբուրդ) գտնուած կրին համար։ Բայց աւելից բոլորովին տարբեր է ան կրի կազմութիւնը, զորն որ Կիւմիւշխանէի ու Բալախոռ գեղին մէջ 6000 ոտք բարձրութեան վրայ գտայ։ Հոստեղի լերանց կատարներուն վրայ պզտիկ սարատափներ կան, որոնց կիրը բոլորովին թաթահարթ կամ հօրիզօնական շիտկութեամբ խաւ խաւ շարուած է։ Շատ կը ցաւիմ որ ակարութեանս պատճառաւ աս առեղծական ու առակաւոր կազմութիւնը չկրցայ ի մօտուստ քննել։ Բայց զարմանալին ան կ'երեւայ որ այսչափ բարձր տեղ Հրաբխային խայտաճկճին վրայ նստող կիրը շարքի եւ կարգի կողմանէ ամենեւին խառնակութիւն մը չիցուցըներ, այլ ամէն մէկ խաւը կանոնաւոր մնացեր է ու իրարմէ ալ կրնայ զանազանուիլ, որպէս թէ խայ-

տակուճը հրաբխային զօրութեամբ այնչափ բարձր տեղ ելլելէն ետեւ՝ աս ալպեան գօտին նորէն ծովը ծածկած՝ եւ հանդարտ կերպով իր գիրան ու մրուրը շարք շարք դիզած ըլլայ։ Հոս քիչ ատեն կենալով՝ չկրցայ քննել թէ աս զարմանալի կազմութիւնը քարացեալ ալ ունի՛, բայց ապագայ ճամբորդներուն ամենայն ուժով կը յանձնեմ Հայաստանի աս մասին քննութիւնը։

Տիւպուա որ Մոնբէռէօ Հայաստանի հիւսիսային սահմանին վրայ Ախալցխեէի մօտ երկրիս երրորդական կամ վերջին կազմութիւնները[1] գտաւ, որոնց մէջ շատ քարացեալ խեցեմորթներ ալ կան։ Աս կազմութիւնները գրեթէ ընդապէննեան[2] կազմութիւններուն կը նմանին եւ իրենց քարացեալներն ալ՝ մանաւանդ տեսակ մը ճաճանչաւորքը[3] նոր ու քննելու արժանի են։ Քարթառն Գաղղիացի բուսագործը (հանք հանող, մոփէնճի)՝ որ Ռուսաց տէրութենէ խրկուելով՝ երկայն ատեն Ախալցխէէ գաւառը կեցաւ ու զննեց, ինծի ալ հաղորդեց իր քննութեանց պտուղը։ Հայաստանի աս կողման հրաբխային կազմութեանց վրայ թէ՛ երրորդական ժամանակի շարքեր ու թէ՛ ալերեր[4] հողեր դիզուած են։ Զանազան նիւթերէն զատ հոս կայ սաստիկ առատ պաղլեղի (շապի) հող[5] ճերմակ

1 Երկրաբաններն երկրին կազմութիւնը գլխաւորաբար երեք ժամանակի բաժնելով՝ ամենէն առջինին կամ վարինին կ'ըսեն Առաջնական կամ Նախնական (Primaire), միջինը կ'անուանեն Երկրորդական (Secondaire), ու վերջինը՝ Երրորդական (Tertiaire), որն որ ամենէն վերինն է։

2 Գղ. Sub-apennin. Ապէննեան լերանց ստորոտին վերաբերեալ։

3 Գղ. Radiaires. Ճառագայթաձեւ խեցեմորթներ են։

4 Ջրերուն, գետերուն, հեղեղներուն բերած ու դիզած հողին կամ աւազին Եւրոպացիք կ'ըսեն Terre alluviale, զորն որ մենք կրնանք շատ յարմարութեամբ Ալերեր հող. Ալերեր Երկիր անուանել։

5 Գղ. Alumine, Terre alumineuse.

եւ վերջին աստիճանի մաքուր ու գեղեցիկ։ Աս գիւտին վրայ Պր. Քարթըռն իրաւամբ զարմացեալ ու սքանչացեալ էր, որովհետեւ քիչ գտնուելու նիւթ է։ Ինչ որ այնպէս հմուտ բովանդէտ է, կը հաստատէ թէ երկրիս իրեն ծանօթ եղած տեղերուն մէջ սանկ ընդարձակ, թանձր ու սանկ մաքուր պաղլեղի հող չիգտնուիր։ Քարթըռնին աս զարմանալի հանքը գտած տեղն է Ախալցիխէէն 15 ռուսական մղոն հեռու։ Քարթըռն Ախալցիխի քով նոյնը գտեր է, ինչ որ ես Արարատի ու Արագածի վրայ, այսինքն լաւան ծածկեր է լերանց ամէն կաւային ու կրային նիւթերուն երեսը, որոնք շատ տեսակ խեցեմորթ ունին եւ մանաւորապէս տեսակ մը Ուլականջ[1], որ մինչեւ հիմայ դեռ Կասպից ծովուն մէջ կ'ապրի։

Խայտակուճը չէ թէ միայն Հայաստանի լեռնադաւառին եւ Տաւրոսի, այլ նաեւ Կաւկասի, արեւմտեան Պարսկաստանի ու բոլոր յառաջակողմեան Ասիայի մէջ ամենէն յաճախ ու տարածուած քարն է, բայց գուցէ ամէն տեղ մի եւ նոյն ատեն գոյացած չըլլայ։ Իր բաղադրութիւններն ու զանազանութիւններն այնչափ են որ աս քարին ճիշդ հանքաբանական սահման մը տալը խիստ դժուար է։ Հայաստանէն բերած հրաբխային քարերուս հաւաքման մէջ, զորն որ զանազան բազմահմուտ հանքաբաններու եւ տարրալուծներու առջեւ դրի՝ սահմանելու եւ որոշելու համար, այլեւայլ կտորներն որ մի եւ նոյն ժայռին երեսէն էին, տարբեր կազմիչ մասունք ունէին. ասոր հակառակ շատերուն ալ, որ իրարմէ խիստ

[1] Հայաստանի քանի մը կողմերը Ձիան ականջ կ'ըսեն Միփեայէն, իսկ ուրիշ տեղեր նոյն խեցեմորթը Ուլականջ (պզտիկ այծի ականջ) կ'անուանեն. աս վերջին բառը մեզի աւելի յարմար, վայելուչ եւ գործածելու ալ աւելի դիւրին կ'երեւայ։

Հեռու լեռներէն առնուած էին, բաղադրութիւնը բոլորովին իրարու նման էր։ Միեւնոյն ծովուն քովէ ու Կարնոյ լեռնադաշտին իրարու կից ժայռերը՝ զարմանալի կերպով իրարմէ կը տարբերին, ուր որ Տրապիզոնի եւ Զմիւռնիայի, Արարատայ ու Կաւկասու կողմերը ժողուած խայտակուռ թէ արտաքին տեսքին եւ թէ ներքին բաղադրութեան կողմանէ իրարու անանկ նման են որ մարդ չկրնար զանազանել։ Հումբոլդ աս քարերուն փոխուելուն, իրարու հետ խառնուելուն ու իրարու տեսակին մօտիկնալուն վրայ շատ զարմանալի կը գրէ։ “Մի եւ նոյն քարը, կ'ըսէ, կրնայ իր բաղադրութեան կողմանէ փոխուած երեւալ. կրնայ ըլլալ որ այլեւայլ էական մասեր իրմէ ելած ու նոր նիւթեր հետը միացած ըլլան, բայց ասոր համար երկրաբանի մը առջեւ նոյն քարը զատ անուն չ'ունենար։ Մէկ ինքնագլուխ կազմութեան նոյն ըլլալուն ամենէն էական նշանն է իր շարքը, դիրքն ու տեղը, զորն որ կազմութիւններուն ընդհանուր կարգին մէջ կը բռնէ„։ Հրաբխային քարերուն յանկարծակիան փոփոխութիւնը շատ զարմանալի կ'երեւայ Պոնտոսի եզերքը, Թրակեան Բոսփորոսն ու Կողքիսեան ափունքը։ Տրապիզոնի կողմերը կուռ ու խիտ ժայռերը, որոնք թէպէտ իրարու հետ քովէ քով են ու մի եւ նոյն ատեն ստորերկրեայ վառարանէն դուրս ելած կ'երեւան, այսու ամենայնիւ բոլորովին տարբեր շարք ու տարբեր բաղադրութիւն ունին։

Յառաջակողման Ասիայի մէջ խայտակծի բարձր լեռանց, դուրս ելլելովը ներքին վառարանին գործողութիւնը չդադրեցաւ։ Ինչպէս շատ հանքեր կազմութիւն ունեցող լեռներուն՝ զոր օրինակ Անատեան գօտւոյն մէջ, նոյնպէս հոս ալ երկայն տեւած է ան ազդեցութիւնը, զորն որ մեր մոլորակին (երկրին) հրավառ սիրտը ատեն ատեն իր սառած կեղեւին վրայ ցոյց տուաւ։ Ընդերկրեայ զօրութիւններն որ երկրին

Հայաստան «Բարձր օդաւէտ լեռնակղզի մըն է», ինչպէս Ռիդդեր Գերմանացի մեծ աշխարհագիրը շատ շիտակ նշանակեց։ Դարատափներուն ու սարատափներուն միջին բարձրութիւնը ծառերուն վերջին ու վերին սահմանը հասնելով՝ իրենց վրայ տնկերու զօրաւոր աճողութիւն կամ բարձր անտառ չկայ։ Միայն աղէկ պատսպարուած տեղուանք՝ անտառ ընելու չափ ծառերու բազմութիւն մը կ'ըլլայ. ինչպէս փոքր Մասիսու 7800 ոտնաչափ բարձր տեղը կայ ցարասւոյ (ղուշ աղաճը) անտառակ մը, նոյնպէս Սուկաւ լերան 8200' բարձր մէկ հովտին մէջ ցարասի, եղեւնի կաղամախի (աք Եօղ աղաճը), ուռի (սէօյիւտ) եւ վարդենի տնկերու անտառ մը։ Հայաստանի հիւսիսային եզերքն ու իր լեռներուն դէպ ի Վրաստան եւ բուսաւէտ Կովկաս դարձած դին անտառաշատ է։ Երասխայ ընդարձակ դաշտերուն վրայ, որ Արարատայ արեւելեան կողմը կ'իյնան, անտառներուն ջնջուիլը կ'երեւայ թէ աւելի պատճառուած է կանուխ մշակութենէ ու բնակութենէ, քան թէ դրից բարձրութենէ, որովհետեւ ան կողմերը ծառերուն վերջին ու վերին սահմանէն բաւական վար են։ Երիւանի պարտէզներուն եւ մզկիթներու բակերուն մէջ սօսիներն (չընարներն) ու պտղատու ծառերը շատ աղէկ յառաջ կու գան, իսկ անտառային փայտերը նոյն տեղերէն բոլորովին աներեւոյթ եղած են։ Կարնոյ, Հասանղալէի, Կումրիի ու Ախալցիխէի ցրտագոյն լեռնադաշտներն ու դարատափները, որ իրենց խիստ օդին համար բաւական ծանօթ են, արուեստական խնամով ու մշակութեամբ միայն քանի մը տեսակ ծառեր կը բուսցընեն։ Կարին քաղքին պարտէզներուն մէջ միայն կաղամախիները շատ աղէկ յառաջ կու գան։ Իսկ մրգաբեր ծառերը ճրագած եւ վտիտ տեսք մ'ունին. իրենց պտուղները շատ քիչ անգամ հասուն կ'ըլլան, եւ իրենց հա-

տակը գետնէն 12—14 ոտնաչափ վեր բարձրանալուն պէս՝ կատարներին կը սկսի ծռիլ, որովհետեւ օդը նոյն բարձրութեան մէջ իրենց համար շատ ցուրտ է, ուս պատճառաւ դարձեալ կը սկսին դէպ երկիր դառնալ, ուսկից որ բովանդակ տաքութիւնը վեր կ'ելլէ։

Սուկաւ լերան 8200 ոտք բարձր հովտին ցարասիներու անտառակը (որ հիւսիսային լայնութեան 40երորդ աստիճանին տակն է) Հայաստանի ծառերուն ամենէն վերին ու վերջին սահմանը համարելու ըլլանք նէ ալ, այսու ամենայնիւ խիստ շատ բարձր կը գտնենք՝ Հելուետիայի Ալպեան լեռներուն հետ բաղդատելով, ուր 46—47 աստիճանի տակ՝ ծառերու ամենէն բարձր սահմանն է 5500 ոտնաչափ։ Հելուետիա Սուկաւ լեռնէն միայն 6—7 աստիճան աւելի հիւսիսային կողմն իյնալով՝ իր ծառերու վերին սահմանը Սուկաւինէն 2700 ոտնաչափ վար ու պակաս է, ուր որ Նորուեգիայի 60—61 աստիճանի տակ գտնուած տեղուանքը Հելուետիայէն 14 աստիճան աւելի դէպ ի հիւսիս ըլլալով՝ իրենց ծառերուն պինտ վերին սահմանը Հելուետիայինէն միայն 2300 ոտնաչափ տարբերութիւն ու պակասութիւն ունի։ Կարելի է թէ ան ամէն պատճառները[1], որոնք Հայաստանի լերանց վրայ մշտնջենաւոր ձեան գիծն այնպէս կը բարձրացընեն, ծառերուն պինտ վերին ու վերջին սահմանին ալ անսովոր բարձրութիւն մը տան։ Շատ անգամ զարմանալի են օդաբաժնին եւ տնկերու բարձր դիրքին մի եւ նոյն լերան այլեւայլ կողերուն ու դարատափներուն վրայ իրարմէ ունեցած տարբերութիւնները, զոր օրինակ Արագածի հիւսիսային կողմը Ախուզէլտէրէի 6300 ոտնաչափ բարձր լեռնադաշտին վրայ հազիւ թէ գարի կը հասնի, ուր որ հարաւային արեւմտեան կողէն 4254 ոտք բարձր տեղը՝ Հայոց Թալին եւ Իշանակ գիւղաքաղաքներու

[1] Տես երես 182—183։

փլատակացը մօտ՝ ժամանակաւ շատ այգեստաններ կան եղեր, ինչպէս որ դեռ այսօրուան օրս այգե-տաններու խրճիթներուն մնացորդէն կը յայտնուի։ Սեւանայ ծովակին քովի ձորերուն մէջ, որ Ապիխի չափածին նայելով՝ ծովի երեսէն 5500 ոտնաչափ բարձր են, ցորենեղէններէն միայն գարի կը բուսնի, ան ալ շատ տարիներ հասուն եւ առողջ չ'ըլլար։ Կարնոյ 6100 ոտք բարձրութեան մէջ, ուր ընդարձակ լեռնադաշտերուն պատճառաւ ամառը շատ տաք կ'ըլլայ, նոյն իսկ ցորենը կը հասուննայ Օգոստոսի մէջ եւ առատ հունձք կու տայ։ Վանայ ծովուն մօտ եւ Բիւրակնեան լերան վրայ ցորենը 6500 ոտք բարձր տեղ ալ կը յաջողի եղեր։ Աս ցորենի սահմանին բարձրութիւնը միջին Եւրոպայի հետ համեմատելով՝ ծառերու սահմանին վերին բարձրութենէն շատ աւելի զարմանալի է։ Ալպեան լերանց հիւսիսային կողմերը ցորենը կը յաջողի մինչեւ 3400 ոտք բարձր տեղ ու անկից վեր չէ. իսկ հարաւային դին 4500՛։ Պիւրե-նեան լերանց վրայ՝ որ Հայաստանի լեռներէն 3 աս-տիճան աւելի դէպ ի հիւսիս կ'իյնան, հիւսիսային կողմը ցորենին վերջին սահմանն է 4900՛, հարաւային կողմը 5200՛։ Հայաստանի մէկ քանի դեհերը, մա-նաւանդ Վանայ ծովուն քով եւ Մասիսու Ս. Յա-կոբայ ձորին մէջ այգիները մեր Եւրոպայի Ալպեան լեռներուն վրայ եղածէն կրկին անգամ աւելի բարձր տեղ աղէկ յառաջ կու գան, ինչու որ եւրոպական Ալպերուն հարաւային դին որթատնկոց (ասմայի) վեր-ջին սահմանն է 2500 ոտնաչափ բարձրութիւն։

Հայաստանի լերանց միայն հիւսիսային եզերքը, այսինքն դէպ ի Վրաստան ու Կողքիս դարձած կո-ղերուն վրայ բարձրահասակ ծառերու թանձր ան-տառներ կան։ Հոս 1000 ոտնաչափ բարձրութենէ անդին տիրող ծառն է ոփի[1]։ Ասիկայ ծովու քովե-

[1] Լտ. Fagus. Գղ. Hêtre. տճկ. Գույըն կամ Կէօրկէն աղաճը։

ըր շոճւոյ (չամի) անտառներէն աւելի վեր տեղեր ալ կ'աճի, իր անտառները շոճիի հետ մի եւ նոյն բարձրութեան մէջ կը մնան։ Պաթումի ու Սամսոնի քով գեղեցիկ ափիներ կը բուսնին գրեթէ անմիջապէս ծովուն քով. իսկ իբրեւ անտառ կը հասնին մինչեւ 1000—4000'։ Ասիկայ Շուվքին հաստատածը կը ցրէ, որ կ'ըսէ թէ շոճին Եւրոպայի մէջ ցած տափարակներու վրայ չի գտնուիր։ Կոստանդնուպոլսի մօտ Պելկրատ գեղին շոճիներն այնչափ բարձր դիրքի մէջ չեն, ինչպէս Շուվ սխալմամբ կը կարծէ։ Ստոյգ է որ շոճւոյն ասանկ տեղ բուսնիլն Իտալիայի մէջ բուսած դիրքերին հետ չիհամաձայնիր, որ տեղ շոճին հոն կը սկսի, ուր երկրագործութիւնը կը դադրի։ Ապրուցցայի մէջ հիւսիսային լայնութեան 42—43 աստիճանի տակ շոճւոյն գօտին 3000—5000 ոտնաչափ բարձրութեան վրայ է։ Սեւ ծովի հարաւային արեւելեան եզերքը գրեթէ մի եւ նոյն լայնութեան աստիճանին տակ անկէց 2500 ոտնաչափ աւելի ցած տեղեր ալ շոճի կը բուսնի, իսկ իր հասած վերջին բարձրութեան սահմանը Հայաստանի ու Կողքիսի լերանց կողերուն վրայ գրեթէ Իտալիայինին պէս է, այս ինքն 5200 ոտնաչափ, բայց շոճիներուն անտառները միայն ափիներուն հետ աս բարձրութեան սահմանն ունին, սակայն զատ զատ շոճիներ անկից աւելի բարձր ու մինչեւ 6000 ոտնաչափէն վեր եղած տեղուանք գտայ։ Միայն թէ աս ալ հաստատուն է որ շոճիները բազմութեամբ ու անտառօրէն 3000 ոտնաչափ բարձրութեան մէջ կը սկսին ու իրենց շատութիւնը մինչեւ վերջին բարձրութեան սահմանը գրեթէ մի եւ նոյն կը մնայ։ Հայաստանի ու Վրաստանի մէջի լերանց վրայ հացին (տէլղաթափըն) ալ գրեթէ նոյն բարձրութեան սահմանն ունի (5200')։ Ոփիէն ետեւ Հայաստանի պինա յաճախ ծառն է վայրի կաղնի կամ թեղօշ (մէշէ), բայց ասիկայ

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՈՒՂՂԵԼԻՔ ԵՒ ՅԱՒԵԼՈՒԱԾ

Երես 4, Տող 25 *պառկացանք* կարդա *պառկեցանք*

„ 68. *Ծանօթութեան վրայ աւելցուր. լա.* Perdrix saxatilis (*քարային կաքաւ*), *գերմ.* Steinhuhn (*քարահաւ*)։ *Եւրոպացի բնապատմաներուն աս բառը մեր Սալամբէին ստուգաբանութեան շատ յարմար կու գայ. եւ կարելի է որ՝ նշանակութիւնն ալ նոյն ըլլայ։*

„ 82. Տող 35 *արպեմեցին* կարդա *Փարպեցին*

„ 172. „ 16 *անհամմատ* „ *անհամեմատ*